ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

**6**

ՀՈՒՆԻՍ

ԵՐԵՎԱՆ • 1969

### ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնը. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն ու հեռախոսի համարը։

Չտպագրվող հոդվածի մեկ օրինակը վերադարձվում է հեղինակին։

Սույն կանոնը խախտողների հոդվածները կմնան անհետևանք։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**6** ՀՈՒՆԻՍ 1969

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«Ленинян угиов»—теоретический и политический журнал ЦК КП Армении**


## Բովանդակություն

### ՀՈԴՎԱԾՆԵՐ



### Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ



### ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ



### ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ



### ԿՈՒԼՏՈՒՐԱ ԵՎ ԿՅԱՆՔ



### ԷՋԵՐ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ՍՆՑՅԱԼԻՑ



### ՄԵՐ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄՆԵՐԸ



### ԱՆՄՈՌԱՑՆԵՐԸ



### ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

# Содержание

**Статьи**



**К 100-летию со дня рождения В. И. Ленина**



**Партийная жизнь**



**Вопросы экономики**



**Культура и жизнь**



**Страницы из революционного прошлого**



**Наши публикации**



**Незабываемые**



**Критика и библиография**










**Լ. Ա. ՍԼԵՊՈՎ**

*Պատմական գիտությունների դոկտոր*


# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ՈՃԸ*

Կուսակցության գործունեության ոճը կազմավորվել է նրա ամբողջ պատմության ընթացքում և անընդհատ կատարելագործվել ու զարգացել է՝ իրադրության ու խնդիրներին համապատասխան: Կուսակցությունը միշտ էլ կարևոր նշանակություն է տվել նրա կատարելագործմանը: Մեր երկրում կոմունիստական շինարարության հաջողությունը մեծ չափով կախված է այն բանից, թե ինչպես է մշակվում կուսակցության քաղաքականությունը և ինչպիսի միջոցներով է այն մատչելի դառնում մասսաների գիտակցությանը, ինչ կերպ են կուսակցության գաղափարները մարմնավորվում միլիոնավոր աշխատավորների գործողությունների մեջ:

Մեր հասարակարգում տեղի ունեցող փոփոխությունների հաշվառման հիման վրա կուսակցական և պետական ղեկավարության ոճի հետագա կատարելագործման կարևորությունն իր որոշումներում նշեց նաև ՍՄԿԿ XXIII համագումարը: Համագումարն ընդգծեց, որ կոմունիստական շինարարության ղեկավարման ասպարեզում գիտական մոտեցումը, կոլեկտիվությունն ու գործարարությունը Կենտկոմի, մեր ամբողջ կուսակցության աշխատանքի հիմքն են կազմում:

Կուսակցական ղեկավարության ոճի բնորոշ գծերը ձևավորվել են Վ. Ի. Լենինի գաղափարների և նրա գործնական աշխատանքի վճռական ազդեցության ներքո: Հասարակության ու նրա զարգացման ղեկավարման ձևերի ու մեթոդների կատարելագործման հարցում ևս կուսակցությունը հենվում է նախ և առաջ լենինյան տեսական ժառանգության, լենինյան ավանդույթների վրա, որոնք հարստացել են կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարի հետագա փորձով:

Կուսակցական ղեկավարության լենինյան ոճի արմատական առանձնահատկությունը հասարակության հեղափոխական վերափոխման բոլոր խնդիրնե-

* Հոդվածը գրված է «Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրության հանձնարարությամբ:

րի լուծմանը ցույց տրվող գիտական մոտեցումն է, տեսության և պրակտիկայի միասնությունը: Հենվելով մարքս-լենինյան տեսության, հասարակության զարգացման օրինաչափությունների ճանաչման վրա, կուսակցությունը մշակում և իրագործում է իր քաղաքականությունը տնտեսական, սոցիալական և հոգևոր կյանքում: Սոցիալիզմը պատմության մեջ առաջին հասարակարգն է, որի ժամանակ սոցիալական վերափոխումները կատարվում են գիտականորեն հիմնավորված ծրագրով: Եվ սոցիալիզմի, որպես հասարակական սիստեմի, առավելությունններն իրացվում են այն չափով, որչափով դրանք գիտականորեն ճանաչվել են հասարակության կողմից և օգտագործվում են պրակտիկայում:

ՍՄԿԿ XXIII համագումարը պահանջեց, որ հասարակական գործունեության բոլոր ոլորտների ղեկավար կադրերը կատարելապես տիրապետեն իրենց մասնագիտությանը և իմանան հասարակական զարգացման օրենքները, կուսակցության և սովետական պետության ներքին և արտաքին քաղաքականությունը:

Հաշվի առնելով գիտության նշանակությունը նոր հասարակարգի կառուցման գործում, կոմունիստական կուսակցությունն իր գործունեության կարևորագույն բաղկացուցիչ մասն է համարում տեսական աշխատանքը, կոմունիստների, բոլոր աշխատավորների գաղափարական ու քաղաքական դաստիարակությունը: Վ. Ի. Լենինը միշտ էլ կուսակցության անդամներին կոչ էր անում անդուլ տիրապետել մարքսիզմի հեղափոխական տեսությանը և ստեղծագործաբար զարգացնել այն: Նա ցույց էր տալիս տեսության նկատմամբ ստեղծագործական լավագույն վերաբերմունքի, սոցիալիստական հեղափոխության զարգացման և նոր հասարակարգի կառուցման արմատական շատ հարցերի տեսական ու գործնական լուծման չգերազանցված օրինակներ: Մարքսիզմ-լենինիզմի գիտական տեսության ստեղծագործական զարգացումը և բանվոր դասակարգի ու բոլոր աշխատավոր մասսաների հեղափոխական պրակտիկայի հետ նրա օրգանական միացումը կուսակցության պատմական գործունեության ամենանշանակալի և ամենաուժեղ գիծն է:

Մարքս-լենինյան տեսության հետագա ստեղծագործական զարգացումը կուսակցությունը համարում է կարևորագույն խնդիր, կոմունիզմի կառուցման հաջողությունների անհրաժեշտ պայմանը[1]: Ուստի, տվյալ էտապում, երբ մեծացել են տեսական աշխատանքի մասշտաբներն ու խնդիրները, կուսակցությունը հատկապես մեծ ուշադրություն է նվիրում հասարակական գիտությունների զարգացմանը՝ ապահովելով դրանց սերտ կապը կոմունիստական շինարարության պրակտիկայի հետ: «Հասարակական գիտությունների զարգացումը,—նշեց XXIII համագումարը,— և պրակտիկայում դրանց հանձնարարականների իրականացումը պակաս կարևոր դեր չի խաղում, քան բնական գիտությունների նվաճումների օգտագործումը նյութական արտադրության ոլորտում և ժողովրդի հոգևոր կյանքի զարգացման մեջ» [2]: Մարքս-լենինյան տեսության զարգացումն անբաժանելի է այն պայքարից, որ մղվում է բուրժուական գաղափարախոսության, ռևիզիոնիզմի, դոգմատիզմի և ռեֆորմիզմի դեմ, աշխատավորներին մեծ նպատակից՝ կոմունիստական հասարակարգի կառուցումից շեղելու՝ իմպերիալիզմի ու նրա սպասարկուների բոլոր փորձերի դեմ:

Հասարակության գիտական պատշաճ ղեկավարումը ենթադրում է ոչ միայն տեսության հասարակական զարգացման օրենքների իմացություն, այլև տեսական գիտելիքները կիրառելու կարողություն գործնական հարցերը լուծելիս,

1. XXIII съезд КПСС. Стеногр. отчет, т. 1, М., 1966, стр. 100.
2. Там же, стр. 101.



որպեսզի գիտությունը չմնա մեռած տառ կամ մոդայիկ ֆրազ, այլ իրոք դառնա միս ու արյուն, դառնա ամենօրյա աշխատանքի բաղկացուցիչ տարրը [1]: «Մենք մեր օրինակով գիտենք,— նշել է Լենինը,— հարցի տեսական լուծման և որոշման գործնական կիրառման միջև եղած տարբերությունը» [2]: Մարքսիզմ-լենինիզմը պահանջում է տեսությունը, ընդհանուր օրենքները կիրառել՝ հաշվի առնելով պատմական պրոցեսի ամեն մի հատուկ ժամանակաշրջանի տնտեսական և քաղաքական կոնկրետ իրադրությունը, գիտենալ ստույգ պարզված օբյեկտիվ փաստերը՝ իր գործողության խնդիրներն ու ձևերը որոշելու համար [3]: Մարքսիստ ղեկավարը, նշում էր Վ. Ի. Լենինը, «պետք է հաշվի առնի կենդանի կյանքը, *իրականության* ճշգրիտ փաստերը, և ոչ թե շարունակի կառչել երեկվա տեսությանը, որը, ինչպես ամեն մի տեսություն, լավագույն դեպքում սոսկ նախատեսում է հիմնականը, ընդհանուրը, սոսկ *մոտենում է* կյանքի բարդության ընդգրկմանը» [4]:

Այս պահանջից բխում է, որ իսկական գիտական ղեկավարություն ապահովելու համար անհրաժեշտ է ուշի-ուշով ուսումնասիրել ամենօրյա կյանքը, աշխատանքի ձևերի ու մեթոդների արդյունավետությունը, վերլուծել փորձը, ուշադիր հետևել մասսաների տրամադրությանը, հոգ տանել հավաստի և համակողմանի ինֆորմացիա ստանալու մասին:

«Մեզ հարկավոր է *լիակատար* և *ճշմարտացի* ինֆորմացիա» [5], ընդգծում էր Վ. Ի. Լենինը: Կուսակցական և սովետական ղեկավար մարմիններից, մամուլի աշխատողներից Լենինը պահանջում էր ուշադիր ուսումնասիրել և լուսաբանել տեղական փորձը, պրակտիկան, սիստեմատիկաբար օգտագործել այդ փորձի, պրակտիկայի տվյալները, որոնք ցույց են տալիս՝ ո՞ր բնագավառում, ինչ պայմաններում, ինչ չափով ենք առաջ գնում, կանգնած չե՞նք տեղում, կամ չե՞նք նահանջում»: Լենինը ընդգծում էր, որ իրադրության թերի, անստույգ պատկերացումը կարող է մեծ սխալների ու վրիպումների հասցնել կուսակցական և պետական աշխատանքում[6]:

Լենինը պահանջում էր, որ ղեկավար մարմինների որոշումներն արտացոլեն միայն այն, ինչ արդեն ստուգված է կյանքում, ինչը մարմնացել է փորձում: Նա կոչ էր անում «...գիտականորեն ուսումնասիրել մեր քաղաքականության հիմքում դրված փաստերը»[7]:

Գիտական մոտեցում նշանակում է՝ նպատակասլացություն, սիստեմատիկություն աշխատանքում, տեսականորեն հիմնավորված և պրակտիկայով ստուգված հանձնարարականների ճշգրիտ կատարում՝ հաշվի առնելով կոնկրետ պայմանները: Գիտական մոտեցմանը խորթ են ինչպես անարխիստական կամայականությունը, սուբյեկտիվիզմը և գռեհայնությունը, այնպես էլ բյուրոկրատական քարացածությունը, սխոլաստիկան և շաբլոնը:

Ղեկավարության նկատմամբ գիտական մոտեցման անկապտելի պայմանը աշխատանքի արդյունքների, նվաճումների և վրիպումների քննադատական գնահատումն է: Քննադատությունն ու ինքնաքննադատությունը կուսակցա-

1. См. В. И. Ленин, ПСС, т. 45, стр. 391.
2. В. И. Ленин, ПСС, т. 38, стр. 195.
3. В. И. Ленин, ПСС, т. 31, стр. 132.
4. В. И. Ленин, ПСС, т. 31, стр. 134.
5. В. И. Ленин, ПСС, т. 54, стр. 446.
6. В. И. Ленин, ПСС, т. 43, стр. 13
7. В. И. Ленин, ПСС, т. 30, стр. 518

կան և պետական ղեկավարներին պահպանում են ինքնահրապուրանքից և մեծամտանալուց, ինքնահանգստացումից և լճացումից: Վ. Ի. Լենինը կուսակցությանը հատկապես նախազգուշացնում էր մեծամտանալու վտանգից[1]: Բայց քննադատությունը, ընդգծում էր նա, պետք է կոնստրուկտիվ, ստեղծագործական բնույթ կրի, այն պետք է տոգորված լինի ընդհանուր գործի բարելավմամբ[2]:

Աշխատանքի նկատմամբ քննադատական վերաբերմունքը, որպես գիտական մոտեցման անհրաժեշտ տարրերից մեկը, բխում է դիալեկտիկական մատերիալիզմի ամբողջ սիստեմից, որի վրա հենվում է կուսակցությունը հասարակության ղեկավարման իր գործունեության մեջ: Քննադատությունը, որպես իրականության գիտական ճանաչողության գործիք, հնարավորություն է տալիս ժամանակին տեսնելու այն, ինչն արդեն հնացել է և չի համապատասխանում նոր խնդիրներին, պաշտպանել արժեքավոր նախաձեռնությունը, նորարարական ձեռներեցությունը, անհրաժեշտ ուղղումներ մտցնել ավելի վաղ նախատեսված պլանների մեջ:

Հասարակության գործերի ղեկավարման նկատմամբ գիտական մոտեցման լենինյան պահանջներին լիովին համապատասխան, կուսակցության և պետության աշխատանքը ղեկավարում են ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն և սովետական կառավարությունը: Կուսակցական ու պետական ղեկավարման պրակտիկայում գիտության աճած դերն իր վառ արտահայտությունն է գտել կուսակցության Կենտկոմի 1964 թ. հոկտեմբերյան և հաջորդ պլենումների, XXIII համագումարի, տնտեսական և կուլտուրական շինարարության կարևորագույն հարցերի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի և սովետական կառավարության որոշումներում:

Երկրի արտադրաուժերի քանակական և որակական հսկայական աճը, տընտեսական կապերի խորացումը, ավելի ու ավելի բարդացող և խորացող գիտատեխնիկական առաջադիմությունը, սոցիալիստական հասարակական հարաբերությունների կատարելագործման նորանոր և բարդացող խնդիրները, սոցիալիստական դեմոկրատիայի կարգացումը— այս ամենը պահանջում են գիտական ղեկավարման նոր, ավելի բարձր մակարդակ հասարակական-քաղաքական և տնտեսական կյանքի բոլոր բնագավառներում:

Կուսակցությունն իր գործունեության մեջ ձգտում է համակողմանիորեն հաշվի առնել հասարակական կարգացման օբյեկտիվ օրինաչափությունները: Դատապարտելով ղեկավարության սուբյեկտիվիստական մեթոդները, նա մշակել է քաղաքականության նոր տնտեսական սկզբունքներ, որոնք համապատասխանում են երկրի կարգացման արդի էտապին: Կուսակցությունը, ինչպես ընդգծված էր ՍՄԿԿ XXIII համագումարի որոշման մեջ, պետք է երկրի ամբողջ կյանքի վրա իր ներգործությունն ուժեղացնի ոչ միայն կազմակերպական լծակներով, այլև իրեն հատուկ բոլոր մեթոդներով ու միջոցներով, իր ամբողջ բազմազան աշխատանքով: Զինված սոցիալիստական արտադրության կարգացման տնտեսական օրենքների իմացությամբ, կուսակցությունը խորամուխ է լինում էկոնոմիկայի կարգացման բոլոր պրոցեսների մեջ, իրականացնում հասունացած խնդիրները ոչ թե վարչական ճանապարհով, այլ տնտեսական խթանման, պլանավորման նոր սիստեմի արմատավորման միջոցներով, որոնք նպաստում են մասսաների ստեղծագործական ակտիվու-

1. В. И . Ленин, ПСС, т. 40, стр. 327
2. В. И. Ленин, ПСС, т. 43, стр. 35.



թյան և նախաձեռնության, արտադրության կառավարման գործում նրանց դերի բարձրացմանը:

1968 թ. ըստ էության եզրափակիչ էտապ դարձավ արդյունաբերության մեջ տնտեսական ռեֆորմի իրականացման գործում: Տնտեսավարման նոր սկզբունքների փոխադրված միավորումները, կոմբինատները, գործարանները, ֆաբրիկաները մեծ մասամբ 1968 թ. ավելի բարձր ցուցանիշների հասան: Նրանք սկսեցին ավելի արդյունավետ օգտագործել հիմնական ֆոնդերն ու շրջանառու միջոցները, քան հին ձևով աշխատողները: Աշխատանքի արտադրողականության աճի տեմպը 1966 թ. արագացավ 8, 1967-ին՝ 7,5 տոկոսով[1]:

Ինչպես արդյունաբերության, այնպես և գյուղատնտեսության բնագավառում հետևողականորեն կատարելագործվում է գյուղատնտեսության ղեկավարումը: Կուսակցությունը հետևում է Կենտկոմի 1965 թ. մարտյան պլենումի մշակած կուրսին, որի նպատակն է գյուղատնտեսական արտադրության աճն ապահովել ոչ թե վարչական միջոցների օգնությամբ, այլ կոլտնտեսային և սովխոզային արտադրության տնտեսական խթանման միջոցով:

Կյանքը հաստատեց էկոնոմիկայի ղեկավարման գիտականորեն հիմնավորված մեթոդների ճշտությունը:

* * *

Իր ամբողջ գործունեության մեջ Վ. Ի. Լենինը ելնում էր հասարակական կարգացման, նոր հասարակարգի կառուցման ասպարեզում մասսաների, նրանց առաջավոր ուժի՝ բանվոր դասակարգի վճռական դերը ճանաչելու մարքսիստական դրույթից:

Ուստի, լենինյան ոճի կարևորագույն գիծն է՝ հոգատարությունը մասսաների հետ կապն ամրապնդելու, նրանց պատմական ստեղծագործության մեջ ներգրավելու նկատմամբ: Ճիշտ ղեկավարությունը, ընդգծում էր Լենինը, անհնար է առանց «բանվոր դասակարգի և աշխատավոր մասսաների ավելի լայն և ավելի խոր ներգրավման ամբողջ շինարարության մեջ»[2]: Դա աներևակայելի է, առանց հաշվի առնելու այն, որ բանվոր դասակարգը, որպես ամենաառաջավոր, կազմակերպված, քաղաքականապես կոփված դասակարգ, առաջատար ուժ է հանդիսանում թե՛ կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու, թե՛ կոմունիստական հասարակարգի կառուցման ժամանակաշրջանում:

Վ. Ի. Լենինի ամբողջ գործունեությունն օրինակ է այն բանի, թե ինչպես պետք է աշխատել մասսաների մեջ, ամրապնդել կապերը նրանց հետ: Լենինը ամենասերտ ու համակողմանի կապեր ուներ աշխատավոր մասսաների հետ: Աշխատավորների խոհերն ու դատողությունները միշտ էլ հետաքրքրում էին Լենինին, դրանցով նա ասես ստուգում էր իր սեփական հետեվությունները: Լենինը ո՛չ միայն սովորեցնում էր ժողովրդական մասսաներին, այլև ինքն էր սովորում նրանցից: Նա կարողանում էր արթնացնել և ուղղություն տալ նրանց ստեղծագործական հեղափոխական նախաձեռնությանը, հեղափոխության, սոցիալիզմի կառուցման համար ակտիվ պայքարի մեջ ներգրավել ժողովրդի նույնիսկ ամենահետամնաց խավերին: Միանգամայն լավ է նկատել գյուղացի Օ. Չեռնովը, որը հանդիպել է Լենինին. «Ինչո՞վ է մեծ Լենինը: Ահա թե ինչով: Նա, իհարկե, չէր լսում անձամբ ինձ, որպես արտասովոր անձնավորության, այլ *իմ միջոցով նա լսում էր ամբողջ*

1. «Экономическая газета», 1968, октябрь, № 41, стр. 10.
2. В. И. Ленин, ПСС, т. 44, стр. 347

*գյուղացիությանը, իմ միջոցով նա հաշվի էր առնում* ստորին խավերում տի*րող իրադրության ամբողջ բարդությունը»* [1]*:*

Վ. Ի. Լենինը ամենից բարձր էր գնահատում մասսաների պրակտիկ փորձը, դրանում տեսնում էր կոլեկտիվ բանականության խտացումը: Նա բազմիցս ընդգծում էր, որ նոր հասարակարգի տասնյակ միլիոնավոր կերտողների խելքը «ստեղծում է ինչ-որ անչափ ավելի վեհ բան, քան մեծագույն ու ամենահանճարեղ կանխատեսությունը»[2]:

Վ. Ի. Լենինը կոլեկտիվությունը համարում էր ղեկավարության բարձրագույն սկզբունք, որովհետև, այն հիմնվելով կուսակցական և անկուսակցական մասսաների փորձի վրա, այս կամ այն կուսակցական ղեկավար մարմինը հնարավորություն ունի հազարավոր ու միլիոնավոր բազմազան մըտքերից, երանգներից, կարծիքներից, հարցերին ցույց տրվող մոտեցումներից հանգելու այնպիսի հետևությունների և ձևակերպելու այնպիսի որոշումներ, որոնք լինեն առավել կենսական և ընդունելի աշխատավորական լայն մասսաներին: Կուսկոմիտեները և կուսաշխատողները հնարավորություն ունեն կգային վերաբերմունք ցույց տալու էկոնոմիկայի, կուլտուրայի, առհասարակ հասարակական կյանքի պահանջմունքներին՝ միայն հետևողականորեն կենսագործելով ղեկավարության կոլեկտիվության սկզբունքը, հենվելով լայն կանգվածների, նրանց կոլեկտիվ փորձի վրա:

Մասսաների հետ կապը, ուսուցանում էր մեր առաջնորդ Լենինը, մի կողմից, անհրաժեշտ է նրանց տրամադրություններն ու սեփական փորձը հաշվի առնելու և առաջ չվազելու համար, քանի դեռ մասսան չի գիտակցել կուսակցության քաղաքականությունը: Մյուս կողմից, մասսաների հետ կապերի ամրապնդումը բնավ չի նշանակում, թե կուսակցությունը պետք է ենթարկվի հետամնաց տրամադրություններին, քարշ գա իրադարձությունների պոչից[3]: Մասսաների հետ քաղաքական ղեկավարի հարաբերությունները կառուցվում են փոխադարձ վստահության, առողջ սկզբունքային հիմքի վրա, որն ընդգրկում է մասսաների դաստիարակությունը մարքսիզմ-լենինիզմի վեհ գաղափարների ոգով:

Մասսաների հետ կուսակցության կապերի հետագա ուժեղացման, ղեկավարման կոլեկտիվության սկզբունքի ամրապնդման նպատակին են ուղղված ՍՄԿԿ Կենտկոմի 1964 թվականի հոկտեմբերյան պլենումի, կուսակցության XXIII համագումարի որոշումները: Կուսակցական դեմոկրատիայի զարգացումը, ներկուսակցական կարգապահության ամրապնդումը, բոլոր կուսակցական կազմակերպությունների մարտունակության բարձրացումը, մասսաների հետ նրանց կապի ուժեղացումը, ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների, ինչպես նաև տեղական կուսակցական կազմակերպությունների պլենումների, սկզբնական կուսակցական կազմակերպությունների ընդհանուր ժողովների դերի հետագա բարձրացումը՝ այս բոլոր հարցերը արդի էտապում լենինյան կուսակցության մշտական հոգատարության առարկան են[4]: Այս ամենը սովետական հասարակության կյանքում բարձրացնում է կուսակցության ղեկավար դերն ու նշանակությունը: Դրա հետ միասին կուսակցությունն իր պարտականությունն է համարում զարգացնել սոցիալիստական դեմոկրատիան, բարելավել պետական և հասարակական կազմակերպությունների և ամենից

---

1. Воспоминания о В. И . Ленине, ч. 2, стр. 605.
2. В. И. Ленин, ПСС, т. 35, стр. 281.
3. В. И. Ленин, ПСС, т. 31, стр. 144.
4. XXIII съезд КПСС. Стеногр. отчет, т. 1, стр. 87—89.



առաջ սովետների, արհմիությունների ու կոմերիտմիության գործունեությունը, արթնացնել բոլոր աշխատավորների նախաձեռնությունն ու ակտիվությունը[1]:

Ահա թե ինչու, վերլուծելով սովետական հասարակության զարգացման հիսնամյա փորձը, Լ. Ի. Բրեժնևն ընդգծեց, որ «կոմունիստների համար, բոլոր սովետական մարդկանց համար չկա ավելի վեհ պարտք, քան պահպանել կուսակցության հեղինակությունը, ամրապնդել նրա կապը ժողովրդի հետ, բազմապատկել նրա ուժերը»[2]:

Վ. Ի. Լենինը մեծ նշանակություն էր տալիս Կենտրոնական կոմիտեի պլանաչափ և նպատակասլաց աշխատանքի ապահովմանը, որին կուսակցության բարձրագույն մարմինը՝ համագումարը, հանձնում է ղեկավարությունը, դրանով իսկ ցույց տալով մեծագույն վստահություն[3]: Կենտկոմի քաղաքական աշխատանքը,— նշում էր Լենինը,— «...սերտորեն միահյուսվում է թե՛ կուսակցության ամբողջ աշխատանքի հետ, թե՛ սովետական հիմնարկների ամբողջ աշխատանքի հետ, թե հեղափոխության ամբողջ ընթացքի հետ»[4], քանի որ կուսակցությունը ղեկավարում է սոցիալիստական պետությունը նրա ամբողջ քաղաքական և տնտեսական աշխատանքում»[5]: Քաղաքականության բոլոր կարևորագույն հարցերը միշտ քննարկվել և քննարկվում են Կենտկոմում. «առանց դրա,— նշում էր Լենինը,— չի կարող լինել քաղաքական աշխատանք»[6]: Կենտրոնական կոմիտեի գործունեության մեջ կոլեկտիվության սկզբունքի կատարելագործման նկատմամբ, «մեր լավագույն բանվորների և գյուղացիների միջոցով իրոք լայն կանգվածների հետ» Կենտկոմի կապերի նկատմամբ հոգատարությամբ են տոգորված Վ. Ի. Լենինի վերջին ճառերն ու նամակները, մասնավորապես նրա առաջարկը Կենտկոմի անդամների թիվն ավելացնելու մասին: Չնայած իր անառարկելի հեղինակությանը, Լենինը բոլոր կարևորագույն հարցերում խորհրդակցում էր ընկերների հետ: «Նա երբեք որոշում չի ընդունի,— գրել է Լենինի մասին Վ. Վ. Վորովսկին,— երբեք մի քայլ չի ձեռնարկի, մինչև չհամոզվի, որ դա ոչ թե պարզապես իր անձնական կարծիքն է, այլ իր զինակիցներից շատերի կարծիքների արտահայտությունը»[7]:

Պաշտպանելով կոլեկտիվության սկզբունքը, Լենինն անդուլ կերպով շեշտում էր, որ անհրաժեշտ է այն զուգորդել անձնական պատասխանատվության հետ, ընդգծում էր կոլեկտիվ կերպով մշակված որոշումները ժամանակին կատարելու նշանակությունը: Լենինը սվիններով էր դիմավորում այն բոլոր փորձերը, որոնք խեղաթյուրված էին մեկնաբանում նրա բարձր հեղինակությունը՝ որպես ղեկավարի, որն իբր կոլեկտիվ մարմիններից վեր էր կանգնած: Օրինակ, նա սուր կերպով քննադատեց դիվանագիտական աշխատողներից մեկին՝ Ա. Ա. Իոֆֆեին, որը մի նամակում այն միտքն էր հայտնել, թե իբր Կենտկոմում բոլոր հարցերը Լենինը մենակ էր լուծում: «Դուք,— գրում էր Լենինը պատասխան նամակում,— սխալվում եք՝ կրկը-

---

1. Там же, стр. 91—96.
2. «50-летие Великой Октябрьской социалистической революции» Док. и материалы.
3. В. И. Ленин, ПСС, т. 43, стр. 103, 108.
4. В. И. Ленин, ПСС, т. 43, стр. 7.
5. В. И. Ленин, ПСС, т. 44, стр. 346.
6. В. И. Ленин, ПСС. т. 43, стр. 36.
7. См. «История КПСС», т. 3, кн. 2, М., 1968, стр. 328.

նելով (բազմիցս), թե «Կենտկոմը՝ ես եմ»: Դա կարելի է գրել միայն նյարդային մեծ գրգռվածության և գերհոգնածության վիճակում»[1]:

Վ. Ի. Լենինը չէր հանդուրժում, որ իրեն գովաբանեն, մեծարեն իր անձն ու ծառայությունները: 1918 թվականի աշնանը Լենինն իր մոտ կանչեց Ժողկոմխորհի գործերի կառավարիչ Բոնչ-Բրուևիչին և էլի մի քանի ընկերների ու նրանց հայտարարեց. «Մեծ անբավականությամբ նկատում եմ, որ իմ անձը սկսում են մեծարել: Դա տհաճ է և վնասակար: Մենք ամենքս գիտենք, որ կարևորը անձնավորությունը չէ: Անձամբ ինձ համար անհարմար կլիներ արգելել նման երևույթը: Դրա մեջ նույնպես ինչ-որ ծիծաղելի հավակնոտ բան կլիներ: Բայց դուք պետք է կամաց-կամաց արգելակեք այդ ամբողջ պատմությունը»[2]:

Այն մեծագույն հեղինակությունը, որ վայելում էր Վ. Ի. Լենինը, երբեք չէր վերածում անհատի պաշտամունքի, որը խորթ է մարքսիզմ-լենինիզմի ոգուն[3]: Լենինն իր մեջ մարմնավորում էր մեծության նոր հասկացողություն:

Պահպանելով լենինյան ավանդույթները, ՍՄԿԿ-ն կյանքում հասունացած բոլոր հարցերը քննարկելիս ձգտում է դրանք քննարկել կոլեկտիվ կերպով, այդ գործում ներգրավելով մասսաներին: Ամենատարբեր ձևերը՝ կուսակցական կոմիտեների պլենումները, կոմունիստների ժողովները, աշխատավորների ժողովները, առավել կարևոր պետական պրոբլեմների համաժողովրդական քննարկումներն օգտագործվում են՝ կոմունիստական շինարարության ղեկավարման գործում կուսակցության, ժողովրդի, կոլեկտիվ բանականության վրա հենվելու համար:

Հասարակական կյանքի գիտական ղեկավարումը, ղեկավարության կոլեկտիվությունը, մասսաների հետ անխզելի կապը արգասաբեր են միայն այն դեպքում, երբ կենսագործվում են այդ սկզբունքների հիման վրա մշակվող որոշումները: Խոսքի և գործի, մտահղացման և պրակտիկ կատարման միասնությունը, կամ, այլ խոսքով ասած գործարարությունը, ղեկավարության լենինյան ոճի բնորոշ գծերից մեկն է: Գործարարությունն արտահայտում է կուսակցության քաղաքական, դաստիարակչական ու կազմակերպչական աշխատանքի, սովետական պետության քաղաքական և վարչական գործունեության միասնությունը: «Այժմ,— ասում էր Լենինը, նկատի ունենալով Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի շնորհիվ սկսված ժամանակաշրջանը,— *«մենք պրոպագանդում ենք աշխատանքով»*[4]:

Առանց գործարարության, առանց հեղափոխական գաղափարները պրակտիկ գործ, մասսաների գործողություն դարձնելու կարողության քաղաքական աշխատանքը կարող է վերասերվել ու դառնալ փրփուր, հեղափոխական «հերյուրանք», անհող սուբյեկտիվիզմ, որոնք հակասում են լենինիզմի ոգուն: Վ. Ի. Լենինը բազմիցս հիշեցրել է, որ ամենալավ և ճիշտ որոշումները, ամենալավագույն մտահղացումները թղթի վրա մնալու վտանգի են ենթակա, եթե որոշմանը, ճիշտ հարցադրմանը անմիջապես չհետևի եռանդուն կազմակերպչական գործունեությունը, եթե որոշումների կատարման համար չմոբիլիզացվեն մասսաները:

[1]. В. И. Ленин, ПСС, т. 52, стр. 100.
[2]. «Известия», 14 февраля, 1960 г.
[3]. См. КПСС в резолюциях и решениях..., т. IV, М., 1954, стр. 223.
[4]. В. И. Ленин, ПСС, т. 38, стр. 198.



Հենց այդ պատճառով էլ Վ. Ի. Լենինն այնպես բարձր էր գնահատում կազմակերպչական տաղանդը քաղաքական գործունեության մեջ: Նա ասում էր, որ հենց այդ հատկությունն իր մեջ է մարմնավորում սոցիալիստական հեղափոխության արմատական գծերից մեկը: Աշխատավոր մասսաների շրջանում կուսակցության կազմակերպչական աշխատանքը հեղափոխության, սոցիալիզմի հաղթանակի խորունկ աղբյուրն է[1]:

Հոկտեմբերից առաջ և հատկապես սովետական իշխանության առաջին տարիներին, խիստ ծանր պայմաններում, Վ. Ի. Լենինը բոլոր աշխատողներից անդադար պահանջում էր կազմակերպվածություն: Նա օրինակ է բերում նրանց, ովքեր կարողանում են կազմակերպել գործը և ոչ թե սահմանափակվել միայն հայտարարություններով և լայնախոստում պլաններով: Նա մեծ սարկազմով ձաղկում էր այն մարդկանց, ովքեր ընդունակ չէին ամրապնդելու խոսքը գործով, որոշումները՝ կատարման կազմակերպմամբ և ստուգմամբ, չէին կարողանում առանց իրարանցման կազմակերպել աշխատանքը կադրերի հետ:

Որոշում ընդունելը Լենինը համարում էր սոսկ գործի սկիզբը, բայց վճռական նշանակություն էր տալիս ընդունված որոշումների փաստական կատարմանը: Կատարումն ապահովելու գործում նա գլխավորը համարում էր մարդկանց ճիշտ ընտրությունը և կատարման ստուգումը: Կադրերի հետ կատարվող աշխատանքը և կատարման ստուգումը նա համարում էր ամբողջ աշխատանքի, ամբողջ քաղաքականության մեխը: Զուր չէ, որ ՍՄԿԿ XXIII համագումարը, մեծ նշանակություն տալով այդ հարցերին, ընդգծեց դրանց կարևորագույն նշանակությունը կուսակցության կազմակերպական աշխատանքի համար:

Կադրերի հետ կատարվող աշխատանքը, նրանց ճիշտ տեղաբաշխումն ու դաստիարակությունը կուսակցական աշխատանքի կարևորագույն մեթոդն ու սկզբունքն են:

Կադրերի ընտրության ժամանակ առաջին պլանի վրա պետք է գտնվեն ոչ թե աշխատողի սուբյեկտիվ, այլ օբյեկտիվ ցուցանիշները, ամենից առաջ նրա քաղաքական և գործարար հատկությունները: Վլադիմիր Իլյիչը ղեկավարի մեջ բարձր էր գնահատում այնպիսի հատկությունների զուգորդումը, ինչպիսիք են՝ գաղափարայնությունը, դասակարգային, կուսակցական դիրքավորումները հետևողականորեն պաշտպանելու, ամեն գույնի օպորտունիստների դեմ անհաշտ պայքար մղելու կարողությունը, կուսակցության առաջադրած կոնկրետ խնդիրները գործարար կերպով լուծելու ունակությունը: Դրա հետ միասին Լենինը մեծ նշանակություն էր տալիս նաև անձնական հատկությունների ճիշտ գնահատմանը, խորհուրդ էր տալիս ուշադրության առնել նաև «զուտ անձնական յուրահատկության»[2] նկատառումները: Քաղաքական ղեկավարի համար անհանդուրժելի են կոպտությունը, ընկերոջ նկատմամբ անուշադրությունը, կամակորությունը և այլն, ինչպես նաև գործի զուտ վարչական կողմով չափից ավելի տարվելը: Լենինը կարևոր էր համարում կադրերի գնահատման պրոցեդուրան մշակելիս և կիրառելիս հենվել ոչ միայն աշխատողի վերաբերյալ իր տպավորությունների, այլև նրա հետ աշխատած ընկերների կարծիքի վրա: Պահանջելով աշխատողներին առաջ քաշելիս կամ նշանակելիս պահպանել նրանց գնահատման դեմոկրատական պրոցեդուրան,

[1]. В. И. Ленин, ПСС, т. 38, стр. 74—75.
[2]. В. И. Ленин, ПСС, т. 45, стр. 344.

Լենինը միաժամանակ պահանջում էր պայքարել մարդկանց բնութագրելիս պատահականության, հախուռն մոտեցման, կանխակալության դեմ[1]:

Վ. Ի. Լենինը պահանջում էր պատասխանատվություն հանձնարարված գործի համար, կուսակցական և կառավարական որոշումների փաստական կատարման վերահսկողություն: Ստուգել փաստական աշխատանքը, «ստուգել աշխատանքը, խորամուխ լինել էության մեջ»[2], «պաշտոնազրկել կառավարման գործը լրջորեն չսովորող կոմունիստներին»— այսպիսիք են աշխատողներին ներկայացվող պահանջները:

Աշխատանքում գործարարության, իսկական կազմակերպվածության անկապտելի ցուցանիշը Լենինը համարում էր հանձնարարված գործի համար յուրաքանչյուր աշխատողի պատասխանատվության ապահովումը: Նա դեմ էր կոլեգիալությամբ անպատասխանատվությունը քողարկելուն: «Կոլեգիալության վկայակոչումներով քողարկվող անպատասխանատվությունը,— ընդգծում էր Լենինը,— ամենավտանգավոր չարիքն է»[3]: Նա աշխատողների մեջ դաստիարակում էր օպերատիվություն, նախաձեռնություն, ինքնուրույնություն հարցերի լուծման գործում, նորը, կյանքում ծնունդ առնողը ժամանակին նկատելու, նրա ծիլերը պաշտպանելու կարողություն:

Լենինյան ոճի ուժեղ կողմերից մեկը բազմաթիվ գործերից գլխավոր խնդիրները, ինչպես Լենինն ինքն էր ասում՝ գլխավոր օղակներն առանձնացնելու և՛ իր և՛ ուրիշների ուշադրությունը դրանց վրա կենտրոնացնելու կարողությունն է: Դրա համար պահանջվում է աշխատանքում ուժերը չցրել, որովհետև ուժերի ցրումը և հիմնականի վրա կենտրոնանալ չկարողանալը կարող է բացասաբար անդրադառնալ գործի վրա: Վ. Ի. Լենինը մի աշխատողի մասին գրում էր, որ նա չափից դուրս ցրում է իր ուժերը, ձեռք է զարկում հարյուր գործի: Դա անթույլատրելի է: «Գլխավորը ուժերը չցրելն է: Ավելի լավ է քիչ բանի ձեռնարկել, բայց հասցնել մինչև վերջ»[4]: «Կառավարման և քաղաքականության ամբողջ արվեստը,— ընդգծել է մի այլ տեղ Լենինը,— այն է, որ ժամանակին հաշվի առնվի և իմացվի, թե որտեղ պետք է կենտրոնացնել գլխավոր ուժերն ու ուշադրությունը»[5]:

Գործարարությունը բյուրոկրատիզմի, ֆորմալիզմի լիակատար հակադրությունն է, նա ընդհանուր ոչինչ չունի այնպիսի այլանդակ երևույթի հետ, ինչպիսին է կարիերիզմը: Սովետական սոցիալիստական հասարակության մեջ բյուրոկրատիզմը սոցիալական արմատներ չունի: Բայց գիտակցության մեջ անցյալի մնացուկներ ունեցող առանձին մարդիկ գտնում են, թե ղեկավարը կարող է փոխել իրադարձությունների բնական ընթացքը, թե հնարավոր է բյուրոկրատի կամքը դարձնել սկզբնապատճառ, երբ «բյուրոկրատի համար աշխարհը պարզապես նրա գործունեության օբյեկտն է», իսկ, մյուս կողմից՝ հնարավոր են համարում կույր հավատը «հեղինակության, ամուր հաստատված ձևական գործողությունների *մեխանիզմի* նկատմամբ», «պետական նպատակի վերածումը բյուրոկրատի անձնական նպատակի», «աստիճանի, կարիերայի ետևից ընկնելու»[6]: Կ. Մարքսից անմիջապես հետո Վ. Ի. Լենինը գտնում էր, որ «մեր ամենավատթար ներքին թշնամին բյուրոկրատն է»:

Վ. Ի. Լենինը բազմիցս հիշեցնում էր, որ բյուրոկրատիզմի դեմ պայքարը

---

1. Там же, стр. 52—55.
2. В. И. Ленин, ПСС, т. 44, стр. 367.
3. В. И. Ленин, ПСС, т. 39, стр. 46.
4. В. И. Ленин, ПСС, т. 53, стр. 67—68.
5. В. И. Ленин, ПСС, т. 40, стр. 85.
6. К. Маркс и Ф. Энгельс. Соч. т. 1, стр. 272—273.



բացարձակ անհրաժեշտություն է, բոլոր գիտակից բանվորների և գյուղացիների պարտականությունը:

Կոմունիստական միջավայրում, ընդգծում էր Լենինը, ամենից վճռական պետք է դատապարտվեն բոլոր կարիերիստները, այն մարդիկ, որոնք «չունեն ոչ մի գաղափար, ոչ մի ազնվություն», «որոնք քաղաքականության անվան տակ հասկանում են մանր մեքենայություններ, որոնք երբեմն քիչ է մնում հասնեն խաբեության»[1]: Կարիերիզմը, որպես կանոն, կապված է կուսակցական կյանքի նորմերի, ղեկավարման կոլեկտիվության սկզբունքների խեղաթյուրման հետ, սովետական օրենքների խախտման հետ: Մինչդեռ, ասում էր նա, «ամենափոքր անօրինականությունը, սովետական իրավակարգի ամենափոքր խախտումը արդեն մի *անցք է*, որը անհապաղ կօգտագործեն աշխատավորության թշնամիները»[2]:

Լենինյան ղեկավարի ուժն այն է, որ նրա պրակտիկ գործունեությունը զուգորդվում է հեղափոխական հեռանկարի հետ: Այդ գործունեությունն ընդհանուր ոչինչ չունի մերկ պրակտիցիզմի հետ, երբ ընթացիկ գործերի ետևում աչքաթող են արվում աշխատանքի ընդհանուր ուղղությունը, կուսակցության և պետության գործունեության հեռանկարը:

Աշխատանքում գործարարություն ցուցաբերել, նշանակում է՝ իր ամբողջ գործունեությունը համապատասխանեցնել կուսակցության և սովետական պետության քաղաքականությանը, մշտապես սկզբունքային լինել ղեկավար մարմինների մշակած միջոցառումների իրականացման գործում: Վ. Ի. Լենինը վերին աստիճանի անհաշտ էր կուսակցության գաղափարախոսությունից ու քաղաքականությունից կատարվող նվազագույն շեղումների հանդեպ: «Քաղաքականությունը,— գրում էր Լենինը,— միլիոնավոր մարդկանց փաստական ճակատագիրն է»[3]: Սկզբունքորեն, քաղաքականապես մոտենալ գործին, նշանակում է՝ այն դիտել ժողովրդի շահերի, կուսակցության և պետության շահերի տեսանկյունից: Եվ այստեղ չի կարող լինել նվազագույն վիճում գերատեսչական և անձնական, տեղայնական կամ բարեկամական հարաբերություններին»: «Երբ բանը վերաբերում էր սկզբունքային հարցերին, Լենինն անխնա էր բոլոր նրանց նկատմամբ, ովքեր փորձում էին հանձնել մեր դիրքերը, խախտել բոլշևիկյան սկզբունքները: Այդտեղ արդեն նա հաշվի չէր առնում իր հետ աշխատող այդ մարդկանց ոչ դիրքը, ոչ էլ մոտիկությունը»[4]:

Սկզբունքայնությունը կորցրած աշխատողը երբեմն մոռանում է պատասխանատվությունը հանձնարարված գործի համար, կանգնում է մեքենայությունների և նույնիսկ պետությանը խաբելու ուղու վրա: Լենինն անխնա էր անազնվության, հակապետական վարքագծի դրսևորումների հանդեպ: Նա գործարարության անհրաժեշտ տարր էր համարում բարեխիղճ վերաբերմունքը գործի նկատմամբ, ազնվությունն ու արդարացիությունն իր աշխատանքի գնահատման մեջ:

Վ. Ի. Լենինը չէր հանդուրժում պարազայնությունը, «շատախոսությունը», դատարկ աղմկարարությունը: Նա խիստ դատապարտում էր «կոմսնապարծությունը», այն աշխատողների ամբարտավան մեծամտությունը, որոնք կարծում են, թե պաշտոնական դիրքը հեղինակություն է ստեղծում և անհրա-

---

1. В. И. Ленин, ПСС, т. 38, стр. 199. т. 43, стр. 58.
2. В. И. Ленин, ПСС, т. 39, стр. 156.
3. В. И. Ленин, ПСС, т. 40, стр. 132.
4. Воспоминания о В. И. Ленине, ч. 2, стр. 35.

ժեշտ չի դարձնում սովորելը: Վ. Ի. Լենինը խորհուրդ էր տալիս ղեկավար պոստերի առաջ չքաշել պարծենկոտ, ուրիշների փորձն ու գիտելիքները արհամարհող մարդկանց:

Առաջնորդվելով լենինյան պահանջներով, լենինյան օրինակով, կուսակցությունը մշտապես կատարելագործում է իր կազմակերպական և գաղափարա-դաստիարակչական աշխատանքը, կադրերի պատրաստումը:

Ներկայումս, երբ կուսակցությունն իրագործում է կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցումը, կուսակցական և սովետական աշխատողներից հատկապես պահանջվում է տիրապետել աշխատանքի լենինյան ստեղծարար ոճին, իրենց մեջ կարգացնել լենինյան տիպի քաղաքական գործիչների հրաշալի հատկությունները: Ընդ որում, այժմ, երբ կոմունիզմի կառուցման համար պայքարող սովետական հասարակության կյանքի ամբողջ կացութաձևով, կուսակցության քաղաքական աշխատանքով դաստիարակվում է նոր մարդը, շատ հատկություններ արդեն ինչ-որ հեռավոր իդեալ չեն, կամ հատուկ չեն միայն ղեկավար աշխատողներին ու կոմունիստներին: Այնպիսի գծեր, ինչպիսիք են՝ արդարացիությունը, կոլեկտիվիզմը, ազնվությունը, համեստությունը, գաղափարայնությունը, հայրենիքին նվիրվածությունը, ինտերնացիոնալիզմը, հայրենասիրությունը և այլ հատկություններ, որպես էթիկական սկզբունքներ, մտել են կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի մեջ: Այդ հատկություններից յուրաքանչյուրը ադամանդի պես ներկայացնում է կոմունիզմ կառուցող սովետական մեծաթիվ մարդկանց անկապտելի գիծը: Դրանք արդի պայմաններում հասարակության անհրաժեշտ պահանջն են՝ ուղղված սովետական յուրաքանչյուր մարդու:

Տիրապետել ղեկավարության լենինյան ոճին, որն ստեղծվել է ոչ թե մտահայեցաբար, այլ հեղափոխական պրակտիկայի պրոցեսում, չի նշանակում թե կարելի է սահմանափակվել այդ թեմայով լոկ մեկ—երկու գրքույկ կամ հոդված ընթերցելով: Տիրապետել այդ ոճին՝ նշանակում է տիրապետել լենինյան կուսակցության քաղաքական և կազմակերպական ամբողջ փորձին և կարողանալ այն կիրառել պրակտիկ գործունեության մեջ:

Լենինյան ոճը այն հոյակապ մեթոդն է, որը համակում է մարդկանց այնպիսի հատկություններով, որոնցով օժտված էր ինքը՝ Լենինը և որպիսիք պահանջում էր նա հասարակական-քաղաքական գործիչներից: Լենինյան տիպի աշխատողը բառիս բուն իմաստով ժողովրդի երջանկության մարտիկն է, որն իրեն ամբողջովին նվիրում է կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարին: Լենինի կյանքն իսկ կոմունիզմի մեծ գործին անսահման նվիրվածության մարմնացումն է:



**Մ. Հ. ԱՌԱՔԵԼՅԱՆ**

Պատմական գիտությունների դոկտոր

# Վ. Ի. ԼԵՆԻՆԸ ԵՎ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՅՐԵՆԻՔԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅՈՒՆԸ

*Սոցիալիստական հայրենիքի պաշտպանության տեսական հիմքերը սոցիալիստական հեղափոխության լենինյան ուսմունքի բաղկացուցիչ մասն են։*

*Վ. Ի. Լենինը հիմնավորեց սոցիալիզմի պաշտպանության համար արդարացի պատերազմի բնույթը, պրոլետարիատի դիկտատուրայի ինքնապաշտպանության տնտեսական, բարոյաքաղաքական, գիտատեխնիկական նախապատրաստության ուղիները, կուսակցության ռազմական քաղաքականության ու շինարարության սկզբունքները, բնորոշեց սոցիալիստական բանակի սոցիալ-դասակարգային առանձնահատկությունները, ուսուցման և դաստիարակության եղանակները, բացահայտեց սոցիալիստական պետության ռազմական կազմակերպության գործում կոմունիստական կուսակցության ղեկավար դերը և այլն:*

* * *

*Մշակելով սոցիալիստական հայրենիքի պաշտպանության հարցերը՝ Լենինը Մարքսի և Էնգելսի ռազմա-տեսական ժառանգությունը հարստացրեց նոր գաղափարներով: Գիտական կոմունիզմի հիմնադիրները, ելնելով կապիտալիզմի նախաիմպերիալիստական փուլի օրինաչափություններից, գտնում էին, որ սոցիալիստական հեղափոխության միաժամանակյա հաղթանակը հնարավոր է կապիտալիստորեն զարգացած բոլոր երկրներում կամ դրանց մեծ մասում: Բնական է, որ նրանք չէին կարող իրենց առջև խնդիր դնել ստեղծելու սոցիալիստական անջատ հայրենիքների զինված պաշտպանություն, կանոնավոր կադրային պրոլետարական բանակ: Այդպիսի պրոբլեմ նրանց համար գոյություն չուներ: Նրանք ենթադրում էին, որ սոցիալիզմի, այս կամ այն չափով, միաժամանակ հաղթանակը միջազգային մասշտաբով թույլ կտա սոցիալիստական պետություններին հրաժարվել մշտական կադրային բանակներից և անցնել համաժողովրդական միլիցիայի սիստեմին: Էնգելսը գրում էր, որ նոր հասարակությունը «կարիք չունի մշտական բանակի, քանի որ հեշտ կլինի՝ պատերազմի համար պիտանի հասարակության ամեն մի անդամի,*

ուրիշ զբաղմունքների հետ միասին, սովորեցնել զենք տիրապետել, որքանով այն անհրաժեշտ է երկրի պաշտպանության համար...» (**К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 2, стр. 539**):

Լենինը ելավ այն եզրակացությունից, որ իմպերիալիզմի դարաշրջանում, կապիտալիզմի անհամաչափ զարգացման օրենքի ներգործության պատճառով, սոցիալիստական հեղափոխության միաժամանակյա հաղթանակը հնարավոր չէ, այն կարող է սկզբնապես հաղթանակել փոքրաթիվ կամ նույնիսկ առանձին վերցրած երկրում, որը որոշ ժամանակամիջոցում անխուսափելիորեն կգտնվի կապիտալիստական շրջապատման մեջ: Նման իրավիճակը կառաջացնի «...ոչ միայն բախումներ, այլև մյուս երկրների բուրժուազիայի ուղղակի ձգտումը՝ ջախջախելու սոցիալիստական պետության հաղթական պրոլետարիատին» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 23, էջ 94): Ուստի, հաղթանակած պրոլետարիատը, եթե ցանկանում է պահպանել իր տիրապետությունը, պետք է այդ անի իր ռազմական կազմակերպությամբ:

Մարքս-լենինյան տեսությունն առաջին անգամ տվեց հասարակության կյանքում պատերազմների ծագման ու դասակարգային էության գիտական բացատրությունը: Ի հակադրություն բուրժուական գաղափարախոսության, որը պատերազմը դիտում է որպես մարդկանց բիոլոգիական պահանջմունքների արտահայտություն, մարքսիզմ-լենինիզմն այն համարում է հասարակական-քաղաքական, պատմական երևույթ: Պատերազմները մասնավոր սեփականության ու հասարակական դասակարգերի առաջացման անխուսափելի հետևանք են, հակամարտ հասարակությունների մշտական ուղեկիցը: Հաշվված է, որ վերջին հինգ ու կես հազար տարիների ընթացքում մարդկությունը տեսել է ավելի քան 14 հազար պատերազմ: Միայն XX դարի առաջին կեսում ժողովուրդները կրել են երկու համաշխարհային և բազմաթիվ տեղական պատերազմներ, որոնց զոհ են դարձել 70 միլիոնից ավելի մարդ:

Պատերազմը հասարակության կյանքի ամենաբարդ ու հակասական երևույթներից է: Լենինը նկատել է, որ «Պատերազմը քաղաքականության շարունակությունն է այլ միջոցներով: Ամեն մի պատերազմ անխզելիորեն կապված է այն քաղաքական կարգի հետ, որից նա բխում է: Ճիշտ նույն քաղաքականությունը, որը մի որոշ տերություն, այդ տերության ներսում մի որոշ դասակարգ վարել է երկար ժամանակամիջոցում պատերազմից առաջ, այդ նույն դասակարգը անխուսափելիորեն ու անվերապահորեն շարունակում է վարել պատերազմի ժամանակ, փոխելով միայն գործողության ձևը» (Երկեր, հ. 24, էջ 501): Պատերազմը, լինելով բռնության միջոցներով զինված դասակարգային քաղաքականության շարունակություն, այդ քաղաքականության զենք է ծառայում: Վերջինիս բնույթը և ուղղությունը պայմանավորված է տվյալ դասակարգի նպատակներով, հասարակության զարգացման պատմական կոնկրետ պայմաններում նրա օբյեկտիվ դերով: «Պատերազմներ էլ են լինում, պատերազմներ էլ: Պետք է պարզել, թե ինչպիսի՞ պատմական պայմաններից է բխել տվյալ պատերազմը, ո՞ր դասակարգերն են մղում այն, հանուն ինչի՞ են մղում: Չպարզելով այդ, մենք պատերազմի վերաբերյալ արած մեր բոլոր դատողությունները կդատապարտենք կատարյալ դատարկության, զուտ բանավոր ու ապարդյուն վեճերի» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 24, էջ 500): Պատերազմը յուրաքանչյուր դասակարգի բուն քաղաքականությունն է, նրա տնտեսական շահերի համակենտրոնացված արտահայտությունը:

Ըստ հասարակական կյանքի մարքս-լենինյան ըմբռնման լինում են արդարացի և անարդարացի պատերազմներ: Մեր դարաշրջանում օբյեկտիվորեն հնարավոր են արդարացի պատերազմների հետևյալ տիպերը. երկրի պաշտպանության պատերազմ՝ հանուն ազգային անկախության, դասակարգային քաղաքացիական՝ ընդդեմ շահագործողների, սոցիալ-ազատագրական, գաղութային և կախյալ երկրների ժողովուրդների, ազգային-ազատագրական՝ ընդդեմ գաղութարարների, սոցիալիզմի երկրների ժողովուրդների հեղափոխական պատերազմ՝ ընդդեմ իմպերիալիստական ագրեսորների, հանուն սոցիալիստական հայրենիքի պաշտպանության:

Անարդարացի, զավթողական բնույթ են կրում իմպերիալիզմի գաղութային, աշխատավորների դեմ շահագործող դասակարգերի քաղաքացիական, կապիտալիստական պետությունների միջև մղվող, իմպերիալիստական ագրեսորների պատերազմներն ընդդեմ սոցիալիստական պետությունների:

Մարքսիստ-լենինյանները վճռականապես դատապարտում են անարդարացի պատերազմները և պայքար մղում դրանց դեմ: Միևնույն ժամանակ նրանք ընդունում են արդարացի, հեղափոխական պատերազմների օրինականությունը, պատմական անհրաժեշտությունը: «Որքան հանցավոր ու կործանարար են ռեակցիոն պատերազմները և մասնավորապես իմպերիալիստական պատերազմները..., այնքան էլ օրինական ու իրավացի են հեղափոխական պատերազմները, այսինքն՝ այն պատերազմները, որ մղվում են ճնշված դասակարգերին կապիտալիստներից պաշտպանելու... իմպերիալիստների ճնշած ժողովուրդներին ճնշողներից պաշտպանելու, սոցիալիստական հեղափոխությունը օտարերկրյա արշավանքներից պաշտպանելու համար» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 33, էջ 141):

Մեր դարաշրջանի ամենաարդարացի, հեղափոխական պատերազմներն են սոցիալիստական հայրենիքի պաշտպանության համար մղվող պատերազմները, որոնց ելքից է կախված ո՛չ միայն բուն սոցիալիստական պետությունների ապագան, այլև, ամբողջությամբ վերցրած՝ համաշխարհային կոմունիզմի ճակատագիրը:

Սոցիալիստական հայրենիքը պատմական նոր կատեգորիա է, որը բովանդակում է նոր հասկացություն:

Ընդհանրապես հայրենիքն այս կամ այն երկրի բնակչության պատմականորեն ստեղծված ընդհանրությունն է, որը ներառնում է տերիտորիան, լեզուն, ինչպես և տվյալ կոնկրետ քաղաքական, հասարակական, կուլտուրական միջավայրը, որտեղ իրենց կնիքն են դնում տիրապետող կարգերը, սոցիալ-դասակարգային հարաբերությունները:

Աշխատավորներն իսկական հայրենիք ձեռք են բերում միայն սոցիալիստական հեղափոխության շնորհիվ: Սոցիալիստական հայրենիքի առանցքը ժողովրդական հասարակարգն է, որի հիմքն արտադրամիջոցների հանրային սեփականությունն է, ժողովրդական իշխանությունը, հասարակության բարոյաքաղաքական միասնությունը, ժողովուրդների բարեկամությունը, սոցիալիստական հայրենասիրությունը, կոմունիզմի հաղթանակի համար պայքարելու պատրաստակամությունը:

Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի շնորհիվ մեր երկրի աշխատավորները պատմության մեջ առաջին անգամ ձեռք բերեցին իրենց իսկական, սոցիալիստական հայրենիքը: Սովետական Միությունը, որը Հոկտեմբերյան մեծ հեղափոխությունից սկսած դարձավ համաշխարհային ազատագրական պայքարի կենտրոն, միաժամանակ դարձել է ամբողջ երկրագնդի աշխա-

տավորների հայրենիքը: Բայց նրա ծագումն առաջացրեց ամբողջ աշխարհի բուրժուազիայի կատաղի ատելությունը: Համաշխարհային ռեակցիայի ուժերը ռուսաստանյան հակահեղափոխության հետ բլոկ կազմած՝ որոշեցին զենքի ուժով, ամեն գնով ոչնչացնել սովետական հանրապետությունը, մարել Մեծ հոկտեմբերի վառած ազատության ջահը:

Լենինը հաղթանակած հեղափոխության ռազմական պաշտպանության կազմակերպումը համարում էր պատմական անհրաժեշտություն, սոցիալիստական պետության կենսական խնդիրը: Նշում էր, որ միլիտարիզմը, պատերազմների քաղաքականությունն օրգանապես խորթ են սոցիալիստական հասարակությանը, սակայն, գտնվելով իմպերիալիստական գիշատիչների շրջապատման մեջ, սոցիալիստական պետությունը պետք է ստեղծի նոր բանակ, ունակ պաշտպանելու հեղափոխությունը: «Առանց սոցիալիստական հանրապետության՝ զինված պաշտպանության մենք գոյություն ունենալ չէինք կարող» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 29, էջ 173):

Լենինը բոլորից պահանջում էր ամենալուրջ վերաբերմունք երկրի պաշտպանության հարցի նկատմամբ: Բայց ամուր պաշտպանություն ստեղծելը, սովորեցնում էր կուսակցության առաջնորդը, պահանջում է լուծել խնդիրների մի ամբողջ կոմպլեքս՝ երկրի տնտեսական վերելքի ապահովում, ամբողջ ժողովրդի ռազմական և բարոյա-քաղաքական պատրաստականություն, ամուր թիկունքի ստեղծում, հեղափոխական խստագույն կարգապահության սահմանում: Նա ընդգծում էր, թե պատերազմում հաղթում է նա, ով ավելի մեծ ուժ ու ռեզերվներ ունի, և առավել բարձր է ժողովրդի և բանակի բարոյական ոգին:

Դիմելով կուսակցությանը և ժողովրդին, Լենինը գրում էր. «Հարկավոր է ամուր և հաստատուն բանակ» (Երկեր, հ. 27, էջ 465), «...բանակի ամրապնդումից է կախված... սոցիալիզմի հաղթանակը Ռուսաստանում և ամբողջ աշխարհում» (Երկեր, հ. 28, էջ 110): Սակայն այդ դժվարին խնդրի լուծումը մեծ ջանքեր էր պահանջում: Այսպես՝ «Կարմիր բանակի կառուցման հարցը միանգամայն նոր հարց էր, այդ հարցը բոլորովին չէր դրվել անգամ տեսականորեն...» (Երկեր, հ. 29, էջ 172): Ուստի, անհրաժեշտ էր սոցիալիստական պետության մշտական կանոնավոր բանակի ստեղծման խնդիրը լուծել նոր, աննախադեպ եղանակով: Վլադիմիր Իլյիչը նկատել է, որ մեզ վիճակված էր շոշափել, գործնականում ստուգել, թե «...ինչ միջոցով տվյալ հանգամանքներում կարող է խնդիրը լուծվել» (Երկեր, հ. 29, էջ 173): Չի կարելի հաշվի չառնել նաև այն, որ նոր բանակը ստեղծվում էր քաղաքացիական պատերազմի և օտարերկրյա ռազմական ինտերվենցիայի ծանր տարիներին, հին բանակի քայքայման, տնտեսական ավերածության, քաղցի, պատերազմից ժողովրդի անասելի հոգնածության պայմաններում: «...մենք,— գրել է Լենինը,— պետք է ուժեր հավաքեինք և ամենաատանջալի դժվարություններով նոր բանակի, կարմիր բանակի հիմքը դնեինք մի երկրում, որը պատերազմից ավերված ու խոշտանգված է այնպես, ինչպես ոչ մի երկիր աշխարհում...» (Երկեր, հ. 29, էջ 53):

Կուսակցությունը, Լենինի գլխավորությամբ, առաջնորդվելով մարքսիզմի հեղափոխական ուսմունքով, հենվելով երեք հեղափոխություններում ռազմամարտական աշխատանքի իր հարուստ փորձի, աշխատավոր մասսաների հեղափոխական մեծ խանդավառության վրա, հաղթահարելով հսկայական դժվարություններ, հաջողությամբ լուծեց նոր բանակի ստեղծման պրոբլեմը: Լենինը ցույց տվեց նոր տիպի բանակի սոցիալական բնույթը, առանձնահատ-



կությունները, պատմական դերը, նրա արմատական տարբերությունը կապիտալիստական պետությունների բանակներից: Նա հատուկ ուժով հիմնավորեց կոմունիստական կուսակցության ղեկավար դերը նոր տիպի բանակի ստեղծման ու դաստիարակման գործում: Լենինը ո՛չ միայն տեսականորեն հարստացրեց պատերազմի ու բանակի վերաբերյալ մարքսիստական ուսմունքը, այլև անմիջականորեն ղեկավարեց կուսակցության պրակտիկ գործունեությունը կարմիր բանակի ստեղծման, դաստիարակման, մարտունակության բարձրացման ուղղությամբ:

Սոցիալիստական պետության զինված ուժերի ստեղծման սկիզբը դրվեց բանվորագյուղացիական կարմիր բանակի (1918 թ. հունվարի 28) և բանվորագյուղացիական կարմիր նավատորմի (փետրվարի 11) կազմակերպման մասին սովետական կառավարության պատմական դեկրետներով: Այդ դեկրետների համաձայն իրականացվեց հին բանակի աստիճանական լուծարումը և նոր, հեղափոխական բանակի ստեղծումը: Մինչև 1918 թ. գարունը բանակը կոմպլեկտավորվում էր կամավոր բանվորներից ու գյուղացիներից: Սակայն, ինչպես ցույց տվեց փորձը, կամավոր բանակը չէր կարող ապահովել հաղթանակը սովետական իշխանության բազմաթիվ թշնամիների դեմ: Ուստի, 1918 թ. գարնանը որոշվեց պարտիզանական հատկանիշներով ու կազմակերպչորեն թույլ կամավոր բանակից անցնել մասսայական կադրային բանակի ստեղծմանը՝ աշխատավորների ընդհանուր զինվորական պարտադիր ծառայության հիման վրա:

Կուսակցության ռազմական շինարարության և քաղաքականության գիտական սկզբունքները սահմանելիս կարևոր նշանակություն ունեցան ՌԿ(բ)Կ VIII համագումարի որոշումները և Լենինի ելույթները (1919 թ. մարտ): Համագումարը մերժեց կանոնավոր բանակ ստեղծելուց հրաժարվելու, պարտիզանական տիպի բանակ պահելու վերաբերյալ «ռազմական» օպոզիցիայի վնասաբեր առաջարկությունը, դատապարտեց Տրոցկու ստորաքարշությունը ռազմական հին մասնագետների առաջ, նրա արհամարհական վերաբերմունքը զինվորական կոմիսարների և բանակային կուսկազմակերպությունների նկատմամբ, հիմնավորեց կուսակցության գիծը դասակարգային, կադրային, կենտրոնացված, խիստ կարգապահ բանակի շինարարության նկատմամբ: Նրա կազմակերպական կարևորագույն սկզբունքը դարձավ միանձնյա հրամանատարությունը:

Ղեկավարվելով համագումարի որոշումներով, կուսակցությունը հսկայական գործնական աշխատանք ծավալեց կարմիր բանակի հետագա ստեղծման ու ամրապնդման ուղղությամբ: Կուսակցության գործունեության հիմնական ուղղություններն էին՝ բանվորներից ու գյուղացիներից հրամանատարական և քաղաքական կադրերի պատրաստումը, հին ռազմական մասնագետների օգտագործումը՝ ռազմական կոմիսարների հսկողությամբ, կուսակցական-քաղաքական աշխատանքի ապահովումը բանակում և նավատորմում, հանրապետության պաշտպանության կարիքների համար երկրի բոլոր ուժերի ու միջոցների մոբիլիզացումը, բանակի մարտունակության բարձրացումը ժամանակակից ռազմական արվեստի մակարդակին:

Կոմունիստական կուսակցության ստեղծած և ղեկավարած բանակը դարձավ սովետական իշխանության հզոր ռազմական հենարանը, սոցիալիստական հայրենիքի պաշտպանության վճռական զենքը:

Սովետական բանակը ժողովրդի բանակն է, աշխատավորության պաշտ-

պանը: «...Այժմ,— ասել է Լենինը,— չպետք է վախենալ հրացանավոր մարդուց, որովհետև նա պաշտպանում է աշխատավորներին և անողոք կլինի շահագործողների տիրապետության ճնշման գործում» (Երկեր, հ. 26, էջ 566): Նա ստեղծվել է որպես պրոլետարիատի դիկտատուրայի բանվորագյուղացիական դասակարգային բանակ: Իսկ մեր երկրում սոցիալիզմի հաղթանակի շնորհիվ այն դարձել է սոցիալիստական պետության համաժողովրդական բանակ:

Մեր բանակի կարևորագույն առանձնահատկությունը, նրա բարոյական ու մարտական բարձր հատկությունների հիմքը, հզորության աղբյուրը կոմունիստական կուսակցության ղեկավարությունն է: «Ռազմական շինարարության հիմքերի հիմքը,— ասված է ՍՄԿԿ ծրագրում,— զինված ուժերի նըկատմամբ կոմունիստական կուսակցության ղեկավարությունն է, բանակում և նավատորմում կուսակցական կազմակերպությունների դերի և ազդեցության ուժեղացումը» (ՍՄԿԿ ծրագիր, էջ 134):

Սովետական բանակի առանձնահատկություններից է նրա ինտերնացիոնալիզմը: Այն ստեղծվել է որպես իրավահավասար ժողովուրդների եղբայրության ու բարեկամության բազմազգ բանակ, մարմնավորում է սովետական հանրապետությունների ռազմաքաղաքական միասնությունը: Սովետական բանակը սոցիալիստական հայրենասիրության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի կենդանի մարմնացումն է:

Մերկացնելով բուրժուական պրոպագանդայի հերյուրանքները, Լենինը գրել է. «Հիմար մարդիկ կան, որոնք աղաղակում են կարմիր միլիտարիզմի մասին. դրանք քաղաքական սրիկաներ են, որոնք ձևացնում են, որ իբր թե իրենք այդ հիմարությանը հավատում են, և աջ ու ձախ շպրտում են նման մեղադրանքներ, դրա համար օգտվելով կեղծ փաստարկներ սարքելու և մասսաների աչքին թոզ փչելու իրենց փաստաբանական հմտությունից» (Երկեր, հ. 29, էջ 61): Միլիտարիզմը և պատերազմը կապիտալիզմի անխուսափելի ատրիբուտներն են: Սոցիալիզմը խաղաղություն է, ժողովուրդների բարեկամություն: Սակայն հաղթանակած պրոլետարիատն ստիպված է սպառազինված պաշտպանելու սոցիալիզմի գործը:

Լենինը միաժամանակ սկզբունքային պայքար էր մղում «ձախ» ավանտյուրիզմի դեմ: Սովետական հանրապետության պաշտպանության համար հսկայական նշանակություն ունեցավ նրա անհաշտ պայքարը «ձախ» կոմունիստների և տրոցկիստների, այսպես կոչված՝ «հեղափոխական պատերազմի» վերաբերյալ ավանտյուրիստական դիրքորոշման դեմ: «Հեղափոխության արտահանման» միջոցով համաշխարհային իմպերիալիզմի տապալման խնդիրը Լենինը համարում էր «...ամբողջովին անհեթեթություն և անմտություն ու լիակատար անհասկացողություն այն պայմանների, որոնց ժամանակ բռնության քաղաքականությունը հաջողություն ունի» (Երկեր, հ. 29, էջ 53): Մոռանալով լենինիզմի դրույթները, Մաո Ցզե-դունի խումբը թմբկահարում է ջերմամիջուկային պատերազմի միջոցով համաշխարհային հեղափոխության հրահրման մարդատյաց, ավանտյուրիստական դոկտրինան:

Ամեն անգամ, երբ սովետական բանակը հարկադրված էր գործադրել իր ահեղ զենքը, այդ անում էր հանուն սոցիալիզմի, իմպերիալիզմի ագրեսիայից ժողովուրդների ազատության պաշտպանության, ցուցաբերելով պատմության մեջ չտեսնված արիության ու մասսայական հերոսության օրինակներ:

1918—1920 թթ. երիտասարդ Կարմիր բանակը դաժան ճակատամարտե-



րում ջախջախեց և սովետական հողից վռնդեց ինտերվենտներին ու սպիտակգվարդիականներին, պաշտպանեց Հոկտեմբերյան հեղափոխության մեծ նվաճումները: Սոցիալիզմն այն ժամանակ շահեց առաջին վճռական ճակատամարտն ընդդեմ իմպերիալիզմի ուժերի: Մեր ժողովուրդը հնարավորություն ստացավ վերադառնալու խաղաղ աշխատանքի, ձեռնամուխ լինելու սոցիալիզմի կառուցման լենինյան պլանի կատարմանը: Այդ նոր պայմաններում մեր բանակը դարձավ նրա ստեղծագործական աշխատանքի հուսալի պաշտպանը: Սովետական բանակի կեսդարյա հերոսական պատմությունը հաստատում է նրա նվիրվածությունը սոցիալիստական հայրենիքին:

Լենինը սովորեցնում էր՝ ոչ մի րոպե չմոռանալ, որ քանի դեռ գոյություն ունի համաշխարհային իմպերիալիզմը, նա միշտ սպառնալու է մեզ նոր պատերազմով, որ մենք պետք է միշտ հիշենք այդ մասին և անդադրում ամրապնդենք երկրի պաշտպանունակությունը, մեր զինված ուժերի մարտական հզորությունը:

«...ձեռնամուխ լինելով մեր խաղաղ շինարարությանը,— ասում էր Վլադիմիր Իլյիչը,— մենք բոլոր ուժերը գործ կդնենք այն առանց ընդհատումների շարունակելու համար: Միևնույն ժամանակ, ընկերնե՛ր, պատրաստ և զգո՛ւյշ եղեք, աչքի լույսի՛ պես պահպանեցեք մեր երկրի և մեր կարմիր բանակի պաշտպանունակությունը, և հիշեցե՛ք, որ մենք իրավունք չունենք մի վայրկյան անգամ թույլ տալու թուլացում մեր բանվորների ու գյուղացիների և նրանց նվաճումների նկատմամբ» (Երկեր, հ. 33, էջ 166—167):

Կոմունիստական կուսակցությունը, կատարելով առաջնորդի պատգամը, մշտական հոգատարություն էր ցուցաբերում մեր հայրենիքի պաշտպանունակությունը ամրապնդելու համար: Սոցիալիստական շինարարության վճռական հաջողությունների հիման վրա վիթխարի չափով աճեց երկրի ռազմատնտեսական պոտենցիալը: Բանակն սկսեց սպառազինման համար ստանալ ավելի կատարելագործված հրազեն ու հրետանի, զրահատանկային տեխնիկա, ավիացիա, վերջրյա ու ստորջրյա նավեր: Հաջողությամբ էր լուծվում ռազմական կադրերի պրոբլեմը: Զարգանում էր ռազմական գիտությունը: Հաշվի առնելով ռազմական հարձակման սպառնալիքը մեզ վրա, կուսակցությունը երկրին, ժողովրդին պատրաստում էր սոցիալիստական հայրենիքի պաշտպանության համար: Երկրի պաշտպանունակությունն ուժեղացնելու նպատակով նախապատերազմյան տարիներին կուսակցությունը ռազմատնտեսական և ռազմատեխնիկական խոշոր միջոցառումներ կիրառեց:

Եթե 1939 թ. ՍՍՀՄ ռազմական բյուջեն պետական բյուջեի 25,6 տոկոսն էր, ապա 1940 թ. այն կազմեց 32,6 տոկոսը, իսկ 1941 թ.՝ 43,8: Մեր զինված ուժերի թիվը 1939—1941 թթ. առաջին կեսում ավելացավ 2,8 անգամ (տե՛ս «50 лет Вооруженных Сил СССР», М., 1968, стр. 262): Մեր արդյունաբերությունն այդ նույն ժամանակամիջոցում արտադրեց 17 հազարից ավելի մարտական օդանավ, 7,5 հազար տանկ, 80 հազարից ավելի թնդանոթ ու ականանետ, 200 հազարից ավելի գնդացիր ու ավտոմատ և այլն (журнал «Коммунист»,1968, № 12, стр. 65):

Սակայն ֆաշիզմի սանձազերծած համաշխարհային պատերազմի իրադարձությունները զարգանում էին այնքան արագ, որ ռազմական տեխնիկայի, առանձնապես տանկերի ու օդանավերի նոր տիպերի արտադրման այդ մակարդակը չէր բավարարում բանակի ու նավատորմի մարտական նորագույն տեխնիկայով վերազինմանը:

Հայրենական պատերազմի սկզբին հիտլերյան բանակը մեր բանակից գերազանցում էր զինվածության ու մոբիլիզացված զորքերի թվի, ժամանակակից պատերազմ մղելու մարտական փորձի տեսակետից: Նրա թիկունքի ռազմատնտեսական բազան ներառնում էր օկուպացված Եվրոպայի ռազմատնտեսական պոտենցիալը: Այդ ժամանակավոր առավելությունները, հարձակման հանկարծակիության հետ զուգակցված, թշնամուն հնարավորություն տվեցին ստրատեգիական նախաձեռնություն վերցնել և տակտիկական լուրջ հաջողությունների հասնել:

Չնայած այդ բոլորին, Հիտլերի ռազմական ավանտյուրան ձախողվեց: Սովետական Միությունը հաղթող դուրս եկավ նրան պարտադրված պատերազմից: Սոցիալիզմի երկրի բանակը կատարեց ազատագրական մեծ միսիա, վճռական դեր խաղաց ֆաշիստական զավթիչների ռազմական մեքենան ոչնչացնելու, Եվրոպայի ու Ասիայի ստրկացված ժողովուրդների ազգային անկախությունը վերականգնելու գործում: Ֆաշիզմի դեմ տարած հաղթանակը ցույց տվեց, որ աշխարհում չկան այնպիսի ուժեր, որոնք կարողանային խորտակել սոցիալիզմը: (տե՛ս Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 50 տարին: ՍՄԿԿ թեզիսներ):

Պատերազմի ավարտից հետո համաշխարհային ռեակցիայի ուժերն արհամարհելով պատմության դասերը և ուժերի նոր հարաբերակցությունը, բռնեցին սոցիալիստական լագերի դեմ նոր պատերազմի նախապատրաստության կուրս: Իմպերիալիստական պետություններում և, առաջին հերթին՝ ԱՄՆ-ում հետպատերազմյան տարիներին իրականացվում է երկրի սպառազինումը: Հակակոմունիզմի գաղափարախոսությունը ներգործման բոլոր միջոցներն ուղղել է սոցիալիստական երկրների դեմ: Ամերիկյան իմպերիալիզմը՝ այդ համաշխարհային ժանդարմը, հենվելով իր կողմից ստեղծված ագրեսիվ ռազմական բլոկների վրա (ՆԱՏՕ, ՍԵՆՏՕ, ՍԵԱՏՕ), ձգտում է ուղղակի և անուղղակի ինտերվենցիայի տարբեր ուղիներով «հակահեղափոխության արտահանություն» կատարել ուրիշ երկրներ, կազմակերպել տեղային պատերազմներ ու ռազմաքաղաքական պրովոկացիաներ, հակահեղափոխական խռովություններ ու դիվերսիաներ: Որպես ամերիկյան իմպերիալիզմի գլխավոր դաշնակից՝ ավելի ու ավելի բացահայտորեն հանդես են գալիս ԳՖՀ-ի ռևանշիստական շրջանները, ձգտելով սնուցել ու ամրապնդել նեոֆաշիզմի ուժերը:

Միջազգային բարդ իրադրությունը, իմպերիալիզմի մեքենայությունները կոմունիստական կուսակցությունից պահանջում էին ցուցաբերել մեծագույն զգոնություն, անհրաժեշտ միջոցներ ձեռք առնել մեր երկրի և ողջ սոցիալիստական համագործակցության անվտանգությունն ապահովելու համար:

Վերջին 15—20 տարիներին գիտատեխնիկական առաջադիմության շնորհիվ հեղափոխություն կատարվեց ռազմական գործում: Վերջինս պայմանավորեց որակական, արմատական փոփոխություններ զենքի, զինված պայքարի եղանակների, զորքերի ղեկավարման մեթոդների և դրանց ուսուցման կազմակերպական ձևերի մեջ, նրանց բարոյահոգեբանական նախապատրաստման գործում: Ներկայումս առաջնակարգ նշանակություն է ստացել ստրատեգիական նշանակման հրթիռային զորքերի զարգացումը, որոնք կազմում են սովետական բանակի հիմնական հարվածային ուժը:

Կուսակցությունն անշեղորեն կատարում է լենինյան պատգամը, որ մենք մեր «...բանակը, ինչպես էլ լինի, պահպանենք իր ամբողջ մարտական պատ-



րաստականության մեջ և ուժեղացնենք նրա մարտունակությունը» (Երկեր, հ. 31, էջ 617): ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն և սովետական կառավարությունը, գնահատելով իրադրությունը և հենվելով ժամանակակից պայմաններում զինված պայքարի օբյեկտիվ օրենքների վրա, հետևողականորեն լուծում են երկրի պաշտպանունակության, զինված ուժերի մարտական հզորության հետագա ամրապնդման խնդիրները: «Մեր կուսակցությունը,— ասվում է ՍՄԿԿ XXIII համագումարին Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,—իր պարտքը տեսնում է այն բանում, որ պահպանի սովետական ժողովրդի բարձր զգոնությունը խաղաղության թշնամիների դավերի նկատմամբ ու ամեն ինչ անում է, որպեսզի ագրեսորները, եթե նրանք կփորձեն խախտել խաղաղությունը, մեզ երբեք հանկարծակիի չբերեն, որպեսզի նրանք անհապաղ խորտակիչ հակահարված ստանան» (ՍՄԿԿ XXIII համագումարի նյութերը, էջ 44):

Մեր հայրենիքի պաշտպանունակության ամրապնդման համար ՍՄԿԿ գործունեության հիմնական ուղղություններն են. երկրի էկոնոմիկայի անշեղ վերելքի ապահովումը, բանվորագյուղացիական դաշինքի, ժողովուրդների բարեկամության, հասարակության բարոյաքաղաքական միասնության հետագա ամրապնդումը, զինված ուժերի հզորության և մշտական մարտական պատրաստության հետագա բարձրացումը:

Կուսակցության հատուկ հոգատարության առարկա են ռազմական կադրերի պատրաստման ու տեղաբաշխման հետագա բարելավումը, բանակում ու նավատորմում կուսակցական-քաղաքական աշխատանքի կատարելագործումը, զինված ուժերի կոմունիստական դաստիարակության, գաղափարական ու քաղաքական կոփվածության ուժեղացումը, ռազմական կարգապահության և միանձնյա հրամանատարության անշեղ ամրապնդումը: Այդ խնդիրների լուծման համար մեծ է բանակային կուսակցական կազմակերպությունների, կոմունիստների ու կոմերիտականների դերը, որոնք ներկայումս կազմում են զինված ուժերի անձնակազմի 80 տոկոսից ավելին և սպաների, գեներալների ու ծովակալների՝ մոտ 93 տոկոսը:

ՍՍՀՄ զինված ուժերը, շրջապատված համաժողովրդական սիրով ու կուսակցության մշտական հոգատարությամբ, շարունակում են հաջողությամբ կատարել իրենց հայրենասիրական ու ինտերնացիոնալ պարտքը: Սովետական բանակը, սոցիալիստական համագործակցության երկրների բանակների հետ մեկտեղ, դարձել է խաղաղության հզոր պատվար՝ սանձելու իմպերիալիզմի ռազմական ավանտյուրաները:

Սոցիալիստական հայրենիքի ռազմական հզորության նախադրյալներից են քաղաքացիական պաշտպանության սիստեմում երկրի բնակչության ներգրավումը, երիտասարդության մինչզորակոչային նախապատրաստությունը, ռազմահայրենասիրական, մարտական հեղափոխական տրադիցիաների դաստիարակության հարցերը: Այդ խնդիրների իրականացման գործում կարևոր դեր են խաղում ԴՕՍԱԱՖ-ը, լենինյան կոմերիտմիությունը, սպորտային ընկերությունները և հասարակական մյուս կազմակերպությունները:

Անհրաժեշտ է, որ կուսակցական կազմակերպությունները աշխատավորների շրջանում ուժեղացնեն ռազմահայրենասիրական աշխատանքը, մեծ ուշադրություն դարձնեն երիտասարդության ռազմական ու ռազմասպորտային պատրաստմանը:

Սոցիալիզմի նվաճումների պաշտպանության համար սովետական բանակի հետ ուս-ուսի կանգնած են Վարշավայի պայմանագրի բոլոր երկրների

զինված ուժերը, որոնց միջև ավելի ու ավելի են ամրապնդվում բարեկամության ու մարտական եղբայրության հարաբերությունները: Սոցիալիստական պետությունները հետևողականորեն կիրառում են լենինյան խաղաղասիրական քաղաքականությունը: Նրանց զինված ուժերը ոչ ոքի վրա հարձակվելու մտադրություն չունեն: Բայց միևնույն ժամանակ նրանք ոչ ոքի թույլ չեն տա ոտնձգություն անել եղբայրական ժողովուրդների սոցիալիստական նվաճումների վրա: Սոցիալիզմի պաշտպանության գործում դրա վառ հաստատումն էր նրանց եղբայրական օգնությունը Չեխոսլովակիայի ժողովուրդներին:

* * *

Սովետական պետության ավելի քան կեսդարյա փորձը հաստատում է սոցիալիստական հայրենիքի պաշտպանության լենինյան գաղափարների կենսական ուժը: ՍՄԿԿ, զինված լենինյան ռազմատեսական ժառանգությամբ, հաջողությամբ է լուծում ռազմական շինարարության տեսական ու պրակտիկ պրոբլեմները: Լենինյան գաղափարների խոր ուսումնասիրությունը և ստեղծագործական կիրառումն ապահովում են ՍՍՀՄ պաշտպանունակության հետագա ամրապնդման խնդիրների գիտական հիմնավորումը:

Պատերազմի ու բանակի հարցերի վերաբերյալ լենինյան գաղափարները կոմունիստական ու բանվորական կուսակցությունների ծրագրային դրույթներն են: Այն սոցիալիստական պետությունների ռազմական քաղաքականության, նրանց բանակների պաշտպանական հզորության ու ինտերնացիոնալ միասնության ամրապնդման գիտական հիմքն է:

Սոցիալիստական նվաճումների պաշտպանության համար,— ասում է Լ. Բրեժնևը կոմունիստական ու բանվորական կուսակցությունների Մոսկվայի միջազգային խորհրդակցությունում արտասանած ելույթում,— հարկավոր է նաև ուժ, ընդ որում՝ ոչ փոքր ուժ: Ահա թե ինչու ՍՄԿԿ-ն, ինչպես և եղբայրական մյուս կուսակցությունները, շարունակ հոգ է տանում սոցիալիստական պետությունների պաշտպանական հզորության անշեղ աճի, պաշտպանության բնագավառում նրանց սերտ համագործակցության մասին: Այս տարի կարևոր որոշումներ ընդունվեցին Վարշավայի պայմանագրի զինված ուժերի կառավարումը կատարելագործելու ուղղությամբ: Սիստեմատիկաբար կատարելագործվում է դաշնակից երկրների զինված ուժերի փոխգործողությունը, մեծանում է նրանց մարտական վարպետությունը: Վարշավայի պայմանագրի երկրների և սոցիալիստական մյուս պետությունների բանակները զինվում են նորագույն ռազմական տեխնիկայով:

Սովետական Միության զինված ուժերը, հավատարիմ սոցիալիստական հայրենիքի պաշտպանության լենինյան ուսմունքին, անսասան կանգնած են սոցիալիզմի, խաղաղության և ժողովուրդների ազատության պաշտպանության դիրքերում:



Ա. Պ. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ

# ԿԱԴՐԵՐԻ ՊՐՈԲԼԵՄԻ ԼՈՒԾՈՒՄԸ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԺԱՄԱՆԱԿ

Ռուսաստանում, Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից և պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումից հետո, բանվոր դասակարգի հերթական խնդիրը նոր հասարակարգի կառուցումն էր։ Բուրժուազիայի նկատմամբ, բացի քաղաքական հաղթանակից, պահանջվում էր նաև տնտեսական հաղթանակ։ Դա դժվարին խնդիր էր, մանավանդ որ սովետական իշխանությունը ցարիզմից ժառանգել էր տնտեսապես հետամնաց երկիր, որի էկոնոմիկան իմպերիալիստական և քաղաքացիական պատերազմների հետևանքով քայքայված էր ու կազմալուծված։

Երկրի էկոնոմիկան այդ վիճակից դուրս բերելու համար անհրաժեշտ էր վերականգնել արդյունաբերությունը և գյուղատնտեսությունը, ձեռնամուխ լինել սոցիալիզմի կառուցմանը։ Պահանջվում էր մեծ ջանք ու եռանդ գործադրել՝ մոբիլիզացնելու նյութական և մարդկային ռեսուրսները, մասսաների ստեղծագործական ակտիվությունը։ Գլխավորն աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու խնդիրն էր։ «Կապիտալիզմը,— նշել է Վ. Ի. Լենինը,— կարող է վերջնականապես հաղթվել և կհաղթվի նրանով, որ սոցիալիզմն ստեղծում է նոր, շատ ավելի բարձր՝ աշխատանքի արտադրողականություն» (Երկեր, հ. 29, էջ 523)։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում գլխավոր դերը մարդկանցն է։ Նրանք են արտադրապրոցեսում շարժման մեջ դնում աշխատամիջոցները՝ նյութական բարիքներ ստեղծելու համար:

Սովետական իշխանության առաջին տարիներին ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման համար պահանջվում էին բազմաթիվ որակյալ կադրեր։ Իմպերիալիստական և քաղաքացիական պատերազմների տարիներին որակյալ բանվորական կադրերի զգալի մասը բանակ կանչվեց ու կործանվեց։ Առավել վատ էր վիճակն արտադրության մասնագետների, ինժեներա-տեխնիկական կադրերի բնագավառում։ Արտադրության տարբեր ճյուղերում չկային սեփական մասնագետներ։ Բացի դրանից, տնտեսական վիթխարի շինարա-

րությունը պահանջում էր ղեկավար տնտեսական կադրեր՝ կազմակերպիչներ, որոնք կարողանային գլխավորել բանվորների և գյուղացիների ստեղծագործական ջանքերը։

Այսպիսով, սովետական իշխանության հաստատումից հետո դժվարագույն խնդիրներից մեկը կադրերի պատրաստման պրոբլեմն էր։ Այդ պրոբլեմի լուծման համար կոմունիստական կուսակցությունը մշակեց համապատասխան միջոցառումներ։ Սոցիալիստական շինարարության բոլոր ասպարեզների համար բարձր և միջին որակավորման մասնագետների ուսուցմանը մեծ չափով օգնում էին բարձրագույն և միջնակարգ մասնագիտական նորաստեղծ ուսումնական հաստատությունները, որակավորված և բանիմաց պրակտիկ աշխատողները, ինչպես նաև սովետական իշխանությանը համակրող հին մասնագետները։ Մասսայական արտադրական կադրերը պատրաստվում էին ֆաբրիկա-գործարանային ուսուցման, տեխնիկական ուսումնարաններում, գյուղատնտեսական դպրոցներում, կարճատև դասընթացներում, ինչպես և ձեռնարկություններում։ Կուսակցությունն ժողովրդական տնտեսության և կուլտուրայի բոլոր ասպարեզներում, ինչպես և բանակում օգտագործում էր հին մասնագետներին։ Սակայն կուսակցության մեջ կային մարդիկ, որոնք ժխտում էին հին մասնագետների օգտագործման անհրաժեշտությունը։ Լենինը սուր քննադատում էր նրանց, ովքեր, ինչպես հին սոցիալ-ուտոպիստները, գտնում էին, թե սկզբում անհրաժեշտ է դաստիարակել լավ, մաքուր, հիանալի կրթված մարդիկ, իսկ հետո նրանց օգնությամբ սոցիալիզմ կառուցել։

Կուսակցության VIII համագումարը պարզ և հստակ ցուցում տվեց ժողովրդական տնտեսության մեջ հին մասնագետների օգտագործման վերաբերյալ, պահանջեց նրանց նկատմամբ ցուցաբերել հատուկ վերաբերմունք և զգոնություն։ Մասնագետների այն մասի նկատմամբ, որը թշնամաբար էր տրամադրված և պայքարել էր սովետական իշխանության դեմ, կուսակցությունը և կառավարությունն ստիպված էին ուժ և հարկադրանք գործադրել։ Հին մասնագետների օգտագործումը բարդ, հնի և նորի միջև մղվող պայքարի պրոցես էր։ Լենինը պրոլետարիատի դիկտատուրայի պայմաններում դասակարգային պայքարի ձևերից մեկն է համարում այդ։

Կադրերի պրոբլեմի լուծման հիմնական օղակը բանվորներից, գյուղացիներից, ծառայողներից՝ սոցիալիզմի մեծ գործին նվիրված նոր մասնագետների պատրաստումն էր։ Սոցիալիզմի կառուցումը պահանջում էր արագ թափով ստեղծել նոր մասնագետ կադրեր։ Այդ հարցը հատկապես սրվեց երկրի ինդուստրացման պլանի իրականացման ընթացքում։

Կուսակցությունը վճռական քայլերի դիմեց՝ վերացնելու այն անհամապատասխանությունը, որ կար, մի կողմից՝ վերակառուցվող արդյունաբերության համար որակյալ մասնագետների պահանջի, մյուս կողմից՝ բուհերի ու տեխնիկումների միջոցով նոր մասնագետների պատրաստման վիճակի միջև։ Այդ կապակցությամբ հատկապես կարևոր նշանակություն ունեցան ՀամԿ(բ)Կ Կենտկոմի պլենումի որոշումները՝ «Շախտիի գործը և տնտեսական շինարարության թերությունների դեմ պայքարելու պրակտիկ խնդիրները», «Նոր մասնագետների պատրաստումը բարելավելու մասին», «Ժողովրդական տնտեսության կադրերի մասին» (տե՛ս ՍՄԿԿ բանաձևերում..., II մաս, 1955, էջ 633, 655, 799)։

Սխալ կլինի կարծել, թե կադրերի պատրաստման պրոբլեմի լուծումը ըն-



թացել է հարթ, առանց դժվարությունների, ներկուսակցական պայքարի։ Այս հարցի կապակցությամբ աջ օպորտունիստները նույնպես դուրս եկան մեր կուսակցության գծի դեմ։ Նրանք, արհամարհելով մասնագետների պատրաստման պրոբլեմի կարևորությունը, փաստորեն, ժխտում էին նոր պրոլետարական մասնագետների արագ պատրաստման նշանակությունը, անտեսում հին մասնագետների քաղաքական շերտավորումը, այն պայքարը, որ դասակարգային թշնամին մղում էր սոցիալիզմի դեմ։

Կուսակցության որոշումները նպատակ ունեին ստեղծել անհրաժեշտ թվով նոր կադրեր, որոնք ընդունակ լինեին ղեկավարելու արտադրությունը և կատարելու գիտահետազոտական աշխատանք, գլխավորելու լայն մասսաների արտադրական ակտիվությունը։ Նոր կադրերը պետք է լինեին հասարակական-քաղաքական ակտիվ գործիչներ և ոչ հասարակության պասսիվ, չեզոք տարրեր։ Կոմունիստական կուսակցությունը ձգտում էր ինժեներներին, տեխնիկներին ներգրավել քաղաքականության մեջ. չէ՛ որ մեզ հարկավոր էին համոզված, քաղաքականապես հասուն, գաղափարապես զինված, կուսակցության նպատակն ու քաղաքականությունը հասկացող և դրանց իրականացման համար ակտիվ մարտնչող կադրեր։

Կուսակցության առաջադրած խնդիրների հիման վրա վերակառուցվեց բարձրագույն ուսումնական հաստատությունների ու տեխնիկումների աշխատանքը, ընդարձակվեց դրանց ցանցը, բանվոր և գյուղացի շատ երիտասարդներ ընդգրկվեցին ուսուցման մեջ։ Փոխվեց ուսանողության սոցիալական կազմը, բարձրացավ ուսանողների տեսական ու պրակտիկ պարապմունքների որակը, բարելավվեցին բարձրագույն դպրոցների գործի կազմակերպումն ու կառավարումը։

Երկրի ինդուստրացման տարիներին, երբ առավել սրությամբ դրվեց արտադրա-տեխնիկական կադրերի պատրաստման հարցը, կուսակցությունը մի շարք միջոցներ ձեռնարկեց, որոնք հնարավորություն ընձեռեցին բարձրացնելու ղեկավար աշխատանք վարող պրակտիկների որակավորումը, նրանցից պատրաստելու արտադրության բարձրորակ մասնագետներ։ 1929 թ. նոյեմբերին ՀամԿ(բ)Կ Կենտրոնական կոմիտեի որոշմամբ ստեղծվեցին արտադրությունից չկտրված բարձրագույն ուսումնական հաստատությունների լայն ցանց, վերապատրաստման դասընթացներ, արդյունաբերական ակադեմիաներ և այլն։ Կուսակցության և կառավարության միջոցառումների իրականացման շնորհիվ, 1932 թ. հունվարի 1-ի դրությամբ, միայն ԺՏԳԽ սիստեմի տարբեր դասընթացներում սովորում էին 700—800 հազար հոգի։ Առաջին և երկրորդ հնգամյակների տարիներին բարձրագույն ուսումնական հաստատություններում, տեխնիկումներում, բանֆակներում աճեց ինչպես սովորողների, այնպես էլ գիտահետազոտական ինստիտուտների և գիտաշխատողների թիվը։ 1929 թ. բարձրագույն տեխնիկական ուսումնական հաստատությունները տվեցին 11000, իսկ 1937 թ.՝ 35000 մասնագետ։

Կուսակցության XVIII համագումարը, ամփոփելով սոցիալիզմի կառուցման գործում ձեռք բերված մեծ հաջողությունները, նշեց, որ գլխավոր հաջողություններից մեկը կարճ ժամանակում բազմահազար նոր կադրերի, արդյունաբերության նոր ղեկավարների, ինժեներների ու տեխնիկների պատրաստումն ու դաստիարակումն էր։ Սոցիալիզմի շինարարության ոչ մի մարզում այնպիսի արագ տեմպեր չեն եղել, ինչպես, տեխնիկական կադրերի պատրաստման բնագավառում։

Սովետական ինտելիգենցիայի կազմում տեղի ունեցան քանակական և որակական փոփոխություններ։ 1936 թ. ինտելիգենցիայի մոտ 90 տոկոսը ուներ աշխատավորական ծագում։

Չնայած ֆաբրիկա-գործարանային ուսուցման դպրոցների և տեխմինիմումի լայն կիրառման, մեծ նշանակություն ուներ (և ունի) արտադրության մեջ բանվորական կադրերի պատրաստումը անհատական ու բրիգադային ուսուցման միջոցով, որի ընթացքում առավել որակյալ բանվորները, վարպետները արտադրապրոցեսում մասնագիտություն են սովորեցնում նոր բանվորների։

Կադրերի տեխնիկական ուսուցման դերը մեծացավ հատկապես արդյունաբերության և գյուղատնտեսության վերակառուցումն ավարտելու տարիներին, երբ ժողովրդական տնտեսության մեջ կատարվեց տեխնիկական հեղափոխություն. այն պահանջում էր ունենալ տեխնիկապես գրագետ բազմաթիվ մասնագետներ, որոնք ի վիճակի լինեն օգտագործելու նոր, ժամանակակից տեխնիկան։ Այդ կապակցությամբ 1935 թ. «Կադրերն են վճռում ամեն ինչ» կուսակցության լոզունգը լայն արձագանք ստացավ ժողովրդական տնտեսության միլիոնավոր աշխատողների շրջանում։ Բանվորներն ու ծառայողները լայն շարժում ծավալեցին նոր տեխնիկային խորապես տիրապետելու համար։ Դրա ցայտուն արտահայտությունն էր սոցիալիստական մրցության նոր էտապի՝ ստախանովյան շարժման ծագումն ու արագ ծավալումը։ Տեխնիկապես գրագետ կադրերի պատրաստման գործում կարևոր նշանակություն ունեցավ ՀամԿ(բ)Կ Կենտրոնական կոմիտեի դեկտեմբերյան (1935 թ.) պլենումի որոշումը՝ «Արդյունաբերության ու տրանսպորտի հարցերը՝ կապված ստախանովյան շարժման հետ» (տե՛ս ՍՄԿԿ բանաձևերում..., III մաս, 1955, էջ 325)։ Կազմակերպվեցին տեխնիկական մինիմումի առաջին աստիճանի և բարձր տիպի դասընթացներ։ Կուսակցության և կառավարության միջոցառումների շնորհիվ արտադրությունն ապահովվեց որակյալ կադրերով։

Կուսակցությունն ու կառավարությունը հոգում էին նաև կոլտնտեսային կադրերի պատրաստման մասին։ Տնտեսության նոր սոցիալիստական ձևը պահանջում էր ունենալ ընդունակ, գյուղատնտեսական արտելի աշխատանքը կազմակերպող կադրեր։ Կոլտնտեսականները՝ երեկվա մենատնտեսները, կոլտնտեսություն ղեկավարելու փորձ չունեին։ Կուսակցությունը նրանց օգնելու նպատակով քաղաքից գյուղ ուղարկեց հազարավոր կոմունիստների և առաջավոր բանվորների (քսանհինգհազարականներ)։ Բացի այդ, նա ձեռնամուխ եղավ կոլտնտեսային կադրերի պատրաստմանը։ Չէ՛ որ գյուղատնտեսական արտելին անհրաժեշտ էին նախագահներ, բրիգադավարներ, ֆերմայի վարիչներ, ՄՏԿ-ների մեխանիզատորներ, էլեկտրիկներ, սելեկցիոներներ, մելիորատորներ, խրճիթավարներ, կինոմեխանիկներ և այլն։

Կոլտնտեսային մասսայական կադրերի պատրաստման հիմնական օղակները շրջանային կոլտնտեսային դպրոցները և կոլտնտեսական մասսայական կադրերի պատրաստման դասընթացներն էին։ Ուսուցման այդ ձևերի միջոցով առաջին և երկրորդ հնգամյակների տարիներին պատրաստվեցին կոլտնտեսային բազմաթիվ կադրեր։

Հնգամյակի ընթացքում կատարելագործվեցին ժողովրդական տնտեսության կադրերի պատրաստման ձևերն ու մեթոդները։ Արդեն 1940 թ. կուսակցության և կառավարության որոշմամբ ստեղծվեց պետական աշխատանքային ռեզերվների սիստեմը։ Աշխատանքային ռեզերվների ուսումնարաններն



ու դպրոցները ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառների համար միլիոնավոր որակյալ կադրեր պատրաստեցին։

Այդ գործում համապետական միջոցառումներից բացի, կուսակցությունը հատուկ ուշադրություն էր նվիրում ազգային կադրերի պատրաստմանն ու աճին, որը բխում էր մեր կուսակցության ազգային քաղաքականության էությունից։

Հանրապետությունների տնտեսական-կուլտուրական վերելքի և ազգային կադրերի պատրաստման գործում կարևորագույն նշանակություն ունեցան կուսակցության X և XII համագումարների որոշումները։

Նախապատերազմյան հնգամյակների տարիներին ազգային հանրապետություններում ու մարզերում հաղթահարվեց տնտեսական և կուլտուրական հետամնացությունը, ժողովրդական տնտեսության և կուլտուրայի բոլոր ասպարեզներում ստեղծվեցին ազգային կադրեր, ՍՍՀՄ ազգերի միջև վերացավ փաստական անհավասարությունը։

Արդի փուլում, երբ մեր երկրում իրականացվում է անցումը սոցիալիզմից կոմունիզմին, ժողովրդական տնտեսության և կուլտուրայի բոլոր ասպարեզներում կադրերի պատրաստման խնդիրն առավել կարևոր է դարձել։ Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման պրոցեսում գիտատեխնիկական նվաճումների իրագործումը աշխատողներից պահանջում է տեխնիկական բարձր գիտելիքներ։ Դրա համար պարտադիր է միջնակարգ կրթությունը, կատարելագործվում են պրոֆտեխնիկական կրթության սիստեմը, արտադրական ուսուցումը։ Հնարավորություն է ընձեռվում, որպեսզի արտադրության աշխատողների վարպետությունը զուգակցվի նրանց հանրակրթական, ինժեներա-տեխնիկական, ագրոնոմիական գիտելիքների բարձրացման հետ։ Այդ կապակցությամբ ՍՄԿԿ XXIII համագումարին տված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ նշված է. «Շատ կարևոր է, անշուշտ, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը, արտադրական բոլոր տեղամասերը նոր տեխնիկայով զինելը։ Պակաս կարևոր չէ որակյալ կադրեր ունենալը, որոնք ընդունակ լինեն այդ տեխնիկան օգտագործել լրիվ չափով» (ՍՄԿԿ XXIII համագումարի նյութերը, էջ 69—70)։

Սովետական Միությունում վաղուց չկան անգրագետ բանվորներ։ Կուսակցության XXIII համագումարում բերված տվյալները ցույց են տալիս, որ վերջին յոթ տարիներին արդյունաբերական բանվորների շրջանում միջնակարգ կրթություն ունեցողները կազմում են 45—58 տոկոսը, իսկ կոլտնտեսականների շրջանում՝ 23—31։ Այժմ արդյունաբերության առաջատար ճյուղերում գրեթե բոլոր բանվորներն ունեն յոթնամյա կրթություն։ Ընթացիկ հնգամյակում հիմնականում կավարտվի երիտասարդության ընդհանուր միջնակարգ կրթության սիստեմում ընդգրկելու գործը։ Հայկական ՍՍՀ մասսայական դպրոցում սովորողների թիվը մինչև 1970 թ. կաճի ավելի քան 20 տոկոսով, իսկ 1,6 անգամ կավելանա բանվոր և գյուղական երիտասարդության դպրոցներում սովորողների թիվը։

ՍՄԿԿ XXIII համագումարը պատշաճ գնահատական տվեց պրոֆտեխնիկական կրթության սիստեմի գործունեությանը և դրա հետագա զարգացմանն ու կատարելագործմանը։ Հայաստանում առաջին ֆաբգործուսը բացվեց 1926 թ., Լենինականի նորակառույց տեքստիլ կոմբինատում։ Այն մինչև 1937 թ. տեքստիլ արդյունաբերությանը տվել է ավելի քան 10 հազար որակյալ բանվոր։ Հայաստանի տեխնիկական և պրոֆտեխնիկական ուսումնական

հաստատությունները 28 տարիների ընթացքում հանրապետության արդյունաբերությանն ու գյուղատնտեսությանն են տվել ավելի քան 85 հազար որակյալ բանվոր։ Այժմ Հայաստանում կան 45 պրոֆտեխնիկական և տեխնիկական ուսումնարան, որտեղ 150 մասնագիտությունների գծով տարեկան սովորում են ավելի քան 20 հազար պատանիներ ու աղջիկներ։

Հանրապետության արդյունաբերության համար, ելնելով հարաճուն պահանջներից, բազմաթիվ մասնագիտությունների գծով որակյալ բանվորական կադրեր են պատրաստվելու։ Ընթացիկ հնգամյակում հանրապետության պրոֆտեխնիկական ուսումնարանների թիվը կհասնի 50-ի, որտեղ տարեկան կսովորեն ավելի քան 25 հազար պատանիներ ու աղջիկներ։

ՍՍՀՄ պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանները 1970 թ. կընդունվեն 1700—1800 հազար պատանիներ ու աղջիկներ. դա անցյալ հնգամյակի տարեկան միջին ընդունելությունից 1,7—1,8 անգամ ավելի է։ Բացի դրանից, Միության մասշտաբով հնգամյակում կպատրաստվեն 7 մլն բարձրագույն և միջնակարգ կրթությամբ մասնագետ, իսկ Հայաստանում, 1961—1965 թթ. համեմատությամբ՝ 1,7 անգամ ավելի։

Ժողովրդական տնտեսության կադրերի պատրաստման գործում Սովետական Միության կոմունիստական կուսակցության փորձը կարևոր նշանակություն ունի ոչ միայն մեր երկրում կոմունիստական հասարակության կառուցման, այլև սոցիալիզմ կառուցող երկրների համար։

Սովետական Միության և մյուս սոցիալիստական երկրների միջև ստեղծված փոխօգնության, փորձի փոխանակման պրակտիկան նպաստում է այդ երկրներում լավ հիմքերի վրա դնելու ժողովրդական տնտեսության կադրերի պատրաստման գործը։ Այդ երկրներից եկող բազմաթիվ պատվիրակությունները տեսնում են սովետական արդյունաբերության նվաճումները, ծանոթանում կադրերի պատրաստման պրակտիկայի և արտադրության առաջավորների փորձի հետ, յուրացնում այն ամենը, ինչ օգտակար է արտադրության բարձրացման և որակյալ կադրերի պատրաստման գործին։ Սոցիալիստական երկրների արտադրության առաջավորների և կադրերի պատրաստման փորձը օգտագործում են նաև սովետական արդյունաբերության աշխատողները։ Առաջավոր փորձի փոխանակումը հնարավորություն է տալիս բարձրացնելու բանվորների տեխնիկական որակավորումը։ Իսկ այժմ, երբ արագ թափով ծավալվում է տեխնիկական առաջադիմությունը, սոցիալիստական երկրների միջև տեխնիկական նվաճումների փոխադարձ ինֆորմացիան, ինչպես և արտադրական որակյալ կադրերի պատրաստման փորձի փոխանակումը շատ կարևոր են աշխատանքի արտադրողականության բարձրացման համար։

Այսպիսով, պատմական փորձը ցույց է տալիս, որ պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումից հետո յուրաքանչյուր երկրում, կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջանում, երբ լուծվում են սոցիալիզմի կառուցման արմատական խնդիրները, կարևոր նշանակություն են ստանում կադրերի պրոբլեմի լուծումը, հին կադրերի օգտագործման և նոր կադրերի պատրաստման ճիշտ քաղաքականության մշակումն ու կիրառումը, առանց որի անհնար է սոցիալիզմի հաղթանակը։



Խ. Պ. ՄԻՐԻՄԱՆՅԱՆ

Պրոֆեսոր

# ՊԱՀՊԱՆԵՆՔ ԲՆՈՒԹՅԱՆ ՀԱՐՍՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Հայաստանը բացառիկ լեռնային երկիր է՝ իր ուրույն, խայտաբղետ կառուցվածքով. Նրա խոր ձորերն ու անտառները, ալպյան արոտները, ձյունապատ լեռնագագաթներն ու բերրի հովիտները, ջրվեժները, լեռնային վտակներն ու լճակները, նրա հողածածկույթն ու կենդանական աշխարհը, հանքային ջրերն ու կլիմայական ռեսուրսները, հարուստ ընդերքը, բնական հուշարձաններն ու տեսարժան վայրերը կազմում են երկրի բարդ ու բազմազան լեռնային լանդշաֆտը։ Հայրենի բնության, նրա տնտեսական ռեսուրսների ու հարստությունների այս կոմպլեքսը ժողովրդի նյութական բարեկեցության, աշխատավորության կուլտուրական կյանքի ու էսթետիկական հաճույքի աղբյուրն է։

Առատ ու բազմազան են լեռնային լանդշաֆտների հարստությունները, բայց ոչ անսահման։ Դրանք հավերժ ծառայում են մարդուն միայն այն ժամանակ, երբ վերջինս, հաշվի առնելով բնության ու մարդկային հասարակության բարդ փոխհարաբերությունը, այդ բարիքներից խելացի է օգտվում, չի խախտում բնության օրենքները, չի աղարտում նրա բնական վերականգնման ունակությունները։

Բնության ու մարդկային հասարակության միասնության գաղափարը, բնական լանդշաֆտների առանձին տարրերի փոխհարաբերություններն ու բարդ կապը մարդուց պահանջում են բնական հարստությունների շահագործման այնպիսի ձև ու չափ, որ արդյունաբերության ու քաղաքային տնտեսության բուռն վերելքին զուգընթաց (որը պահանջում է ավելի ու ավելի մեծ քանակությամբ նյութական ռեսուրսներ), բնությունը ոչ թե աղքատանա, այլ ավելի հարստանա։

Յուրաքանչյուր սերունդ պետք է իր ժառանգներին թողնի ավելի հարուստ բնություն, քան ստացել է իր նախնիներից,— ասել է Մարքսը։

Մեր լեռնալանջերի հողածածկույթը, անտառներն ու մարգագետինները, կենդանական աշխարհն ու ջրային ռեսուրսները, լեռնային լանդշաֆտների կառուցվածքը, կլիմայական պայմանները միասնական, անբաժան բնության ամբողջական շղթայի առանձին օղակներն են, և մարդու չմտածված, ոչ-խելացի վերաբերմունքը, մարդու վնասաբեր ազդեցությունը լեռնային լանդշաֆ-

ների առանձին տարրերի վրա, անխուսափելիորեն հանգեցնում են ողջ շղթայի խախտման, փոփոխման. ահա ինչու Վլադիմիր Իլյիչը գտնում էր, որ բնական հարստությունները պետք է օգտագործել կոմպլեքս ձևով, հաշվի առնելով ո՛չ թե որևէ գերատեսչության, այլ ամբողջ ժողովրդական տնտեսության շահերը, որովհետև բնության հավասարակշռության խախտումը կարող է ունենալ ծանր, անգամ աղետաբեր հետևանքներ։ Այս առումով հիշենք, ինչպես 1950-ական թվականներին Հայաստանի, Ադրբեջանի, Վրաստանի լեռնային արոտների որոշ մասը, իբրև թե այդ հանրապետությունները սեփական հացով ապահովելու նպատակով, վարեցին։ Հետևանքը եղավ այն, որ այդ հողերը, զրկվելով խիտ բուսածածկույթից, քայքայվեցին, ողողվեցին, ջրատարվեցին. լերկ քարերը դուրս եկան, ձորակներ առաջացան. զրկվեցինք և՛ արոտներից, և՛ հողից, իսկ հաց այդպես էլ չստացանք։

Անշուշտ, այդ չի նշանակում, թե պետք է անտառը չկտրել, լեռներում հողը չվարել, որս չանել։ Էականն այստեղ այն է, որ մարդու ազդեցությունը լանդշաֆտների, դրանց բնական հարստությունների վրա պետք է լինի գիտականորեն հիմնավորված ու պլանավորված, որպեսզի տնտեսական շահագործման ընթացքում ապահովվի նրա վերարտադրությունը։ Անտառը կտրելու հետ մեկտեղ պետք է անտառապատել նոր տարածություններ, թռչուն կամ գազան որսալով պետք է ապահովել նրանց բազմացումը և այլն։

Մարդու և բնության բարդ ու բազմակողմանի փոխհարաբերությունը մեր օրերում դարձել է տնտեսական, սոցիալական ամենահրատապ խնդիրներից մեկը։ Այդ բացատրվում է նրանով, որ արդյունաբերության ու տեխնիկայի հզոր վերելքի պայմաններում վիթխարի չափերի է հասնում մարդու և բնության փոխազդեցությունը։

Սովետական իշխանության տարիներին մեր լեռնալանջերում տնկվել են նոր անտառներ, ստեղծվել կանաչապատ զանգվածներ, ոռոգման շնորհիվ անջրդի նոր տարածություններ ծածկվել են կուլտուրական բույսերով։ Սակայն լեռնային լանդշաֆտների բնական հարստությունների պահպանության. խելացի օգտագործման ու վերարտադրության ապահովման ասպարեզում դեռևս կան շատ թերություններ, չլուծված խնդիրներ։

Այս առումով անդրադառնանք մի քանի փոփոխությունների, որոնց ենթարկվում են Հայաստանի լանդշաֆտները՝ մարդու ոչ ռացիոնալ տնտեսավարության հետևանքով։ Ինչպես հայտնի է, Եղեգնաձորը, Սևանի ավազանը, Հրազդանի շրջանը, Փամբակի հովիտը ծածկված են եղել խիտ ու հարուստ անտառներով. հսկա գազաններ են արտահանվել պատմական Հայաստանի այն շրջաններից, որտեղ այսօր բոլորովին անտառ չկա։ Հայաստանի բարձր լեռնային շրջանները, մասնավորապես, Գեղամա լեռները, ծածկված են եղել ավելի ճոխ ու հարուստ բուսականությամբ. այդ արոտներն Ստրաբոնը դասել է հին աշխարհի Միդիայի հռչակավոր լեռնային արոտների շարքին։ Արագածի լանջերին այսօր էլ կարելի է հանդիպել չորացած աղբյուրների ու առվափոսերի, որոնք լուռ վկաներն են անցյալում այստեղ հոսող կարկաչուն առվակների, ջրառատ աղբյուրների։

Փոխվել է և մեր կլիման։ Այսպես՝ սրանից 100 տարի առաջ՝ 1870 թ., Շիրակի դաշտում տարեկան միջին ջերմաստիճանը եղել է 4,5°, 1920 թ.՝ 5,2°. իսկ այժմ 6-ից բարձր է։ Կամո քաղաքում 1870 թ. տեղացել են միջին հաշվով 471 մմ անձրև ու ձյուն, 1920 թ.՝ 451, իսկ վերջին տարիներին՝ մոտ 441 մմ. ինչպես տեսնում ենք, հիշյալ շրջաններում ջերմաստիճանը գնալով



բարձրացել է, իսկ խոնավությունը պակասել. այդ հանգամանքը բացասաբար է անդրադարձել բուսականության վրա՝ սահմանափակելով նրա զարգացման հնարավորությունները։

Մեր լեռնալանջերը հեռավոր անցյալում ծածկված են եղել բերքատու հողերով, իսկ այժմ շատ տեղեր՝ Հրազդանի աջ ափին, Սևանի ավազանում, Փամբակի հովտում, Թալինում ու Եղեգնաձորում, Զանգեզուրում մերկացել են, զրկվել հողածածկույթից։ Այս երևույթների մեծ մասը մարդու ոչ ռացիոնալ տնտեսվարության հետևանք է, որը խիստ վնասում է ժողովրդական տնտեսությանը։

Չպետք է մոռանալ, որ լեռնային լանդշաֆտների բախտը, մարդու ներգործությամբ տեղի ունեցած փոփոխությունների աստիճանն ու ուղղությունը, դրանց հետևանքները, առաջին հերթին, պայմանավորված են անտառների բուսական և այլ ծածկույթի վիճակով, ջրային ռեժիմի փոխհարաբերությամբ։ Ամենքը գիտեն՝ ինչպիսի դեր են խաղում մեր կյանքում բնության հրաշալիքները՝ անտառները։ Անտառը կլանում ու պահում է անձրևի ու ձյան ջուրը և, այդպիսով, բացառում երաշտը մոտակա դաշտերում. այն պաշտպանում է բերքատու հողը էռոզիայից, հանդիսանում մաքուր թթվածին, օզոն արտադրող հզոր գործարան, մեղմացնում ամառվա տապն ու ձմեռվա ցուրտը, մաքրում մթնոլորտը թունավոր գազերից (էլ չենք խոսում նրա էսթետիկական ու կուլտուրական նշանակության մասին)։

Մարդը կացնով, կրակով և գութանով կրճատում է անտառի տարածությունն ու վերածում այն վարելահողի կամ արոտավայրի։ Տնտեսական կարիքները հոգալու նպատակով անտառը հատվում է, առանց հաշվի առնելու բնության օրենքները, անտառի բնական վերարտադրման հնարավորությունները։ Մարդու այդպիսի ներգործության հետևանքով ջրերը նվազում են, աղբյուրները ցամաքում, միջավայրի չորությունն ուժեղանում է, երաշտ առաջանում։

Առանց անտառի անձրևները չեն կլանվի ու պահվի հողի մեջ, դրանք արագությամբ կհոսեն ցած, իրենց հետ տանելով փխրուն հողն ու տիղմը, ցեխն ու քարը, դրանցով լցնելով հարթավայրերի դաշտն ու այգին, հիդրոտեխնիկական կառուցվածքները, ջրամբարները։

Բավական է հիշատակել, որ վերջին մի քանի տասնյակ տարիների ընթացքում մեր հանրապետության սահմանափակ հողային ֆոնդից դուրս է գրվել մոտ 166 հազար հեկտար վարելահող, իսկ այժմ էռոզիայի հետևանքով ամեն տարի կորցնում ենք մոտ 12 մլն տոննա հողային մասսա, որը հավասար է 8 հազար հեկտար մշակվող վարելահողի։ Այս հանգամանքը պետք է լրջորեն անհանգստացնի մեր ղեկավար օրգաններին։ Երբ հատվում է անտառը, զրկվելով սննդից ու պատսպարանից՝ անհետանում են գազաններն ու թռչունները։

Աղտոտվում, թունավորվում են օդն ու ջուրը նաև այն ժամանակ, երբ արդյունաբերական ու քաղաքային տնտեսության ձեռնարկությունները կառուցվում և ապօրինաբար շահագործման են հանձնվում առանց մաքրող սարքավորումների։ Գործարաններից արտազատվող ծծմբային գազը, ազոտի օքսիդը, բրոմի միացությունները, արդյունաբերական փոշին, ծուխը, ավտոտրանսպորտի առաջացրած ածխածնի օքսիդը և թունավոր այլ նյութեր լուրջ հիվանդությունների պատճառ են դառնում (արյան քայքայում, կենտրոնական ներվային համակարգության խախտում, թոքերի չարորակ ուռուցք, խրո-

նիկական բրոնխիտ և այլն)։ Դրանք խիստ վնասում են այգիներն ու անտառները, օգտակար միջատներին ու խոշոր կենդանիներին. արդյունաբերության ու կոմունալ տնտեսության ջրերից աղտոտված գետերում ոչնչանում են ձկները. այս ջրերն անպետք են նաև տնտեսական օգտագործման, անգամ ոռոգման համար։ Մեր լանդշաֆտների այդ կարևոր տարրերի՝ մթնոլորտի օդի ու ջրի աղտոտումը սերտորեն կապված է ժողովրդի առողջության պահպանման հետ և անտարբերությունն այդ խնդրում անհանդուրժելի է (առանձնապես զգալի վնաս են տալիս Կանազը, Կիրովի գործարանը, Ալավերդու պղնձա-քիմիական կոմբինատը, Կիրովականի քիմկոմբինատը, Արարատի ցեմենտի գործարանը, Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատը)։ Չպետք է մոռանալ, որ կանաչածածկ վայրերում արևի էներգիան ծախսվում է հողի խոնավությունը, ջուրը գոլորշիացնելու ճանապարհով, իսկ անհող ու բուսազուրկ լանջերում ջուր չի լինում, և արևի էներգիան բարձրացնում է միջավայրի ջերմաստիճանը, չորացնում շրջապատը։

Մարդու գործունեության հետևանքով առաջացած լանդշաֆտների փոփոխությունները չեն սահմանափակվում անտառների, հողերի, ջրերի, կլիմայական պայմանների փոփոխմամբ։ Անտառի անհետացմամբ փոխվում են նաև միջավայրի կենդանական աշխարհը, թռչունների, սողունների, միկրոօրգանիզմների կազմությունը, ինչպես նաև երկրի կեղևը. լեռնագագաթները քայքայվում են, առաջացած փխրուն զանգվածը հոսող ջրերի հետ իջնում է հովիտները։ Տեղի է ունենում նաև երկրաբանական փոփոխություն. զգալի չափով իջնում են լեռնագագաթները, իսկ հովիտների մակերեսը սիստեմատիկաբար ծածկվելով բերվածքներով, բարձրանում է (այդպես եղավ Ստեփանավանի շրջանի Լեջան սարում)։

Այսպիսով, մարդու նման գործողության հետևանքով լրջորեն խախտվում է մարդու և բնության փոխհարաբերության ներդաշնակությունը։ Վերցնելով բնությունից տնտեսությանն անհրաժեշտ ռեսուրսները, հաճախ չենք մտածում բնության պահպանության մասին, չենք ապահովում նրա բարիքների վերարտադրման հնարավորությունները, խախտում ենք մարքսիստական այն դրույթը, թե բնությունն օգտագործելով ոչ թե պետք է աղքատացնենք այն, այլ հարստացնենք։

1958 թ. մայիսի 14-ին Հայաստանի Գերագույն սովետն իր հատուկ նստաշրջանում քննության առավ այդ հարցը և հրապարակեց բնության պահպանության օրենքը, որով պետական պաշտպանության տակ են առնվում մեր հանրապետության հողերն ու անտառները, արոտներն ու կանաչ տընկարկները, լեռնային հարստությունները, հանքային ջրերը, կենդանական աշխարհն ու ջրային ռեսուրսները, բնության տեսարժան վայրերը, բնական հուշարձանները։ Բնության պահպանության օրենքը դատապարտում է այն բոլոր գործողությունները, որոնք վնաս են հասցնում բնական հարստություններին, խախտում դրանց օգտագործման՝ սահմանված պետական կարգը։ Դրա հետ մեկտեղ այդ օրենքը լուրջ խնդիրներ է դնում բնական ռեսուրսների ավելացման, վերարտադրման, պահպանության ու ռացիոնալ օգտագործման բնագավառում։ Օգտագործելով ժամանակակից գիտությունն ու տեխնիկան, մարդը պետք է ջանա վերացնել, կանխել լանդշաֆտների՝ իր միջամտությամբ հարուցվող բացասական հետևանքները։

Դրա համար անհրաժեշտ է պլանավորել ու գիտականորեն կազմակերպել բնական հարստությունների օգտագործումը՝ ինչպես ժողովրդական տըն-



տեսության կարիքները հոգալու, այնպես էլ բնական ռեսուրսների վերարտադրությունն ապահովելու, դրանց պահպանության ու ռացիոնալ օգտագործման նպատակով։ Այլ կերպ ասած՝ բնության ու մարդկային հասարակության միջև ստեղծել այնպիսի ներդաշնակություն, որը համապատասխանի ժողովրդի, ապագա սերունդների ամենակենսական շահերին։ Հնարավո՞ր է դա արդյոք։

Միացյալ ազգերի կազմակերպության կողմից գումարված գիտական կոնֆերանսը, որ տեղի ունեցավ Փարիզում, այդ հարցին տվեց դրական պատասխան։ Բազմակողմանի քննարկելով և ամենայն լրջությամբ հաշվի առնելով արդի չափազանց տագնապալից դրությունը բնության մեջ, որոշվեց մշակել կոնկրետ միջոցառումներ և անհապաղ անցնել դրանց կենսագործմանը։ Լեռնալանջերի հողերը քայքայումից փրկելու, անպետքացած տարածությունները կրկին պիտանի դարձնելու նպատակով, ամենից առաջ, անհրաժեշտ է մեր լեռնային շրջանների 10°-ից բարձր թեքություն ունեցող տարածությունները վերածել կերի բազայի, գյուղատնտեսությունն այստեղ հիմնովին վերակառուցել՝ կոլտնտեսային ու սովխոզային տնտեսությունները դարձնել անասնապահական և չնչին քանակությամբ հացահատիկի փոխարեն, ստանալ բարձրորակ շվեյցարական պանիր, յուղ, միս, բուրդ, կաշի, ընդարձակել անտառազանգվածները, զարգացնել մեղվաբուծությունը, լեռնային պտղաբուծությունը, որսորդական տնտեսությունը։

Այս առումով հիշենք Լենինի առաջին դեկրետները (1918 թ.), որոնցով նա կորստից փրկեց երիտասարդ Սովետական Ռուսաստանի շատ վայրի թանկարժեք կենդանիներ։

Ժամանակն է, որ մեր անտառներում ու ձորերում կրկին վխտան պախրան, մուֆլոնը և այլ կենդանիներ. բազմացնենք կաքավ, վայրի խոզ, ստեղծենք գազանաբուծական ֆերմաներ, բնությունը վերածենք հսկայական բնական սովխոզի և, որսորդական տնտեսությունը ճիշտ կազմակերպելով, լրացուցիչ մսամթերք տանք ազգաբնակչությանը։ Չէ՞ որ կան երկրներ (օրինակ, Գանան), որտեղ ազգաբնակչության մսի պահանջի 80 տոկոսը բավարարվում է վայրի կենդանիների միջոցով։ Փոքր թեքություններում մեծ արդյունք կտա հակաէռոզային միջոցառումների կիրառումը (հորիզոնական վար, խոր ակոսավորում, խոտախառնուրդներից ու բազմամյա կուլտուրաներից բաղկացած պաշտպանական շերտեր, դարավանդներ և այլն)։

Երևանը, Կիրովականը, Ալավերդին ու արդյունաբերական այլ կենտրոններ թունավոր գազերից, արդյունաբերական փոշուց, ավտոտրանսպորտի առաջացրած թունավոր նյութերից պաշտպանելու նպատակով անհրաժեշտ է դրանք ապահովել թունավոր արտադրանքը կլանող սարքավորումներով, վերածելով այդ նյութերը լրացուցիչ օգտակար հումույթի։ Մեր կարծիքով հնարավոր է քաղաքում կրճատել ավտոբուսային տրանսպորտը և ընդարձակել տրոլեյբուս-տրամվայի ցանցը, քաղաքից հանել դիզելները կամ պատրաստել հատուկ ֆիլտրեր, որոնք տեղադրվելով մեքենայի վրա, կկլանեն ու կչեզոքացնեն ածխածնի օքսիդն ու կապարի թունավոր միացությունները։ Փողոցներն ասֆալտապատելու փոխարեն կարելի է եվրոպական խոշոր քաղաքների օրինակով անցնել բազալտային քարապատման. այն ավելի դիմացկուն է և տասնյակ անգամ էժան։ Արդյունաբերության ու կոմունալ տնտեսության կեղտաջրերը մաքրելու ժամանակակից տեխնիկական միջոցները կարող են պահպանել գետերն ու ջրամբարներն աղտոտումից։ Սակայն մեր արդյունա-

*բերական ձեռնարկությունների որոշ ղեկավարներ պատշաճ պատասխանատվություն ու սրտացավություն հանդես չեն բերում այս խիստ կարևոր գործում։*

*Մեր կարծիքով ճիշտ կլինի փոխել տուգանելու ձևը, և տուգանքը գանձել ձեռնարկության պատասխանատու ղեկավարից. թերևս միայն այդ դեպքում նրանք ջանան ամեն ինչ անել իրենց իսկ խմած ջրի, ներշնչած օդի մաքրության համար։*

*Պետք է արտազատվող թունավոր գազերի, փոշու, ծխի մաքրման ու օգտագործման պլան առաջադրել արդյունաբերական ձեռնարկություններին և դրանց արտադրանքի պլանը կատարված համարել միայն այն դեպքում, երբ գործարանը կատարի նաև իր միջավայրը թունավոր նյութերից մաքրելու և լրացուցիչ հումույթ ստանալու պլանը։*

*Տարօրինակ է, հարկավ, որ մինչև օրս մեր հանրապետությունում չկա պետական մի օրգան, գիտական հիմնարկ, որը ղեկավարի ու կարգավորի բնության հարստությունների պահպանության, վերարտադրության ու ռացիոնալ օգտագործման չափազանց կարևոր գործը։ Մինչդեռ Լիտվայում, Բելոռուսիայում, Ուկրաինայում, Մոլդավիայում, Ադրբեջանում արդեն կազմակերպված են բնության պահպանության պետական կոմիտեներ, որոնք ստանձնել են բնական լանդշաֆտների, բնության հարստությունների պահպանությունը։ Անհասկանալի պատճառներով Հայաստանում ձգձգվում է նման կոմիտեի կազմակերպումը, չնայած նախագիծը վաղուց պատրաստ է։*

*Մեր ասելիքն ուզում ենք վերջացնել Հոկտեմբերյան հեղափոխության 50-ամյակին Լ. Ի. Բրեժնևի արտասանած հետևյալ խոսքերով. «Բնական ռեսուրսների խնայողական, հաշվենկատ օգտագործում, հողի, անտառի, գետերի և օդի մաքրություն, բուսական և կենդանական աշխարհի նկատմամբ հոգատարություն՝ այս ամենը մեր կենսական, կոմունիստական գործն է։ Մենք պետք է պահպանենք ու գեղեցկացնենք հողը՝ սովետական մարդկանց ներկայիս և գալիք սերունդների համար։*

*Որքան խելամիտ օգտագործենք բնության հարստությունները, որքան մեծ հաջողությունների հասնեն արդյունաբերությունը, գյուղատնտեսությունը, գիտությունը, որքան բարձրանա հանրային աշխատանքի արտադրողականությունը, այնքան հարուստ, գեղեցիկ ու կուլտուրական կլինի սովետական մարդկանց կյանքը»։*






Լ. Հ. ԲԱԲԱՅԱՆ

# ՊԱՏՄԱԳԻՏՈՒԹՅԱՆ ՌԱՀՎԻՐԱՆ

Վ. Ի. Լենինն իր տեսական և պրակտիկ գործունեության ընթացքում ստեղծել է վիթխարի գրական ժառանգություն, որի նշանակալի մասը պատմագիտական բնույթի երկեր են: Ներկա հոդվածի նպատակն է՝ համառոտակի ցույց տալ Լենինի դերը պատմագիտության կարգացման բնագավառում:

Ստեղծագործաբար կարգացնելով մարքսիստական ուսմունքը, նա իր հետազոտություններով անգնահատելի ավանդ է մուծել հասարակության, մասնավորապես Ռուսաստանի պատմության ուսումնասիրության գործում: Լենինյան աշխատություններում իր հետագա կարգացումն ստացավ պատմության մատերիալիստական ըմբռնման մարքսյան ուսմունքը: Համաշխարհային պատմական պրոցեսի հիմնական պրոբլեմներն իրենց խոր գիտական լուսաբանումն ստացան նրա հետազոտություններում:

Լենինյան աշխատություններում առաջին անգամ Ռուսաստանի պատմությունը դիտվեց որպես համաշխարհային պատմական պրոցեսի անբաժանելի մասը: Այստեղ քննվել են հայրենական պատմության բազմաթիվ հարցեր, տրված են պատմական պրոցեսի պրոբլեմների նոր մեկնաբանություններ:

Հենվելով հասարակական-տնտեսական ֆորմացիաների մարքսիստական ուսմունքի վրա, վերլուծելով հետմարքսյան շրջանում կուտակված փաստական հարուստ նյութը և իր ապրած ժամանակաշրջանի սոցիալ-տնտեսական տեղաշարժերը, Վ. Ի. Լենինը բանվոր դասակարգի հեղափոխական տեսությունը հարստացրեց գիտական նոր հայտնագործություններով: Նա բացահայտեց Ռուսաստանի պատմական կարգացման օրինաչափությունը, ուսումնասիրեց նրա՝ հասարակական-տնտեսական մեկ ֆորմացիայից մյուսին անցման պրոցեսները, վեր հանեց ու բնութագրեց յուրաքանչյուր ֆորմացիայի բնորոշ առանձնահատկությունները: Ռուսաստանի պատմությունը Իլյիչն ուսումնասիրում էր համաշխարհային պատմության օրինաչափ կարգացման հետ սերտ կապակցության մեջ: Նրա պատմագիտական աշխատություններում գիտական խոր ու բազմակողմանի վերլուծության են ենթարկված ռուսական ֆեոդալա-

կան և կապիտալիստական ֆորմացիաների տնտեսական բազիսը, քաղաքական վերնաշենքը, նրա առանձնահատկությունները: Ցույց է տրված վերջինիս հետադիմական ազդեցությունը բազիսի վրա: Այդ աշխատություններում գիտական պարզաբանում են ստացել ռուսական ֆեոդալական և կապիտալիստական հասարակությունների քաղաքական, սոցիալ-տնտեսական, սոցիալ-դասակարգային և բազմաթիվ այլ պրոբլեմներ:

Լենինը վճռականապես քննադատում էր Ռուսաստանում ֆեոդալական հասարակական-տնտեսական ֆորմացիայի գաղափարը ժխտող կոնցեպցիան, որն այդ հիման վրա Ռուսաստանի պատմությունը հակադրում էր Արևմտյան Եվրոպայի երկրների պատմությանը, բացառում պատմական պրոցեսի ընդհանրությունը:

Նա վեր հանեց Ռուսաստանի ֆեոդալական հասարակության հակամարտ բնույթը, ֆեոդալական պետության էությունը, ֆեոդալական արտադրաեղանակի, արտադրաուժերի և արտադրահարաբերությունների առանձնահատկությունները, ֆեոդալական շահագործման ձևերն ու մեթոդները:

Վ. Ի. Լենինը ցույց տվեց, որ Ռուսաստանի պատմության նոր շրջանն սկսվում է XVII դարից, երբ ստեղծվեց համառուսական շուկան: Այս ըմբռնումը կարևոր նշանակություն ունի կապիտալիզմի ծագման պրոբլեմի մշակման գործում: Այն օգնում է պատմաբաններին՝ կապիտալիստական հարաբերությունների ձևավորման ժամանակաշրջանը սահմանելիս, ճիշտ կողմնորոշվելու:

*Կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում*, *Նարոդնիկության տնտեսական բովանդակությունը*, *Ռուսական առաջին հեղափոխության մեջ սոցիալ-դեմոկրատիայի ագրարային ծրագիրը*, *Ի՞նչ են «ժողովրդի բարեկամները»...*, *Տնտեսական ռոմանտիզմի բնութագրության շուրջը* և մի շարք այլ երկերում Լենինը լուսաբանել է Ռուսաստանում կապիտալիզմի ծագման իրական պատկերը, նրա որոշիչ առանձնահատկությունները: Համակողմանիորեն վերլուծելով և ընդհանրացնելով ռուսական գյուղում կապիտալիզմի զարգացման պրոցեսը հետռեֆորմյան շրջանում, նա բացահայտել է գյուղատնտեսության մեջ կապիտալիստական արտադրահարաբերությունների գոյավորման ու զարգացման օրինաչափությունները: Լենինյան աշխատություններում չափազանց մեծ ուշադրություն է նվիրված 1861 թ. գյուղացիական ռեֆորմին:

Լենինյան պատմագիտական ժառանգության մեջ կզալի տեղ են գրավում Ռուսաստանի ագրարային հարաբերությունների պատմության վերաբերյալ աշխատությունները, որտեղ վերլուծված են գյուղատնտեսության կապիտալիստական զարգացման ուղիները:

1916 թ. առաջին կեսում Լենինն ավարտեց *Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիա* դասական ուսումնասիրությունը: Գիտական և փաստական հսկայական նյութի մանրակրկիտ ուսումնասիրության շնորհիվ նա հետազոտեց համաշխարհային կապիտալիզմի զարգացման նոր երևույթները և եկավ այն եզրակացության, որ կապիտալիզմը թևակոխել է զարգացման վերջին՝ իմպերիալիզմի փուլը:

Հանրագումարի բերելով XIX դարի 50-ական թվականներից մինչև առաջին համաշխարհային իմպերիալիստական պատերազմն ընկած ժամանակաշրջանում կապիտալիզմի զարգացման և բանվորական շարժման հարուստ փորձը, վճռական պայքար մղելով մարքսիզմի հակառակորդների դեմ, Լենինը պատմական նոր պայմաններում ստեղծագործաբար հարստացրեց կապիտալիզմի զարգացման մարքսյան ուսմունքը: Իմպերիալիզմի մասին լենինյան



տեսությունը հանդիսացավ նոր պայմաններում սոցիալիստական հեղափոխության տեսության հիմքը: Լենինի *Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիա* պատմա-տնտեսագիտական երկը Կ. Մարքսի *Կապիտալի* ուղղակի շարունակությունը և զարգացումն է: Հեղափոխության առաջնորդը միժամանակ խոր ու բազմակողմանի ուսումնասիրեց համաշխարհային և ռուսական իմպերիալիզմի առանձնահատկությունները, ցարիզմի, որպես «ռազմա-ֆեոդալական իմպերիալիզմի» բնույթը, հանգամանորեն վերլուծեց իմպերիալիզմի դարաշրջանում ռուսական ցարիզմի ներքին ու արտաքին քաղաքականության էությունը: Լենինը հիմնավորեց հեղափոխական-ազատագրական և պրոլետարական շարժումների գիտական պարբերացումը, տվեց յուրաքանչյուր շրջանի գիտական խոր գնահատականը: Ռուսաստանի հեղափոխական շարժման պատմության պարբերացման և հեղափոխական սիտուացիայի բնորոշման ու նրա առկայության անհրաժեշտության մասին առաջադրած նրա դրույթներն ու եզրահանգումները տեսական ու պրակտիկ վիթխարի նշանակություն ունեցան սոցիալիստական հեղափոխության հաղթանակն ապահովելու առումով: Նա բազմիցս նշել է, որ համաշխարհային, այդ թվում և ռուսական պատմության առաջմղիչ ուժը հեղափոխական բանվոր դասակարգն է, որը կոչված է ազատագրելու բոլոր ճնշվածներին:

Հեղափոխական-ազատագրական շարժման մեջ պրոլետարական փուլի սահմանման հարցը Վ. Ի. Լենինը մշակել է կապիտալիզմի և իմպերիալիզմի, Ռուսաստանում նրանց առանձնահատկությունների պրոբլեմների ուսումնասիրության հետ սերտ կապակցության մեջ: *Ի՞նչ են «ժողովրդի բարեկամները»...* երկում նա տվել է Ռուսաստանում բանվոր դասակարգի պատմական միսիայի բնորոշումը, հետագայում, ուրիշ գործերում, այն զարգացրել է, հիմնավորել, կոնկրետացրել: Լենինը նաև սահմանել է ռուսական պրոլետարիատի, նրա ավանգարդի հեղափոխական սոցիալ-դեմոկրատիայի քաղաքական պայքարի ձևերը, վերլուծել բանվորական շարժման կարևորագույն փուլերը, վեր հանել պրոլետարիատի մարքսիստական կուսակցության զարգացման հիմնական էտապները, մշակել բոլշևիզմի ծրագրային և տակտիկական խնդիրները:

*Ի՞նչ անել*-ում նա վերլուծել է Ռուսաստանի պայմաններում գյուղացիության հեղափոխական դերը, մշակել ու գիտականորեն հիմնավորել պրոլետարիատի և գյուղացիության հեղափոխական դաշինքի ուսմունքը: Քաղաքական դաշինքի անհրաժեշտության այդ գաղափարի հետագա զարգացումը տրված է Իլյիչի նշանավոր *Սոցիալ-դեմոկրատիայի երկու տակտիկան դեմոկրատական հեղափոխության մեջ* գրքում: Ռուսական առաջին բուրժուա-դեմոկրատական հեղափոխության հարցերը լուսաբանված են նաև *Սոցիալ-դեմոկրատիայի ագրարային ծրագիրը 1905—1907 թթ. ռուսական առաջին հեղափոխության մեջ*, *Ագրարային հարցը Ռուսաստանում XIX դարի վերջին* և բազմաթիվ այլ երկերում ու հոդվածներում, որոնցում գիտական խորիմացությամբ բացահայտեց ռուսական առաջին հեղափոխության սոցիալ-տնտեսական նախադրյալները, նրա բնույթը, շարժիչ ուժերը, առանձնահատկություններն ու պատմական նշանակությունը: Իլյիչը ցույց տվեց ռուսական առաջին հեղափոխության բուրժուա-դեմոկրատական բնույթը, վերհանեց այդ հեղափոխության ժամանակաշրջանում ռուսական բուրժուական լիբերալ շարժման, ռուսական բուրժուազիայի դիրքի, նրա չափավորության սոցիալական արմատների, ցեմստվոյական լիբերալ շարժման նեղության—սահմանափակվածության և շատ այլ կարևոր հարցեր: Իր մի շարք աշխատություններում, բազմաթիվ պատմական օրինակների

ու փաստերի հիման վրա, նա լուսաբանեց վեմստվոյության՝ որպես ինքնակալության ամրապնդման վենքի էությունը: Քննարկելով ռուսական խոշոր բուրժուազիայի քաղաքական կազմակերպությունների հարցը, նա գիտականորեն մեկնաբանեց բուրժուական կուսակցությունների դասակարգային էությունը:

Լենինյան ուսումնասիրություններում բազմակողմանիորեն լուսաբանված են հունիսերեքյան ռեժիմի դասակարգային էությունը, ցարական միապետության հետագա էվոլյուցիան դեպի սահմանադրական միապետությունը, նոր հեղափոխական վերելքի հարցերը: Այստեղ մատնանշվում են ցարական միապետության՝ բուրժուական զարգացման հետ հարմարվելու ուղիները:

*Եվրոպական պատերազմը և միջազգային սոցիալիզմը, Իմպերիալիզմը և վերաբերմունքը նրա նկատմամբ, Պատերազմի դասերը* աշխատություններում և համախոհներին գրած նամակներում արտացոլված է առաջին համաշխարհային իմպերիալիստական պատերազմի տարիներին Լենինի ծավալած հսկայական տեսական աշխատանքը: Այդ ժամանակահատվածում գրված ուսումնասիրություններում շարադրված են պատերազմի և հայրենիքի պաշտպանության նկատմամբ մարքսիստների ունեցած վերաբերմունքի հարցերը, հանգամանորեն վերլուծված են հեղափոխական սիտուացիայի, հեղափոխական ճգնաժամի վերաճման խնդիրները:

Պատմագիտական խոշոր արժեք են ներկայացնում պատերազմի և խաղաղության պրոբլեմների լենինյան տեսությունն ու տակտիկան: Արդարացի և անարդարացի պատերազմների նրա բնորոշումն այն ժամանակ և հետո մեծապես օգնեց աշխատավորական մասսաներին՝ ճիշտ կողմնորոշվելու պետությունների ձեռնարկած պատերազմների, նրանց նկատմամբ բռնած դիրքի գործում:

*Նամակներ հեռվից* և մի շարք այլ երկերում հիմնավորվեցին բուրժուական ժամանակավոր կառավարության նկատմամբ կուսակցության վերաբերմունքի մասին կարևորագույն դրույթները:

*Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիա, Եվրոպայի Միացյալ Նահանգների լոզունգի մասին, Պրոլետարական հեղափոխության ռազմական ծրագիրը* և ուրիշ երկերում Վ. Ի. Լենինը բացահայտեց կապիտալիզմի տնտեսական ու քաղաքական անհամաչափ զարգացման օբյեկտիվ օրենքը: Ելնելով ստեղծված նոր պայմաններից, նա ստեղծագործաբար վերանայեց Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի՝ սոցիալիզմի հաղթանակի հնարավորության մասին դրույթը և հանգեց նոր հետևության: Լենինը գտավ, որ նոր դարաշրջանում արդեն հնարավոր է իմպերիալիզմի համաշխարհային ճակատի ճեղքումը նրա ամենից ավելի թույլ օղակում, որ սոցիալիզմի հաղթանակը հնարավոր է սկզբնապես մի քանի կամ անգամ մեկ առանձին վերցրած երկրում, և որ նրա հաղթանակը հնարավոր չէ միաժամանակ բոլոր երկրներում: Լենինյան այս հայտնագործության նշանակությունը չափազանց խոշոր էր, նրանով ղեկավարվեց կոմունիստական կուսակցությունը Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակի և սոցիալիստական հասարակության կառուցման համար մղած պայքարում: Այն միջազգային պրոլետարիատին տվեց պայքարի ու հաղթանակի պարզ ու ռեալ հեռանկարներ: Լենինը կանխատեսում էր, որ զարգացման կապիտալիստական ստադիան անխուսափելի չէ բոլոր հետամնաց ժողովուրդների համար: Նա մատնանշում էր, որ հետամնաց երկրները կարող են առաջավոր երկրների հաղթանակած պրոլետարիատի օգնությամբ շարժվել դեպի սոցիալիզմ՝ խուսափելով կապիտալիստական ստադիայից: Այդ հանճարեղ



կանխատեսությունը հաստատվեց պատմական զարգացման հետագա ողջ ընթացքով:

Վ. Ի. Լենինը մարքսիստական տեսությունը ստեղծագործաբար զարգացնելու հիման վրա, որպես պատմական պրոցեսի ուսումնասիրման մեթոդոլոգիական հիմք, հետազոտել է Ռուսաստանի պատմության բոլոր արմատական հարցերը: Նա տվել է ո՛չ միայն Ռուսաստանի պատմական անցյալի գիտական ուսումնասիրությունը, այլև քաղաքական սրությամբ, պատմական օբյեկտիվ ընթացքին համապատասխան, լուսաբանել է նոր, իմպերիալիզմի դարաշրջանի պրոբլեմները:

Լենինյան աշխատությունները միաժամանակ ուղղված են բուրժուական-ազնվականական պատմագրության դեմ: Նրանք մերկացնում են այդ պատմագրության գիտական սահմանափակությունը, բացահայտում բուրժուական պատմաբանների արմատական, տեսական սկզբունքների սնանկությունը, մերկացնում նրանց պատմական կոնցեպցիաների քաղաքական միտումնավորությունը, ցույց են տալիս իմպերիալիզմի դարաշրջանում բուրժուական-ազնվականական և մանրբուրժուական պատմագրության ճգնաժամը: Վ. Ի. Լենինի աշխատություններն աչքի են ընկնում նաև աղբյուրագիտական հարուստ հիմքով. չբավարարվելով հայտնի աղբյուրներով, նա գիտական շրջանառության մեջ է դրել մեծ թվով նոր, կարևոր աղբյուրներ և մշակել իր մեթոդը դրանք ուսումնասիրելու համար: Լենինի գիտական նպատակասլացությունը պատմական երևույթների բացատրության մեջ, դիալեկտիկական մատերիալիզմի մեթոդոլոգիայի կիրառումը, ազնվականական-բուրժուական կոնցեպցիաների դասակարգային էության մերկացումը հիմք են հանդիսանում ռուսական պատմական պրոցեսի նոր լուսաբանման համար:

Վ. Ի. Լենինի Երկերի V հրատարակության մեջ զետեղված շուրջ 1000 նոր նյութերը հարստացնում են հեղինակի պատմագիտական ժառանգությունը, նոր լույս սփռում պատմագիտական շատ պրոբլեմների ու հարցերի խոր ու բազմակողմանի ուսումնասիրության վրա:

Նրա աշխատությունների տեսական բարձր մակարդակը, բուրժուական ու ռևիզիոնիստական կոնցեպցիաների քննադատությունը զուգակցված են բացառիկ գիտական բարեխղճության, հսկայական փաստերի մանրակրկիտ ու մանրազնին վերլուծության մեծագույն հմտության հետ, որոնք հավաստում են հեղինակի բոլոր հարցադրումների, վկայությունների ճշմարտացիությունը:

Պատմական երևույթների նկատմամբ օբյեկտիվ, կոմունիստական կուսակցականության դիրքերից ցուցաբերած դասակարգային մոտեցումը նրան հնարավորություն տվեցին ճիշտ գնահատել անցյալի և իր ժամանակի պատմագրությունը: Լենինը գիտական վերլուծության խոշորագույն ու չգերազանցված վարպետ էր:

Պրոլետարիատի ծրագրային պահանջների առաջքաշումը, ստրատեգիայի ու տակտիկայի մշակումը, նրա պատմական առաջընթաց զարգացման ուղիների կանխագծումը, ամենօրյա իրադրությունը հասկանալու և կողմնորոշվելու պահանջը հրամայաբար թելադրում էին անցյալի ուսումնասիրության անհրաժեշտությունը: Լենինի բոլոր աշխատությունները, մեծ թե փոքր, տոգորված են պատմականության ոգով, բովանդակում են վիթխարի քանակությամբ կոնկրետ-պատմական պրոբլեմների համոզիչ լուծումներ, եզրակացություններ, տեսական ու պրակտիկ ընդհանրացումներ, գնահատումներ և բնութագրումներ: Նրա

աշխատությունների պաթոսը հեղափոխական պրակտիկ խնդիրների, պրոլետարիատի սոցիալական պայքարի հարցերի իրականացումն էր:

Վ. Ի. Լենինի պատմագիտական գաղափարները մեթոդոլոգիան հսկայական ազդեցություն ունեցան սովետական պատմագրության բոլոր բնագավառների վրա: Այսօր գիտական ճանաչում է ստացել սովետական պատմագրության մեջ մարքսիզմի կարգացման լենինյան էտապ հասկացությունը: Բնական է, որ այդ շրջանի պատմության ուսումնասիրությունը հնարավոր է միմիայն լենինյան պատմագիտական հարուստ ժառանգության յուրացման, նրա պատմական կոնցեպցիայի և մատերիալիստական մեթոդոլոգիայի հիման վրա:

Վ. Ի. Լենինը հարստացրեց մարքսիզմը պատմական նոր տեսությամբ, առաջ քաշեց գիտական դրույթներ, մի նոր աստիճանի բարձրացրեց պատմության մեթոդոլոգիան, ստեղծեց ռուսական և դրա հետ կապված, ընդհանրապես հասարակական կարգացման պրոցեսի կուռ ու ամբողջական կոնցեպցիա՝ կապիտալիզմի դարաշրջանի պատմության պարբերացումը: Նա խոր ու բազմակողմանի ուսումնասիրեց հասարակական կարգացման բազմաթիվ պրոբլեմներ, բացահայտեց իմպերիալիզմի և պրոլետարական հեղափոխությունների դարաշրջանի օրինաչափությունները:

Անհնար է մարդկության պատմական, սոցիալ-տնտեսական երևույթները, քաղաքական ու հոգևոր կյանքի խոշոր իրադարձություններն ըմբռնել առանց ուսումնասիրելու Լենինի աշխատությունները: Լենինյան վերլուծությունները, դիտողությունները, հարցադրումները ինչպես հարկն է կողմնորոշում են հետազոտողին, նոր լույս սփռում ցանկացած պրոբլեմի լուսաբանման վրա:

Լենինն ստեղծեց բոլշևիկների կուսակցությունը, որը նոր էջ բացեց ռուսական և միջազգային բանվորական շարժման պատմության մեջ: Նրա ստեղծագործություններում արտացոլվեցին Ռուսաստանի աշխատավոր մասսաների դասակարգային պայքարը, ռուսական հեղափոխությունների պատմությունը:

Վլադիմիր Իլյիչի աշխատությունները ո՛չ միայն հեղափոխական պրակտիկ գործունեության ծրագրեր են, մարքսիզմ-լենինիզմի տեսական մտքի հարուստ գանձեր, այլև կոնկրետ պատմական հետազոտության փայլուն օրինակներ, որոնցով սովորել ու սովորում են մարքսիստ-պատմաբանների ամբողջ սերունդներ: Լենինը ռուսական, ընդհանրապես կապիտալիզմի, մասնավորապես իմպերիալիզմի կազմավորման շրջանի պատմական կյանքի գրեթե բոլոր բնագավառների պատմության մասնագետ-պատմաբանն է: Լենինյան տեսական ժառանգությունը սովետական պատմաբանների, տնտեսագետների, փիլիսոփաների և հասարակական գիտության մյուս բնագավառների մասնագետների ձեռքում հզոր զենք է գաղափարական պայքարում:

Մեր օրերում բուրժուական պատմագրության կոնցեպցիաների ու հարցադրումների լենինյան քննադատությունը չափազանց խոշոր նշանակություն ունի պատմական գիտության հիմնական մեթոդոլոգիական պրոբլեմների նոր իմաստավորման համար: Բուրժուական պատմագրության քննադատության լենինյան մեթոդների իմացությունը այժմեականություն է ստանում հակակոմունիզմի դեմ մղվող գաղափարական սկզբունքային պայքարում, աջ և ձախ ռևիզիոնիզմի տեսական արատները մերկացնելու գործում:

Լենինի պատմագիտական ուսումնասիրությունները նոր դարաշրջան բացեցին համամարդկային պատմական կարգացման ոլորտում: Նրա գաղափարները,— ասված է ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ,— համաշխարհային կարգացման ամբողջ ընթացքի վրա գործել են և շարունակում են գործել ամենախոր ազդեցություն:

# ԼԵՆԻՆԸ ՊԱՐՍԿԱԿԱՆ ՊՈԵԶԻԱՅՈՒՄ


**Հ. Հ. ՄՈՎՍԻՍՅԱՆ**

Բանասիրական գիտությունների թեկնածու (արևելագետ)


**Սոցիալական հակասությունների սրման և իմպերիալիստական տերությունների վարած ստրկացնող քաղաքականության հետևանքով XX դարի սկզբում՝ 1905—1911 թթ., Իրանում սկսված բուրժուական հեղափոխությունը շրջադարձային կարևոր էտապ հանդիսացավ այդ երկրի քաղաքական, սոցիալական ու մշակութային կյանքում:**

**Բուրժուա-դեմոկրատական շարժման խթաններից մեկն էր նաև 1905 թ. ռուսական առաջին հեղափոխությունը: Ռուս բոլշևիկներն ամեն կերպ պաշտպանում էին Իրանի ժողովրդի շահերը՝ անմիջական օգնություն ցույց տալով նրան: Վ. Ի. Լենինը մեծ նշանակություն էր տալիս 1905—11 թթ. իրանական հեղափոխությանը: 1906 թ. Թավրիզի ապստամբության մասին Լենինը գրել է.**

*«Հեղափոխական այնպիսի մի շարժում, որը կարողանում է ռազմական հակահարված տալ ռեստավրացիայի փորձերին, որը հարկադրում է այդ փորձերի հերոսներին դիմելու այլազգիների օգնությանը,— չի կարող ոչնչացվել, և պարսկական ռեակցիայի ամենալիակատար հաղթանակը նման պայմաններում ժողովրդական նոր հուզումների նախադուռը կլիներ միայն» (Երկեր, հ. 15, էջ 216):*

**Ճիշտ է, բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունն Իրանում չհասավ իր վերջնական նպատակին, սակայն ակտիվ մասնակցելով երկրի քաղաքական կյանքին, աշխատավոր մասսաները հարստացրին ներքին և արտաքին շահագործողների դեմ իրենց մղած պայքարի փորձը: Միաժամանակ պատմական աչքի ընկնող ժամանակաշրջան էր այն Իրանի ժողովրդի համար, երբ փոխադարձ կապ ստեղծվեց ռուս-իրանական գրականությունների միջև և թարգմանությունների միջոցով ռուս առաջավոր գրականությունն ու հասարակական միտքը ներթափանցեցին Իրան[1]:**

**Համաշխարհային առաջին պատերազմի տարիներին ցարական Ռուսաստանը և իմպերիալիստական Անգլիան 1907 թ. կնքած պայմանագրի հիման վրա ավելի են զորեղացնում իրենց գաղութատիրական ճնշումն Իրանում: Հեղափոխության բովով անցած Իրանի ժողովուրդն սկսում է ավելի լավ ճանաչել հայրենիքի ներքին ու արտաքին թշնամիներին: Գնալով սրվում են դասակարգային հակասությունները, որոնք վաղ թե ուշ նոր քաղաքական պայթյուն պետք է առաջացնեին Իրանում:**

**Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը նոր դարագլուխ բացեց մարդկության բազմադարյան պատմության մեջ, այն արձագանք գտավ Ռուսաստանի սահմաններից դուրս, աշխարհի բոլոր ճնշված ու շահագործվող ժողովուրդների սրտերում: Իրանի շիկացած երկնակամարի վրա նույնպես այն շեփորեց իր ազատաբեր կոչը, ոգեշնչելով տեղի աշխատավորությանը՝ շարունակելու**

1 *Այս հարցում մեծ և նշանակալից դեր են խաղացել Ջալիլ Մուհամմադ Ղուլիի խմբագրությամբ 1906 թ. ապրիլի 7-ից Թիֆլիսում հրատարակվող «Մոլլա Նասրեդդին» հանդեսը, որը հետևողականորեն արծարծում էր Արևելքի ժողովուրդների ազատագրական գաղափարները:*

իրենց պայքարը հանուն նոր կյանքի ստեղծման:

*«Հոկտեմբերյան հեղափոխությունը,— գրում է դոկտոր Ռադմանեշը,— մեր երկիրը փրկեց ազատության և ինքնավարության ոչնչացման վտանգից: Փրկեց ցարական իմպերիալիզմի լծից և անհրաժեշտ նախադրյալներ ստեղծեց մեր ժողովրդի համար՝ պայքարելու հանուն տնտեսական ու քաղաքական անկախ կյանքի»* (Հոկտեմբերյան հեղափոխության ազդեցությունն Իրանում, *1938, էջ 4):*

Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո, երեք տարի շարունակ (1919—1922 թթ.), Իրանի հյուսիսային նահանգներում (Ատրպատական, Գիլան, Մազանդարան, Խորասան) փոթորկում էին գյուղացիական ու աշխատավորական մասսաների ապստամբությունները՝ ուղղված Իրանի ռեակցիոն ուժերի և անգլիական իմպերիալիզմի ոտնձգությունների դեմ:

Ժողովրդի հետ մեկտեղ պայքարի են դուրս գալիս առաջադեմ նոր պոետներ՝ Իրաջ Միրզան, Միր-զադե Էշղին, Ֆարրոխի Յազդին և ուրիշներ: Ստեղծվող սոցիալական նոր հարաբերությունները իրանական գրականության առջև հարուցեցին նոր պրոբլեմներ և գրողներին կանգնեցրին նոր հարցերի լուծման անհրաժեշտության առաջ: Ժողովրդի նոր զարթոնքը թարմություն, ոգևորություն ներշնչեց Իրանի հայրենասեր գրողների ստեղծագործություններին:

1918—1925 թթ. իրանական մամուլի էջերում տպագրվեցին բազմաթիվ հոդվածներ, բանաստեղծություններ ու պոեմներ՝ նվիրված Հոկտեմբերյան հեղափոխությանը: Այդ տարիներին պարսիկ առաջադեմ բանաստեղծների՝ Սովետական Միությանը վերաբերող ստեղծագործություններում մեծ մասամբ արտացոլվում էր մեծ առաջնորդի՝ Վ. Ի. Լենինի կերպարը: Սրտաբուխ խոսքերով նրանք Լենինին ներկայացրել են որպես ճնշվածների բարեկամ, պայծառ գալիքի համար պայքարի ելած ժողովուրդների ոգեշնչող, աշխատավորության դարավոր երազանքներն իրականացնող: Նրանց ստեղծագործությունները ո՛չ միայն ունեին ճանաչողական մեծ նշանակություն Իրանի աշխատավորության համար, այլև ուղղված էին իմպերիալիստական երկրների հակակոմունիստական և հակասովետական պրոպագանդայի դեմ: Չափածո խոսքի լավագույն նմուշները, անշուշտ, հարստացրել են Իրանի դեմոկրատական գրականության գանձարանը և նրա անբաժանելի մասն են: Կենսաբուխ են դրանցում արտահայտված զգացմունքները, իսկ դրանց ստեղծողները շատ անգամ կյանքով են հատուցել յուրաքանչյուր տողի համար:

Իրանի անվանի բանաստեղծ Վահիդ Դաստգարդին 1919 թ. առաջինը գրեց ԼԵՆԻՆ ոտանավորը (Современный Восток, М. 1958, № 9, стр. 59). այնտեղ արտահայտված է առաջնորդի նկատմամբ հեղինակի խոր համակրանքը.

*Ո՛վ, Լենին, դարձար ազատությունը*
*համայն աշխարհի,*
*Հողմացրիվ արիր նենգ բռնակալների*
*պալատները դու,*
*Թշնամին ես դաժան բռնության, դավի,*
*չարիքի,*
*Կերտողն ստեղծագործ ու նոր, գեղեցիկ*
*կյանքի*[1]*:*

Բազում զրկանքներ ու բռնություն տեսած Իրանի ժողովուրդը ևս, աշխարհի շատ ժողովուրդների պես, լավատես է, հավատում է, որ ի վերջո բարին հաղթելու է չարին, աշխարհում իշխելու է արդարությունը: Այդ է պատճառը, որ պարսիկ շատ պոետների ստեղծագործություններում Լենինի կերպարը բնութագրվում է որպես «չարի դեմ պայքարի ելած», «չարիքը ջնջող», «աշխարհի հավիտենական արդարությունը մարմնացնող» հերոս: Ուստի և միանգամայն բնական ու հասկանալի է պարսիկ հասարակ ժողովրդի ջերմ սերը Լենինի նկատմամբ:

Իրանի աշխատավորության թիկունքում կանգնած ազատասեր պոետները համոզված էին, որ առաջին հեղափոխության անհաջողությունը չպետք է հուսահատեցնի ժողովրդին, որ նա ևս իր հետևողական պայքարով կարող է տապալել իշխող դասակարգի քաղաքական տիրապետությունն այնպես, ինչպես ռուս ժողովուրդը՝ Լենինի գլխավորությամբ: Այստեղ էլ դրսևորվում է այն նորը, առանձնահատուկը, որ բնորոշ է դառնում իրանական առաջադեմ պոեզիայի մոտիվներում Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո:

Նշանավոր բանաստեղծ Միր-զադե Էշղին իր ԻԴԵԱԼ պոեմում կերտում է ծերունի Ֆեմիրանցու մարտական կերպարը: Նրա մեջ խտացված են իր ժողովրդի հույզերն ու հույսերը. պոետը համոզված է, որ Իրանն ի վիճակի կլինի փշրելու իրեն կաշկանդող շղթաները միմիայն այնպիսի հեղափոխության միջոցով, ինչպիսին 1917 թ. Հոկտեմբերյան հեղափոխությունն էր Ռուսաստանում: Եվ այդ մարտական ոգին նա դնում է ծերունի Ֆեմիրանցու մեջ, որի վրա շատ է ազդել իր երկրի առաջին հեղափոխության անհաջող ելքը, բայց նա լի է հաղթական պայքարի վճռականությամբ: Նրան ոգևորում է Լենինի կերպարը (Էշղի, Հատընտիր, Թեհրան, 1928, էջ 87):

1 *Չափածո թարգմանությունները մերն են*։



*Շանթեր ժայթքեցին աչքերից լուսեղ,*
*Ինչպես ցոլացին*
*Հեղափոխության կրակը վառող*
*Կայծերն աչքերի՝*
*Հզոր Լենինի...*

Լենինին ժողովրդական մասսաներին ավելի մոտեցնելու, հասկանալի դարձնելու համար պարսիկ պոետները նրան համեմատում են առասպելական հերոսների, սրբերի հետ: Այսպես՝ բանաստեղծ Արեֆ Ղազվինին Իլյիչին համեմատում է Խեզրի (սուրբ Եղիայի) հետ, որը գտավ անմահական ջուրը և փրկեց անապատում մոլորվածների կյանքը: Խեզրի անունը մուսուլմանների համար փրկարար ոգու նշանաբանն է: Պոետական նման հնարանքն, անշուշտ, ուժեղացնում է բանաստեղծության ներգործությունը, և պարզ լեզվի շնորհիվ այն դառնում է ավելի տպավորիչ ու դյուրըմբռնելի՝ ժողովրդի ամենաբազմազան խավերի համար: Զարգացնելով իր միտքը՝ Ղազվինին ազատ և անկաշկանդ, Արևելքին հատուկ հյուրասիրությամբ կանչում է Լենինին իրենց տուն (Մ. Ա. Ղազվինի, Դիվան, Բեռլին, 1924, էջ 256):

*Ո՛վ Լենին, ո՛վ բարերար հրեշտակ,*
*Թե շնորհ անես ու վեր կենաս գաս,*
*Մեր աչքի վրա տեղ ունես հազար,*
*Մեր տունը՝ դա քո տունն է հարազատ:*

Իրանի պոետ Հաբիբ Յաղմային 20-ական թթ. ժողովրդի ազգային-ազատագրական շարժումների փոթորկոտ ժամանակներում գրած իր ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ բանաստեղծության մեջ (Советское востоковедение, М., 1958, № 2, стр. 31) արտացոլել է այն միտքը, թե իր ժողովուրդը կհաղթի, եթե հետևի Հոկտեմբերյան հեղափոխության օրինակին. առաջնորդվի Լենինի խորհուրդներով.

*Համոզված եղեք, կկործեն հավետ*
*Մեր շղթաները նենգ բռնության հետ,*
*Եթե չթողնի ժողովուրդը մեր*
*Հզոր Լենինի ձեռքը անվեհեր:*

Պոետն իր ստեղծագործության մեջ արտացոլել է այն խոր հարգանքը, որ տածում են իրանցի և ճնշված մյուս ժողովուրդները մեծ առաջնորդի, լենինյան պատգամների հանդեպ: Այդ մասին է վկայում նաև պոետ Միրզա Մոհամմադ Ալի Մոքարրամի՝ 1925 թ. գրած ԼԵՆԻՆԻ ՀԻՇԱՏԱԿԻՆ բանաստեղծությունը, նվիրված Իլյիչի մահվան տարելիցին: Մոքարրամը Լենինին համարում է այն հանճարեղ առաջնորդը, որի գաղափարախոսությունը կապրի դարեր: Պոետը փորձում է ցույց տալ լենինյան արտաքին քաղաքականության հույժ կարևորությունն Իրանի և գաղութացված այլ երկրների ժողովուրդների համար, որոնք ոտքի են ելել իմպերիալիզմի դեմ («Սեդայե Իսֆահան»— «Սպահանի ձայն», 1925, դեկտեմբեր, հատուկ թողարկում): Իսկ Վաեզ Քերմանին Հոկտեմբերյան հեղափոխության տասներորդ տարեդարձին նվիրված իր ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐ ոտանավորում Լենինին համարում է «ազատության ավետաբեր», «աշխարհի ողջ աշխատավորության մեծ ուսուցիչ» («Փեյքար»— «Պայքար», թերթ, 1931 թ., մարտի 11): Քանանական թվականներին պարսիկ պոետների՝ մեծ առաջնորդին նվիրված առաջին բանաստեղծություններն են սրանք: Ինչ խոսք, դրանցից շատերը պարզունակ են, զուրկ գեղարվեստական բարձր արժեքից, սակայն պարսկական դեմոկրատական պոեզիայում գրավում են իրենց ուրույն տեղը, արտահայտելով այն մեծ ժողովրդականությունը, որ վայելում էր Իլյիչն Իրանում, հիշյալ ժամանակաշրջանում:

Հետագա տասը տարիներին, Իրանում տիրող բռնապետական կարգերի պատճառով, պոետներն անկարող եղան անդրադառնալ սովետական թեմային: Սակայն համաշխարհային երկրորդ պատերազմի և դրան հաջորդող առաջին տարիներին, երբ Իրանի հասարակական կյանքում հետզհետե տիրապետող էին դառնում ինքնագիտակցության եկած դեմոկրատական նոր խավերը, Իրանի ժողովուրդն սկսում է զգալ իրեն որպես կարող ուժ և հակադրվում է տիրապետող բռնակալ ուժերին: Գրական ասպարեզ են իջնում երիտասարդ հայրենասեր բանաստեղծներ, որոնք աշխատավորության քաղաքական զարթոնքը խթանելու նպատակով բազմաթիվ ոտանավորներ ու պոեմներ են նվիրում Սովետական Միությանը, Լենինին և Սովետական Միության կոմունիստական կուսակցությանը:

Լավ ըմբռնելով ժամանակի էությունը, բանաստեղծներ Աբոլղասեմ Լահութին, Էհսան Թաբարին, Ժալեն և ուրիշներ կենդանի, իրական ու պարզ նկարագրություններով կերտում են Լենինի դյուցազնական կերպարը: Բացի այդ, 40-ական թթ. ազատասեր պոետները ձգտում են գեղարվեստա-

կան չափածո խոսքով արտացոլել Սովետական Միության կոմունիստական կուսակցության և կառավարության վարած արտաքին ու ներքին քաղաքականությունը, անխոնջ պայքարը ժողովուրդների բարեկամության, աշխարհում խաղաղության ամրապնդման համար: Հիշենք Ա. Լահութիի ՄԵԶ ԱՌԱՋՆՈՐԴՈՂ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ, ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՏՈՆ ՀՈԿՏԵՄԲԵՐԸ, ԿՐԵՄԼ, ԼԵՆԻՆԸ ԿԵՆԴԱՆԻ Է (Ա. Լահութի, Դիվան, Մ., 1957, էջ 186), Ֆ. Յազդիի ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ 10-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ, Է. Թաբարիի ԼԵՆԻՆՅԱՆ կուսակցությունը (Ш. Шамухамедов, Эхсан Табари, Ташкент, 1959, стр. 83, 84): Ժալեի ԵՐԴՈՒՄ-ը («Ախբարե թազե»—«Նոր լուրեր», Թեհրան, 1945 թ., մայիսի 15) և այլ ստեղծագործություններ, որոնց մեջ արտացոլված են լենինյան կուսակցության նկատմամբ Իրանի և այլ երկրների աշխատավորների ջերմ զգացմունքն ու խոր հարգանքը:

Ընթերցողին չեն կարող չհուզել բանաստեղծուհի Ժալեի ստեղծագործությունները, որոնք արժեքավոր են ո՛չ միայն արտահայտած գաղափարներով, այլև գեղարվեստական արտահայտչականությամբ, հասարակական առաջավոր տրամադրություններով: Բանաստեղծուհին կարողանում է պատմական առանձին փաստերի ընդհանրացմամբ ռեալիստական շունչ հաղորդել ԵՐԴՈՒՄ ներբողին և, այդպիսով, դառնալ իր ժողովրդի զգացմունքների անկեղծ արտահայտիչը: Իրանի ժողովուրդը, որի կամքը «Շերման» տանկից էլ ավելի ամուր է ու աննկուն, ջերմագին ողջունում է լենինյան կուսակցությանը: Ինչպես տեսնում ենք, Ժալեն ոչ թե խոսում է ընդհանրապես տանկերի, այլ, մասնավորապես, «Շերման» տանկերի մասին, որոնցով 1951 թ. հուլիսի 15-ին իրանական ժանդարմերիան արյան մեջ խեղդեց ազգային-ազատագրական շարժումները (см. М. Мачокки, ИРАН В БОРЬБЕ, М., 1953, стр. 65): ԵՐԴՈՒՄ-ը պարսկական գրականության այն լավագույն բանաստեղծություններից է, որտեղ պարզորոշ արտացոլված են Իրանի ժողովրդական մասսաների վճռականությունը, ատելությունը հայրենիքի թշնամիների հանդեպ, և նրանց խոր համակրանքը Վ. Ի. Լենինի, նրա կուսակցության նկատմամբ: Իրանի պոետները, խորապես գիտակցելով, որ Իրանի ներքին ու արտաքին ուժերի սերմանած միջցեղային թշնամանքի նպատակն է կազմալուծել նրանց միասնական պայքարը դասակարգային թշնամիների դեմ, հիացմունքով են գրում Սովետական Միության ազգային քաղաքականության մասին:

*Վաթսուն ազգերից ստեղծեց մի ազգ՝*
*Սերտ, միասնական,*
*Այդպես էր վճռել առաջին օրից*
*Կամքը լենինյան։*

գրում է պոետ Գուլշան Ազադին իր ԼԵՆԻՆԻՆ խորագիրը կրող ձոնում («Ախբարե թազե», Թեհրան, 1944, փետրվարի 2):

Ուշագրավ է, հատկապես, Ալի-Ասքար Մոհնիանի ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ 27-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ ստեղծագործությունը, որտեղ պոետը, ի տարբերություն հայրենակից շատ այլ բանաստեղծների, անդրադառնում է պատմական այն պայմաններին, որոնց շնորհիվ Ռուսաստանում ծնվեց այնպիսի մի առաջնորդ, ինչպիսին Լենինն էր: Արտացոլելով նրա հերոսությունն ու անձնազոհությունը, Մոհնիանը ներկայացնում է Իլյիչին իբրև մտավոր անսահման կարողության, տաղանդի, երկաթյա կամքի տեր անձնավորություն («Ախբարե թազե», Թեհրան, 1944, հոկտեմբերի 16):

Այս առնչությամբ հետաքրքրական է նաև Լենինի կերպարը Աբուլղասեմ Լահութիի երկերում, որտեղ արտահայտված է այն միտքը, թե Լենինի գաղափարները ոգեշնչում են շահագործվող ժողովուրդներին՝ պայքարի դրոշ պարզելու հանուն ազատության ու անկախության (1920 թվականից Լահութին ապրել է Տաջիկստանում):

Լահութին չափազանց պարզ էր ըմբռնում այն վիթխարի դերը, որ կարող էին ունենալ մեծ առաջնորդի և Սովետական Միության թեմատիկայով գրված երկերն Իրանի միապետական ու կիսաֆեոդալական կարգերի դաժան պայմաններում: ԻՐԱՆ բանաստեղծության մեջ այդ օրերի պայքարը նա համարում է բռնակալների դեմ Իրանի ժողովրդի մղած հինգ հազար տարվա պայքարի շարունակությունը: Այժմ,— գրում է պոետը,—շահագործվողների գլուխ է կանգնած բանվոր դասակարգը, որ գյուղացիության հետ ձեռք-ձեռքի՝ նոր հասարակարգ է ստեղծում: Լահութին կոչ է անում իր ժողովրդին մյուս երկրների աշխատավորության և, առաջին հերթին, սովետական ժողովրդի հետ միասին ընթանալ լենինյան ուղիով (Ա. Լահութի, ԴԻՎԱՆ, Թեհրան, 1939, էջ 247—248):

*Թո՛ղ, որ լենինյան ուղիով խոհուն,*
*Պարս ու Թուրք, հնդիկ բանվոր, ծառայող,*
*Սոցիալիզմի վեհ ուղիով գնան։*
*Թո՛ղ Հնդկաստանի ծայրից մինչև Կարս*
*Կորչի՛ սովն ու քաղց,*
*Ու թող շեն դառնա աղքատի կյանքը,*
*Ու փլչի խպպա*
*Պալատն անարդար...*



Դիմելով կոնկրետ փաստերի, որոնց մեջ բացահայտվում են Լենինի և սովետական կառավարության բարեկամական վերաբերմունքը Իրանի հանդեպ, Ա. Լահութին ԻՄ ԻՐԱՆ ոտանավորում գեղարվեստական խոսքի մեծ վարպետությամբ ժողովրդին հիշեցնում է այն մեծ օգնությունը, որ ցույց տվեց Լենինը 1918 թ. հունվարի 14-ի հայտարարությամբ՝ չեղյալ համարելով այն ծանր պարտքերը, որ Իրանը պարտավորված էր վճարելու ցարական Ռուսաստանին (Ա. Լահութի, ԴԻՎԱՆ, 1946, էջ 217):

Իրանի հասարակական-գրական միտքը Լենինի մասին իր խոսքն ասաց նաև նրա մահից հետո: Համայն աշխարհի մարդկության հետ մեկտեղ մեծ վիշտ ապրեց և Իրանի աշխատավորությունը՝ լսելով այդ բոթը. ժողովրդի և առաջավոր մտավորականության համար նա մնաց առաջվա պես սիրելի, ոգեշնչող ու անմահ: Պարսիկ շատ պոետներ խոր զգացումներով արտահայտեցին իրենց վշտի մեծությունը: Ա. Լահութիի ԼԵՆԻՆՆ ԱՊՐՈՒՄ Է, Նասեր Ամելիի ՆՐԱ ԱՆՈՒՆԸ ՀԱՎԵՏ ԿԱՊՐԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՄԵՋ, Է. Թաբարիի Վ. Ի. ԼԵՆԻՆ, Ժալեի ԴԱՄԲԱՐԱՆ, Շահաբ Ֆիրդուսու ԻԼՅԻՉԸ բանաստեղծությունները, Յազդանբախշ Ղահրամանիի ԼԵՆԻՆ պոեմը այն բազմաթիվ ստեղծագործություններից են, որոնք գրվեցին մեծ առաջնորդի մահից հետո: «Ճիշտ է, Լենինը չկա, սակայն նրա պատգամները մնում են անմահ, որովհետև միլիոնավոր մարդիկ մեծ հանդիսավորությամբ պայքարի են ելել դրանց պահպանման և իրագործման համար» («Դուսթե Իրան»— «Իրանի բարեկամ», 1945, փետրվարի 10, «Մարդոմ»—«Ժողովուրդ», 1945, փետրվարի 4, Б. Гусейнов, Поэты Ирана о Советском Союзе, М., 1965, стр. 52—54): Յ. Ղահրամանին ԼԵՆԻՆ պոեմում (նույն տեղը, էջ 55) այսպես է արտահայտում իր համոզմունքը Իլյիչի հավերժականության մասին.

*— Լենինն անմահ է,*
*Քանզի չի մեռնում*
*Նա, ով ապրում է մարդկության սիրով.*
*Չի մեռնում նա, ում*
*Պատգամները վեհ*
*Սուրբ երդումի պես*
*Սրտումն է պահում*
*Աշխարհում արար*
*Ամեն մի ռանչպար...*

Պարսիկ պոետների՝ Իլյիչին նվիրված ոտանավորներն ու պոեմները դրսևորում են նրանց անկեղծ զգացմունքները, Իրանում լենինյան գաղափարների իրականացման նրանց երազանքը: Զգում ես, թե ինչպես նրանցից յուրաքանչյուրը ձգտում է ամրապնդել իր ժողովրդի հոգում բույն դրած սերն ու համակրանքը համաշխարհային պրոլետարիատի առաջնորդի հանդեպ: Իրանի մտավորականության բուռն հետաքրքրասիրությունը Սովետական Միության և մեծ Լենինի նկատմամբ հսկայական նշանակություն է ունեցել Իրանի սոցիալ-քաղաքական կյանքում: Այդ պոեզիան նպաստել է Իրանի աշխատավոր մասսաների առավել ինքնաճանաչմանը, անմար պահել պայքարի ելած դեմոկրատական տարրերի հավատը վերջնական հաղթանակի հանդեպ: Այդ պոեզիայի շնորհիվ գնալով ավելի են ամրապնդվել Սովետական մեր մեծ երկրի ժողովուրդների և Իրանի աշխատավորության բարեկամությունն ու փոխըմբռնումը:





# ԼԵՆԻՆՅԱՆ ՀՈԲԵԼՅԱՆԱԿԱՆ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Մարդկության պատմությանը հայտնի չէ քաղաքական մի այլ գործիչ, որի գրչին պատկանեին այնքան բացառիկ աշխատություններ, ինչպիսին Լենինն է: Նրա երկերը կազմում են 55 ստվարածավալ հատորներ: Դրանք, իրականում, հասարակության զարգացման օրենքներին, կոմունիզմի կառուցման ուղիներին վերաբերող գիտելիքների անսպառ աղբյուր են:

Լենինի ստեղծագործությունները կազմում են Քաղհրատի հոբելյանական հրատարակությունների կարևորագույն բաժիններից մեկը: Լրացուցիչ տպաքանակով հրատարակվում է Վ. Ի. Լենինի երկերի լիակատար ժողովածուն, լույս կընծայվի մեծ առաջնորդի ընտիր աշխատությունների եռհատորյակը:

Ընթերցասերների համար լավ նվեր կլինի Լենինի ստեղծագործությունների գեղարվեստորեն ձևավորված փոքրիկ գրադարանը: Այն կընդգրկի Լենինի 10 աշխատությունները— **Պետություն և հեղափոխություն, Սոցիալ-դեմոկրատիայի երկու տակտիկան դեմոկրատական հեղափոխության մեջ, «Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ, Սովետական պետության հերթական խնդիրները** և լենինյան հանճարի նշանավոր այլ գործեր: Դրանցից յուրաքանչյուրը կունենա լավ, ամուր կազմ, կկոմպլեկտավորվի մի տուփի մեջ:

Լենինյան հոբելյանական գրականությունը լայնորեն ներկայացվելու է նաև թեմատիկ ժողովածուներով: Դրանց թվում է **Վ. Ի. Լենինի գաղափարական աշխատանքի մասին** գիրքը: Այստեղ կընդգրկվեն հեղափոխական թեորիայի նշանակությանը և կուսակցության պրակտիկ գործունեության հետ նրա անքակտելի կապին, մարքսիզմի ստեղծագործական զարգացման անհրաժեշտությանը վերաբերող ճառերը, հոդվածները, նամակները և այլ նյութեր: Լենինի մի շարք աշխատություններ կբովանդակեն ռևիզիոնիզմի, դոգմատիզմի և աղանդավորության քննադատությունը:

Նոր մարդու դաստիարակության այժմեական պրոբլեմները լուսաբանող լենինյան աշխատություններն ամփոփվելու են **Վ. Ի. Լենինը կոմունիստական բարոյականության մասին** գրքում: Թեմատիկ առանձին ժողովածու կկազմեն Վ. Ի. Լենինի սոցիալիստական և կոմունիստական հասարակության խնդիրներին նվիրված աշխատություններն ու դրույթները:

**Վ. Ի. Լենինը կուսակցության կանոնադրության մասին** գրքում ժողովված նյութերը բացահայտում են, թե ինչպիսի լարված պայքար է մղել Իլյիչը հանուն բոլշևիկյան կուսակցության շարքերի անաղարտության, նրա կազմակերպական կառուցվածքի պարզ ու հստակ սկզբունքների, կուսակցական կազմակերպությունների մարտունակության բարձրացման: **Վ. Ի. Լենինը կուսակցության սոցիալիստական շինարարության կազմակերպիչ ու ղեկավար** գրքում զետեղված առանձին գործերը, ելույթները, նամակներն ու այլ նյութեր կօգնեն ընթերցողին՝ առավել խոր ըմբռնելու լենինյան գաղափարները կոմունիստական կուսակցության, կոմունիստական հասարակության կառուցման գործում նրա ղեկավար դերի օրինաչափության ու անհրաժեշտության մասին:

Անտարակույս, հետաքրքրական կլինեն նաև **Վ. Ի. Լենինը բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի մասին, Սոցիալիստական հայրենիքի պաշտպանության մասին, Կուսակցական կյանքի նորմերի և կուսակցական ղեկավարության սկզբունքների մասին** և այլ ժողովածուներ:

Մեծ Լենինի հանճարը կարտացոլվի նաև վավերագրական հրատարակություններում: Կենսագրական խրոնիկան կպատկերի նրա կյանքի կարևորագույն իրադարձությունները և ցույց կտա Լենինի վիթխարի ջանքերը իր հայտնի աշխատությունները ստեղծելու, ինչպես և ռուսական սոցիալ-դեմոկրատներին բանվոր դասակարգի մարքսիստական կուսակցության մեջ համախմբելու, հեղափոխական գաղափարախոսությունը, կուսակցության ծրագիրը, տակտիկան մշակելու ընթացքում: Կոմինտերնի կազմակերպմանն ու գործունեությանը նվիրված լենինյան նյութերի մեծ մասը, ինչպես և կոմինտերնի I, II, III, IV կոնգրեսների հիմնական նյութերը հրատարակվելու են **Լենինը և կոմինտերնը** ժողովածուում: Այնտեղ խորապես բացահայտվում են կոմունիստական ինտերնացիոնալի ստրատեգիան ու տակտիկան, ցույց տրվում Վ. Ի. Լենինի՝ որպես կոմինտերնի հիմնադրի ու ղեկավարի մեծ դերը:

Այն ամենը, ինչ կապված է մեծ առաջնորդի անվան հետ, անսահման թանկ է մեր ժողովրդին: Վ. Ի. Լենինի ժամանակակիցների— հեղափոխական պայքարի զինակիցների, հարազատների, մտերիմների հիշողությունների շնորհիվ մեզ են հասել նրա շատ մտքեր, դիտողություններ, հետաքրքրական մանրամասներ: Ի մի բերված հիշողությունները վերստեղծում են Լենինի— աշխատավորների իմաստուն ղեկավարի և ուսուցչի, կոմունիստական կուսակցության և սովետական իշխանության կազմակերպչի, հասարակ, կենսասեր, հրապուրիչ մարդու, զգայուն ընկերոջ ու բարեկամի կերպարը:

Քաղհրատը, ՍՄԿԿ Կենտկոմին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հետ մեկտեղ, հրատարակության է պատրաստել **Հիշողություններ Վլադիմիր Իլյիչ Լենինի մասին** հինգհատորյակը: Առաջին հատորը, որ արդեն լույս է տեսել, բովանդակում է Ն. Կ. Կրուպսկայայի, Ա. Ի. Ուլյանովա-Ելիզարովայի, Դ. Ի. Ուլյանովի, Մ. Ի. Ուլյանովայի հիշողությունները: Երկրորդ հատորը կարտացոլի Լենինի կենսագրության մինչհեղափոխական ժամանակաշրջանը: Հեղինակները բոլշևիկյան կուսակցության նշանավոր գործիչներն ու Ռուսաստանի բանվորական շարժման ակտիվ մասնակիցներն են: Երրորդ և չորրորդ հատորներում, Վ. Ի. Լենինի բարեկամներն ու զինակիցները— բանվորները, գյուղացիները, զինվորներն ու նավաստիները պատմում են Լենինի վիթխարի գործունեության մասին սովետական ժամանակաշրջանում: Միջազգային կոմունիստական և բանվորական շարժման մասնակիցների հուշերը զետեղված են հինգերորդ հատորում: Հատորները լավ կձևավորվեն, այն հարուստ կլինի լուսանկարներով, կերպարվեստի ռեպրոդուկցիաներով:

Լույս են ընծայվել Մ. Գորկու **Վ. Ի. Լենին**, Ա. Վ. Լունաչարսկու **Պատմվածքներ Լենինի մասին** գրքերը, Իլյիչի կրտսեր քրոջ՝ Մ. Ի. Ուլյանովայի հիշողությունները **Լենինի մասին**:

Վ. Ի. Լենինը թողել է գաղափարական ու տեսական հսկայական ժառանգություն: Լենինի բոլոր գրվածքների, ասույթների ու կատարած գործերի պատմական, տեսական ու գործնական նշանակությունը, իրոք, մեծ է ու մնայուն: Շատ գրքերի էջերը կբացահայտեն լենինիզմի մեծությունը, ցույց կտան նրա համաշխարհային-պատմական դերը: Առաջին անգամ է ձեռնարկված այնպիսի գրքաշարի հրատարակումը, ուր ուսումնասիրված են Լենինի ուսմունքի ամենաբազմազան կողմերը:

Շատ հետաքրքրական է Վ. Գ. Աֆանասևի և Ս. Վ. Ալեքսանդրովի **ՍՄԿԿ XXIII համագումարը և լենինիզմի մի քանի հարցեր** գիրքը: Դրա էջերը կբացահայտեն ՍՄԿԿ լենինյան մոտեցումը համաշխարհային հեղափոխական պրոցեսի վերլուծությանը և կոմունիստական շինարարության պրոբլեմները ՍՍՀՄ-ում: Այնտեղ լուսաբանված են XXIII համագումարի որոշումներում ու հոբելյանական նյութերում արտահայտված՝ ՍՄԿԿ գիտական, ստեղծագործական վերաբերմունքը սովետական սոցիալիստական հասարակության զարգացման հանդեպ, ցույց է տրված ՍՄԿԿ ղեկավար դերը սովետական հասարակարգում:

Մյուս կարևոր հրատարակություններից է **Վ. Ի. Լենինը նոր տիպի կուսակցության ստեղծողն է** մենագրությունը: Դա սովետական պատմագիտության մեջ առաջին ուսումնասիրությունն է, որտեղ լուսաբանվում է Վ. Ի. Լենինի դերը նոր տիպի, առաջին պրոլետարական կուսակցության ստեղծման գործում, ցույց է տրվում Վլադիմիր Իլյիչի տեսական ու պրակտիկ գործունեությունը՝ պետերբուրգյան, իսկրայական և հետիսկրայական շրջաններում, նրա կողմից կուսակցության մասին մարքսիստական ուսմունքի ստեղծագործական զարգացումը պատմական նոր իրադրության՝ օպորտունիստական խմբերի ու հոսանքների դեմ մղվող համառ պայքարի պայմաններում:

Սովետական ականավոր գիտնականների կոլեկտիվի՝ **Վ. Ի. Լենինը և գիտական կոմունիզմի պրոբլեմները** գրքում տեսականորեն մշակված են ժամանակակից հեղափոխական պրոցեսի կարևոր պրոբլեմները, սոցիալիստական հասարակարգի ստեղծման ուղիները և նրա առաջընթացը դեպի կոմունիզմ, կոմունիստական կուսակցության դերը սոցիալիստական հասարակարգում, սոցիալիստական երկրների փոխհարաբերության, պատերազմի և խաղաղության, բուրժուական գա-

ղափարախոսության, ժամանակակից աջ և «ձախ» ռևիզիոնիզմի դեմ մղվող պայքարի պրոբլեմները: Չափազանց հետաքրքրական կլինի **Վ. Ի. Լենինի պայքարը դոգմատիզմի և ռևիզիոնիզմի դեմ** մենագրությունը:

Ժամանակակից կոմունիստական և բանվորական շարժման վրա լենինյան գաղափարների ազդեցությանը, արդի փուլում կապիտալի իշխանության տապալման համար մղվող պայքարին է նվիրված **Լենինիզմը և ժամանակակից կոմունիստական և բանվորական շարժումը** գիրքը. ազգային հարաբերությունների հարցերը լուսաբանվում են **Լենինը և ազգային հարցը արդի պայմաններում** մենագրության մեջ:

Սոցիալիստական և կոմունիստական շինարարության մի քանի կարևորագույն հարցեր են մշակվում **Սոցիալիստական ինդուստրացման լենինյան պլանը և կուսակցության պայքարը դրա կենսագործման համար, Լենինյան կոոպերատիվ պլանը և կուսակցության պայքարը հանուն դրա կենսագործման, Լենինիզմը և կոմունիստական շինարարության պրոբլեմները** և այլ աշխատություններում:

Մի շարք գրքերում շարադրվում են կուսակցական ու պետական աշխատանքի լենինյան սկզբունքները. այդպիսիք են, մասնավորապես, **Կուսակցության շինարարության լենինյան սկզբունքների կենսունակությունը, Պետական ղեկավարման սկզբունքների հիմնավորումը Լենինի կողմից**: Պատմաբան-գիտնականների, փիլիսոփաների, կուլտուրայի գործիչների կոլեկտիվը ծավալուն մոնոգրաֆիաներ է նվիրել ՍՍՀՄ կուլտուրական հեղափոխության զարգացման հարցերին: Գրքում ցույց է տրվում ՍՄԿԿ ղեկավար և ուղղություն տվող դերը կուլտուրական հեղափոխության իրականացման գործում, նրա վիթխարի նշանակությունը՝ սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման լենինյան պլանում, ՍՍՀՄ կուլտուրական շինարարության փորձի միջազգային նշանակությունը: Մեծ տեղ է տրված բուրժուական գաղափարախոսության և բարոյագիտության, հակակոմունիզմի քարոզիչների հակագիտական մտածելակերպի քննադատությանը:

Եղբայրական կոմունիստական կուսակցությունների գործիչների գրած ոչ-մեծ բրոշյուրների շարքը կպատմի տարբեր երկրներում բանվորական շարժման զարգացման վրա լենինյան գաղափարների հսկայական ազդեցության, եղբայրական կոմունիստական և բանվորական կուսակցությունների կողմից լենինյան ուսմունքի ստեղծագործական կիրառման մասին:

Գրքերի մի ամբողջ շարք կներկայացվի գիտամասսայական և մասսայական հրատարակությամբ: Կենսագրական համառոտ ակնարկը կպատմի Վլադիմիր Իլյիչի կյանքի և գործունեության հիմնական էտապների, Լենինի՝ որպես ամբողջ աշխարհի աշխատավորության առաջնորդի ու ղեկավարի, կոմունիստական կուսակցության կազմակերպչի մասին: Մեծ առաջնորդի, կոմունիստ-հեղափոխականի, միաժամանակ և հասարակ, սրտացավ, կենսուրախ մարդու կերպարն են կերտում **Լենին-ընկերը, մարդը** գրքում զետեղված նամակները, Վ. Ի. Լենինի մասին եղած գրառումներն ու հիշողությունները: **Ուլյանովների ընտանիքի նամակագրությունը** գրքում ամփոփված նամակներն ու փաստաթղթերը կներկայացնեն ընթերցողներին այդ արտասովոր ընտանիքի անդամների մտքերը, ապրումները, ձգտումները, կվերստեղծեն նրանց հեղափոխական գործերի առանձին դրվագներ, ցույց կտան նրանց կյանքը էմիգրացիայում: Անշուշտ, հետաքրքրական կլինի **Ընկեր Լենին** գիրքը, ուր ժողովված են նրան հասցեագրված նամակները— լենինյան ինքնատիպ խոսքի վավերագրերը: Դրանք գալիս էին Լենինին բոլոր կողմերից, դրանց տակ ստորագրում էին բանվորներ, գյուղացիներ, ուսուցիչներ, բժիշկներ, քաղաքական գործիչներ, գիտության ու կուլտուրայի ականավոր ներկայացուցիչներ:

Առանձին հրատարակություններում կլուսաբանվեն ժողովուրդների բարեկամության, կուսակցական կյանքի լենինյան գաղափարները, հրապարակախոսական գործունեության սկզբունքներն ու նորմերը և այլն: Այդպիսին են մասամբ **Բարեկամության դրոշը, Լենինյան խոսքի ուժը** և այլ գրքեր:

Ինչպե՞ս, ինչպիսի՞ պայմաններում է ստեղծագործել Լենինը, ինչպե՞ս են պատրաստվել նրա աշխատությունները, տնվել ու հրատարակվել: Այս և շատ այլ հարցերի պատասխանն են տալիս **Ինչպե՞ս է Վ. Ի. Լենինը պատրաստել իր աշխատությունները, Անգնահատելի ժառանգության որոնումները** և այլ գրքեր:

Լենինի նամակները, հեռագրերը, երկտողերն ու կարգադրությունները նրա գրական ժառանգության օրգանական անքակտելի մասն են. դրանք կազմում են նրա երկերի տասը հատորը:

Լենինի գրագրության նշանակության, լենինյան նամակները գրվելու, հասցեատիրոջը հանձնվելու, տարածման պայմանների մասին են պատմում Գ. Դ. Օբիչկինի և Մ. Յա. Պանկրատովայի՝ **Վլադիմիր Իլյիչ Լենինի նամակները, Երկերի լիակատար ժողովածուի էջերից** գրքերը:

Երկրորդ լրացուցիչ հրատարակությամբ լույս կտեսնի Վ. Ի. Լենինի ընկերների, զինակիցների, ժամանակակիցների, միջազգային կոմունիստական և բանվորական շարժման ղեկավարների մասին գեղարվեստա-վավերագրական ակնարկների հինգհատորյակը: **Կուսակցության ակունքներում** գրքի հեղինակները— սովետական նշանավոր գրականագետները— պատկերել են, թե ինչպես են ապրել, աշխատել ու պայքարել Ն. Կ. Կրուպսկայան, Ն. Է. Բաումանը, Ի. Վ. Բաբուշկինը, Մ. Ի. Կալինինը, Գ. Մ. Կրժիժանովսկին, Ա. Վ. Լունաչարսկին և այլ բոլշևիկ-լենինյաններ: **Կուսակցությունը քայլում է հեղափոխության միջով** գրքի էջերում պատկերված են լենինյան գվարդիայի հեղափոխականների՝ Ֆ. Է. Ձերժինսկու, Ս. Մ. Կիրովի, Ս. Վ. Կոսիորի, Պ. Պ. Պոստիշևի, Յա. Է. Ռուձուտակի և այլոց կերպարները:

Լավագույն ակնարկների հատոր կկազմեն Վ. Ի. Լենինի կոմինտերնյան ընկերների ու զինակիցների՝ կոմունիստական ու բանվորական շարժման գործիչների՝ Կլարա Ցետկինի, Էռնստ Թելմանի, Ուիլյամ Գալախերի, Դիմիտրի Բլագոևի, Մորիս Թորեզի, Պալմիրո Տոլյատիի և ուրիշների մասին, որոնք ընթերցողներին հայտնի են **Մեր մոլորակի լենինյան գվարդիան** գրքից: **Լենինյան գաղափարների լույսով** և **Մեր նոր աշխարհը կշինենք մենք** գրքերը արտացոլելով Հոկտեմբերի մեծ հաղթանակը, լենինյան գաղափարների հաղթանակը էկոնոմիկայի, գիտության, կուլտուրայի բնագավառում, ցույց կտան սովետական ժողովրդի համաշխարհային-պատմական նվաճումները:

Լենինյան թեմաների լուսաբանման ասպարեզում կարևոր տեղ են գրավում նկարազարդ հրատարակություններն ու դիտողական նյութերը: Վավերագրերի, գեղարվեստական լուսանկարների, կերպարվեստի լավագույն ստեղծագործությունների միջոցով **Վ. Ի. Լենին** գեղարվեստական ֆոտո-լուսանկարային ալբոմը կարտացոլի մեծ առաջնորդի կյանքն ու գործունեությունը:

**Լենինն է ստեղծել** ֆաքսիմիլային ներալբոմը նվիրված է Վ. Ի. Լենինի՝ որպես կուսակցական մամուլի ստեղծողի, գործունեությանը: **Վ. Ի. Լենինի կյանքն ու գործունեությունը** ցուցահանդես-գրքում կամփոփվեն փաստաթղթեր, լուսանկարներ, Վ. Ի. Լենինի, նրա հարազատների, ընկերների և զինակիցների դիմանկարները, գեղեցիկ պլակատներ, որոնք օգնում են վերականգնելու մեծ կյանքի կարևոր էտապները, բացահայտում լենինյան գաղափարների հաղթանակը, ցույց տալիս կոմունիստական կուսակցության ղեկավար դերը սովետական հասարակության կյանքում, մեր ժողովրդի համաշխարհային-պատմական սխրանքները:

ՔԱՂՀՐԱՏԻ ՄԱՄՈՒԼԻ ԲՅՈՒՐՈ



# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԼԵՆԻՆՅԱՆ ԴՐՈՇՈՎ ՀԱՆՈՒՆ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՀԱՂԹԱՆԱԿԻ

(էջեր Անդրկովկասյան կուսկազմակերպությունների պատմությունից)

Սովետական իշխանության ամրապնդման, անդրկովկասյան հանրապետությունների քաղաքական, տնտեսական և կուլտուրական զարգացման խնդիրները, ազգային հարցում ամեն տեսակի թեքումների դեմ պայքարը հանուն անդրկովկասյան ժողովուրդների ինտերնացիոնալ համախմբման, պահանջում էին Վրաստանում, Հայաստանում և Ադրբեջանում ստեղծել կոմունիստական կուռ կուսակցություններ: ՌԿ(բ)Կ Կենտկոմի Կովկասյան բյուրոն, ապա նաև Անդրերկրկոմը հսկայական ջանքեր գործադրեցին անդրկովկասյան կոմունիստական կազմակերպությունների շարքերի միասնության ամրապնդման համար:

Ժողովրդական տնտեսությունը երկրում վերականգնվում ու զարգանում էր տրոցկիզմի, բուրժուական նացիոնալիզմի և սովետական իշխանության մյուս թշնամիների դեմ մղվող պայքարի պայմաններում: Օգտվելով Վ. Ի. Լենինի հիվանդությունից և ժողովրդական տնտեսության վերականգնման ընթացքում ծառացած դժվարություններից, 1923 թ. վերջերին Տրոցկին և նրա համախոհները կուսակցության ներսում դիսկուսիա հարուցեցին: Դեռևս 1923 թ. հոկտեմբերին կայացած ՌԿ(բ)Կ Կենտկոմի և ԿՎՀ-ի միացյալ պլենումը վճռականապես դատապարտեց տրոցկիստների պառակտիչ գործունեությունը: Իսկ Վրաստանի Կ(բ)Կ Կենտկոմի և ԿՎՀ-ի ընդլայնված պլենումը (1923 թ. դեկտեմբեր) լիովին հավանություն տվեց ՌԿ(բ)Կ Կենտկոմի և ԿՎՀ-ի հոկտեմբերյան միացյալ պլենումի որոշումներին:

Վրաստանի կուսկազմակերպություններում կոմունիստների ճնշող մեծամասնությունը դատապարտեց տրոցկիստներին: 1924 թ. նոյեմբերին Վրաստանի Կ(բ)Կ Թիֆլիսի կոմիտեի ընդլայնված պլենումը, լսելով կուսակցության քաղկոմի քարտուղար ընկ. Մ. Կախիանիի զեկուցումը՝ «Տրոցկու վերջին գրական ելույթի շուրջ», սուր քննադատեց տրոցկիստների թշնամական ելույթը: Թիֆլիսի քաղաքային կուսակցական կազմակերպության ակտիվի միացյալ ժողովը (1924 թ. դեկտեմբեր), ուր զեկուցումով հանդես եկավ Վ. Վ. Կույբիշևը, օպոզիցիային լուրջ հակահարված տվեց:



Հայաստանի քաղաքային և գավառային կուսակցական բոլոր կազմակերպությունները դիսկուսիայի ընթացքում տրոցկիստներին արժանի հակահարված տվեցին: Երևանի, Ալեքսանդրապոլի, Ալավերդու, Ղափանի, Ղարաքիլիսայի և կուսակցական այլ կազմակերպություններ միաձայն հավանություն տվեցին ՌԿ(բ)Կ Կենտկոմի գլխավոր գծին: Հայաստանի կոմկուսակցության III համագումարը (1924 թ. մարտ) ի մի բերեց 1923 թ. ներկուսակցական դիսկուսիայի արդյունքները և ընդգծեց, որ Հայաստանի կոմկուսակցությունը միաձույլ է ու հավատարիմ լենինիզմին:

Ադրբեջանի կուսկազմակերպությունները ևս միաձայն դատապարտեցին տրոցկիստական օպոզիցիայի կուրսը: 1923 թ. դեկտեմբերի 21-ին Բաքվի կուսկազմակերպության բջիջների բյուրոյի կոնֆերանսը ակտիվի հետ (որտեղ զեկուցողը Ս. Մ. Կիրովն էր), միաձայն բանաձև ընդունեց, լիովին հավանություն տալով ՌԿ(բ)Կ Կենտկոմի քաղաքական գծին և խիստ դատապարտեց տրոցկիստական օպոզիցիան: Բաքվի բոլոր կազմակերպություններից տրոցկիստական օպոզիցիան ստացավ ընդամենը 142 ձայն[1]: Այսպիսով, ողջ երկիրը ջախջախիչ հակահարված տվեց օպոզիցիային: Անդրկովկասյան երկրային կոմիտեն կոչ էր անում երկրամասի կոմունիստներին ամեն գնով պահպանել կոմկուսակցության լենինյան միասնությունը տրոցկիստներից և այլ թշնամիներից, նրանցից, ովքեր կհանդգնեն ոտնձգություններ անել այդ միասնությունը խախտելու համար: Այս կոչին հավանություն տվեց Անդրերկրկոմի պլենումը (1923 թ., 22—23 դեկտեմբեր), որը նվիրված էր «ներկուսակցական դրության» խնդիրներին: Այդ առթիվ զեկուցեց Գ. Կ. Օրջոնիկիձեն:

Պլենումը կոչ էր անում բոլոր կոմունիստներին՝ համախմբվել ՌԿ(բ)Կ Կենտկոմի շուրջը, պահպանել մեր կուսակցության միասնությունը և հեղափոխական հեղինակությունը:

1924 թ., ինչպես հայտնի է, լենինյան կոչով հարյուր հազարավոր առաջավոր բանվորներ ընդունվեցին կուսակցության շարքերը: Միայն Անդրկովկասի կոմկուսակցության մեջ ընդունվեցին ավելի քան 12000 բանվոր: Երկրամասի հանրապետությունների կոմկուսակցությունների առջև խնդիր դրվեց՝ երիտասարդ կոմունիստներին խորապես ծանոթացնել մեր կուսակցության հերոսական պատմությանը և մենշևիկների, էսեռների, տրոցկիստների, բուրժուա-նացիոնալիստների ու այլ թշնամիների դեմ նրա հեղափոխական պայքարին՝ հանուն կուսակցության շարքերի միասնության և միաձուլության:

1924 թ. ապրիլի 13-ին Գ. Կ. Օրջոնիկիձեն «Ներկուսակցական դրության» մասին Անդրկովկասի պլենումին տված զեկուցման մեջ բացահայտեց տրոցկիստների օպոզիցիայի պառակտիչ գործունեությունը, ցույց տալով, թե որպիսի վտանգ են ներկայացնում կոմունիստական կուսակցության և սովետական իշխանության համար կուսակցության մեջ գոյություն ունեցող ֆրակցիաներն ու խմբավորումները: 1924 թ. դեկտեմբերին Անդրերկրկոմի պլենումը քննարկեց լենինյան կոչի գործնական ընթացքը: Պլենումի որոշման մեջ նշվեց, որ տարբեր ազգությունների առաջավոր բանվորների կուսակցության շարքերն ընդունվելը, հատկապես ադրբեջանցիների, Բաքվի կուսկազմակերպությունում կարևորագույն գործոն է Անդրկովկասի աշխատավորների շրջանում եղբայրական համագործակցության ամրապնդման համար: Երիտասարդ կոմունիստներին կոմունիստական ոգով դաստիարակելու համար

[1]. Партархив Азерб. филиала ИМЛ, ф. 2, оп. 22, д. 54, л. 3.

պլենումը կուսկազմակերպությունների ուշադրությունը սևեռեց կուսակցականների շրջանում կարճ ժամկետում անգրագիտությունը և կիսագրագիտությունը վերացնելու, քաղլուսավորական աշխատանքի ամրապնդման, առանձնապես ազգային լեզուներով մասսայական հանրամատչելի գրականության հրապարակման վրա[1]: Վրաստանի, Հայաստանի և Ադրբեջանի կոմունիստական կուսկազմակերպությունները մեծ աշխատանք ծավալեցին վերոհիշյալ որոշումները կենսագործելու համար:

Վերականգնման ժամանակաշրջանի վերջերին երկրի առջև ծառացան սոցիալիստական ուղիով հետագա զարգացման խնդիրները: 1925 թվականի ապրիլին կայացավ ՌԿ(բ)Կ XIV կոնֆերանսը, որը հավանություն տվեց ՍՍՀՄ-ում սոցիալիզմ կառուցելու կուսակցության քաղաքականությանը: Կոնֆերանսի որոշումը օրենք դարձավ յուրաքանչյուր կոմունիստի համար: Այդ որոշմանը հակակայեց Կամենևի ու Զինովևի գլխավորած «նոր օպոզիցիան»: Այն գտնում էր, որ մեր երկրում չի կարելի սոցիալիզմ կառուցել, քանի դեռ Արևմուտքում չի հաղթանակել սոցիալիստական հեղափոխությունը:

Կուսակցության XIV համագումարը (1925 թ. դեկտեմբեր) վճռական հակահարված տվեց օպոզիցիայի բոլոր փորձերին, որը ջանում էր երկիրը շեղել լենինյան ուղուց: Համագումարը սովետական ողջ ժողովրդի առջև պատմական խնդիր դրեց. կարճ ժամկետում մեր երկիրը ագրարային, հետամնաց երկրից դարձնել առաջավոր, ինդուստրիալ:

Անդրկովկասյան կոմունիստական կազմակերպությունների IV համագումարը (1925 թ. դեկտեմբեր) Անդրերկրկոմի զեկուցման առթիվ ընդունած բանաձևում նշեց, որ սոցիալիզմի կառուցման ճանապարհին ծառացած խոչընդոտները կարելի է հաղթահարել միայն լենինիզմի վրա հիմնված կուսակցության շարքերի անխախտ միասնության պայմաններում[2]:

1926 թ. սկզբներին տեղի ունեցան Վրաստանի, Հայաստանի, Ադրբեջանի կոմունիստական կուսակցության պլենումները, ուր հանրագումարի բերվեցին կուսակցության XIV համագումարի արդյունքները, ընդունվեցին համապատասխան որոշումներ, որոնք ուղղված էին Անդրկովկասի կուսակցական կազմակերպությունների շարքերի միասնության հետագա ամրապնդմանը: 1926 թ. հուլիսին ՀամԿ(բ)Կ Կենտկոմի և ԿՎՀ միասնական պլենումից հետո, ուր մերկացվեց և դատապարտվեց տրոցկիստական-զինովևական հակակուսակցական բլոկի գործունեությունը, 1926 թ. օգոստոսին Թիֆլիսում կայացավ Անդրերկրկոմի, երկրամասային վերահսկողության կոմիտեի, Ադրբեջանի, Հայաստանի և Վրաստանի կոմունիստական կուսակցության Կենտկոմների և ԿՎՀ-ների համատեղ նիստը: Պլենումի արդյունքների մասին զեկուցեց Գ. Կ. Օրջոնիկիձեն: Մասնակիցները հավանություն տվեցին ՀամԿ(բ)Կ Կենտկոմի և ԿՎՀ պլենումի որոշումներին, դատապարտեցին տրոցկիստական-զինովևական բլոկը և Անդրկովկասի բոլոր կոմունիստական կազմակերպությունների անունից իրենց պատրաստակամությունը հայտնեցին՝ կանգնելու լենինյան միասնական կուսակցության դիրքերում, պայքարելու լենինիզմի ամեն տեսակ խեղաթյուրումների դեմ[3]: Դեկտեմբերին զինովևական-տրոցկիստական բլոկի մասնակիցներն արտահայտվեցին կոմինտերնի գործ-

[1]. Տե՛ս Партархив Арм. филиала ИМЛ, ф. 1, оп. 4, д. 11, л. л. 18—19.

[2]. Տե՛ս Стенограф, очет IV съезда коммунистических организаций Закавказья, Тифлис, 1926, стр. 437.

[3]. Տե՛ս журнал «Известия Закрайкома ВКП(б)», 1926, № 6, стр. 1—2.



կոմի պլենումում, ջանալով դիսկուսիան տեղափոխել միջազգային ասպարեզ, միաց-բայց պարտության մատնվեցին: Այդ օրերին ԱԿ(բ)Կ Կենտկոմի և ԿՎՀ միացյալ պլենումը (1926 թ. դեկտեմբերի 16), լսելով Լ. Ի. Միրզոյանի զեկուցումը օպոզիցիայի ելույթի շուրջ՝ կոմինտերնի գործկոմի պլենումում բանաձև ընդունեց, ուր վստահություն էր հայտնում, որ ՀամԿ(բ)Կ կոմունիստական ինտերնացիոնալի հետ կգնա սոցիալիզմի շինարարության ուղիով, կհաղթահարի բոլոր ներքին հակասություններն ու դժվարությունները[1]:

Ինչպես հայտնի է, 1927 թ. միջազգային դրությունը սրվել էր: Սովետական իշխանության թշնամիները բավական հույսեր էին կապել կուսակցության մեջ գոյություն ունեցող օպոզիցիոն տարրերի հետ: Անդրկովկասի հանրապետություններում գլուխ էր բարձրացրել նացիոնալիզմը, որին հովանավորում էին հակահեղափոխական կուսակցությունների մնացուկներն ու մենշևիկները, դաշնակները, մուսավաթականները, նէպմաններն ու կուլակային տարրերը: Անդրկովկասի կոմկուսակցության մեջ օպոզիցիայի դեմ վճռական պայքարը միաժամանակ պետք է ուղղված լիներ նացիոնալիզմի դեմ, ինչպիսի ձևով էլ այն հանդես գար:

Անդրերկրկոմի VI պլենումը (1927 թ. օգոստոսի 30-ին), լսելով Մ. Դ. Օրախելաշվիլու հաղորդումը ՀամԿ(բ)Կ Կենտկոմի և ԿՎՀ միացյալ պլենումի մասին, իր ընդունած բանաձևում հավանություն տվեց միացյալ պլենումի որոշմանը և ի ղեկավարություն ընդունեց: Պլենումը գոհունակությամբ նշեց, որ Անդրկովկասի կուսակցական կազմակերպությունները վերջնականապես հակահարված են տվել օպոզիցիային: Անդրերկրկոմի պլենումը պարտավորեցրեց Անդրկովկասի հանրապետությունների կենտկոմներին՝ վերջ տալ օպոզիցիայի ֆրակցիոն ամեն մի աշխատանքին, վտարել կուսակցությունից նրանց, ովքեր Կենտկոմի և ԿՎՀ վերջին միացյալ պլենումից հետո կշարունակեն իրենց ֆրակցիոն գործունեությունը[2]:

Վրաստանի, Հայաստանի և Ադրբեջանի կոմունիստական կազմակերպությունները, մերկացնելով օպոզիցիայի ֆրակցիոն գործունեությունը, միաժամանակ գաղափարական սուր պայքար կազմակերպեցին նացիոնալիզմի դեմ, անողոքաբար մերկացրին նրա գաղափարախոսներին և երկրամասի աշխատավորությանը դաստիարակեցին ինտերնացիոնալիզմի ոգով:

1927 թ. օգոստոսին Բաքվի կուսակցական կազմակերպության ակտիվի ժողովը քննարկեց ՀամԿ(բ)Կ Կենտկոմի և ԿՎՀ միացյալ պլենումի արդյունքները (1927 թ. հուլիսի 29—օգոստոսի 9): Ընդունած բանաձևին, որը հավանություն տվեց միացյալ պլենումի որոշմանը, 1000 կոմունիստից միայն 19-ը դեմ քվեարկեցին: Կուսակցության ակտիվը ընդունած բանաձևում տեղական օպոզիցիոներներին նախազգուշացնում էր, որպեսզի նրանք դադարեցնեն ֆրակցիոն պայքարը: Բայց, քանի որ օպոզիցիոներները որևէ եզրակացության չհանգեցին, 1927 թ. հոկտեմբերի 4-ին Ադրբեջանի Կ(բ)Կ ԿՎՀ 10 հոգու վտարեց կուսակցությունից: Բաքվի կուսակցական կազմակերպության ակտիվի ժողովը հոկտեմբերի 18-ին լիովին հավանություն տվեց Ադրբեջանի Կ(բ)Կ ԿՎՀ այդ որոշմանը: Բնորոշ է, որ շրջանային կոնֆերանսի 4227 պատգամավորներից միայն 3-ը կողմ քվեարկեցին օպոզիցիային, իսկ 2-ը՝ ձեռնպահ մնացին: Ե՛վ Բաքվի XVII կուսակցական կոնֆերանսը, և՛ ԱԿ(բ)Կ VIII համա-

[1]. Տե՛ս Партархив Груз. филиала ИМЛ, ф. 13, оп. 1, д. 1632, лл. 94—95.

[2]. Տե՛ս Партархив Груз. филиала ИМЛ, ф. 13, оп. 1, д. 1967, л. 33.

գումարը արժանի հակահարված տվին օպոզիցիային, իսկ Բաքվի կուսկազմակերպության կոմբջջի վերընտրությունները մեկ անգամ ևս հաստատեցին կուսակցական մասսաների միասնությունն ու ինտերնացիոնալ համախմբվածությունը[1]:

1926 թ. աշնանը Վրաստանի օպոզիցիոներները (Կ. Ցինցաձե, Մ. Օկուջավա, Բ. Կավթարաձե, Ի. Ջալուցկին և ուրիշներ), երբ Թիֆլիսի կազմակերպության ժողովում քննում էին ՀամԿ(բ)Կ ԿԿ և ԿՎՀ հուլիսյան միացյալ պլենումի արդյունքները և կուսկազմակերպությունների անելիքները, իրենց ներկայացուցիչներին ուղարկեցին այնտեղ: Ակտիվի ժողովը ցույց տվեց իր միասնությունը. 3000 կոմունիստներից օպոզիցիայի օգտին քվեարկեցին միայն 25-ը: Նրանք պարտություն կրեցին նաև Բաթումի, Սուխումի, Քութայիսի, Փոթի, Ճիաթուրի և Վրաստանի մյուս քաղաքների ու գավառների կուսակտիվի ժողովներում:

Բայց, քանի որ օպոզիցիոներները հետևություններ չարեցին ու չդադարեցրին պայքարը, 1926 թ. հոկտեմբերի 15-ին Վրաստանի Կ(բ)Կ Կենտկոմի և ԿՎՀ միացյալ պլենումը քննեց մի խումբ տեղական օպոզիցիոներների կուսակցությունից վտարելու հարցը: Անդրկովկասի հանրապետությունների բոլոր կուսակցական կազմակերպությունները քննարկեցին XV կուսկոնֆերանսի արդյունքները և լրիվ հավանություն տվին դրանց: Ղեկավարվելով մեր երկրի կոմունիստական կուսակցության համագումարների որոշումներով, Վրաստանի, Ադրբեջանի և Հայաստանի աշխատավորները, ինչպես և սովետական ողջ ժողովուրդը, համառորեն աշխատում էին տնտեսական ու կուլտուրական շինարարության բոլոր բնագավառներում: Իսկ տրոցկիստները հանդես եկան «83»-ի տխրահռչակ պլատֆորմով:

ՀամԿ(բ)Կ XV համագումարի նախօրեին թեզիսներ հրապարակվեցին օրվա հրատապ հարցերի և դրանց շուրջ համակուսակցական դիսկուսիա անցկացնելու վերաբերյալ: Վրաստանի կուսկազմակերպությունները դիսկուսիայի ընթացքում արժանի հակահարված հասցրին օպոզիցիային: 1927 թ. նոյեմբերին կայացավ Վրաստանի Կ(բ)Կ V համագումարը, որը միահամուռ դատապարտեց օպոզիցիոն պլատֆորմը: Ներկուսակցական պայքարը պակաս հույսեր չէր ներշնչում նաև մեր երկրից դուրս շպրտված նացիոնալիստական կուսակցությունների պարագլուխներին: Հենց այդ ժամանակ վրացական մենշևիկների լիդեր Ն. Ժորդանիան մարտնչող մենշևիզմի տակտիկայի շուրջ կրկին հանդես եկավ վրացական մենշևիկյան կուսակցության մնացուկներին ուղղված դիրեկտիվով ու նամակներով: Կենտրոնական օպոզիցիայի ելույթի կապակցությամբ նա, այսպես ասած, ՀամԿ(բ)Կ ճգնաժամ էր կանխագուշակում և դիմելով վրացի կոմունիստներին, կոչ էր անում ողջամիտ լինել, անհապաղ կապերը խզել Սովետական Ռուսաստանից, պայքարել կուսակցության քաղաքականության դեմ, «եթե ուզում են վրաց ազգի առջև թեթևացնել իրենց պատասխանատվությունը»[2]:

Սակայն սովետական իշխանության թշնամիների այդ չարամիտ մարգարեություններն Անդրկովկասում այս անգամ էլ, ինչպես սովետական իշխանության հաստատման առաջին տարիներին, չարդարացան: Վրաց կոմունիստները վճռականապես հանդես եկան օպոզիցիայի դեմ և ցուցադրեցին ի-

1. Տե՛ս Партархив Груз. филиала ИМЛ, ф. 13, оп. 1, д. 2223, лл. 9—14.
2. Տե՛ս Партархив Груз. филиала ИМЛ, ф. 14, оп. 1, д. 2246, лл. 890—891.



րենց անսասան միասնությունն ու նվիրվածությունը մեր երկրի կոմունիստական կուսակցության գլխավոր գծին:

Բ. Մ. Կախիանին Վրաստանի Կ(բ)Կ V համագումարին տված իր զեկուցման մեջ ընդգծեց, որ «Վրաստանի կոմունիստական կուսակցության քաղաքականությունը... դա Մոսկվայի և կոմինտերնի քաղաքականությունն է ու այս քաղաքականությունից, չնայած մեր թշնամիների և կուսակցության ներսում գտնվող օպոզիցիոներների կատաղի ոռնոցներին, չենք հրաժարվել. մենք այդ փորձված քաղաքականությունից չենք հեռանա»[1]:

Անկուսակցական բանվորների պատգամավորները, ողջունելով համագումարը, պատրաստակամություն հայտնեցին անսասան կանգնելու նրա քաղաքականության դիրքերում: Համագումարը կուսակցությունից վտարեց 9 օպոզիցիոներների և հանձնարարեց կուսակցության վերահսկիչ հանձնաժողովին՝ վերանայելու նաև մյուսների գործերը:

ՀամԿ(բ)Կ ԿԿ և ԿՎՀ հուլիսյան միացյալ պլենումի արդյունքները քննարկվեցին Երևանի կազմակերպության համաքաղաքային ժողովում: Ժողովը նշեց, որ սոցիալիստական շինարարության հաջողության երաշխիքը լենինյան կուսակցության շարքերի միասնությունն է, հակալենինյան բոլոր թեքումների ու հոսանքների դեմ անողոք պայքարը[2]:

Միացյալ պլենումի արդյունքների շուրջ Լենինականում զեկուցումով հանդես եկավ ՀամԿ(բ)Կ Անդրերկրկոմի քարտուղար Հ. Նազարեթյանը: Ժողովը լրիվ հավանություն տվեց պլենումի որոշումներին[3]: ՀամԿ(բ)Կ Կենտկոմի և ԿՎՀ հուլիսյան միացյալ պլենումի որոշմանը հավանություն տվող բանաձևեր ընդունվեցին Ղարաքիլիսայի, Ալավերդու, Ղափանի, Էջմիածնի և հանրապետության այլ քաղաքների ու շրջանների կուսակցական կազմակերպությունների ժողովներում:

1926 թ. նոյեմբերին Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմի, ԿՎՀ և գավառային կուսկազմակերպությունների ընդլայնված պլենումը, լսելով Ս. Լուկաշինի զեկուցումը XV համամիութենական կուսակցական կոնֆերանսի արդյունքների մասին, միացավ այդ որոշումներին: 1927 թ. հուլիսին ՀԿ(բ)Կ Կենտկոմի V պլենումը, օրակարգի այլ կարևոր հարցերի հետ մեկտեղ, լսեց հանրապետության ժողկոմխորհի նախագահ Ս. Համբարձումյանի ինֆորմացիոն հաղորդումը կոմինտերնի գործկոմի պլենումում տրոցկիստական-զինովևական օպոզիցիայի ունեցած ելույթի մասին: ՀԿ(բ)Կ Կենտկոմի հուլիսյան պլենումի մասնակիցների ճնշող մեծամասնությունը դատապարտեց օպոզիցիայի գիծը և սրեց տեղական օպոզիցիայի դեմ պայքար մղելու հարցը:

Այդ պլենումում օպոզիցիոն եռյակի անունից (Ռ. Սաֆրազբեկյան, Գ. Փիրզուլյան, Պ. Ղազարյան) հանդես եկավ Ռ. Սաֆրազբեկյանը և շարադրեց իր դեկլարացիան, ուր քննադատելով Համբարձումյանի ելույթի դրույթները, դեմ արտահայտվեց բանաձևին: Պլենումը մերժեց, այսպես կոչված՝ դեկլարացիան և օպոզիցիոներների դեմ վճռական պայքար մղելու առաջարկ արեց: ՀԿ(բ)Կ Կենտկոմի V համագումարը (1927 թ. նոյեմբեր) ի մի բերեց ներկուսակցական դիսկուսիայի արդյունքները և միացավ՝ տրոցկիստական ֆրակցիայի լիդերներին կուսակցությունից վտարելու վերաբերյալ ԿՎՀ և ՀամԿ(բ)Կ Կենտկոմի հոկտեմբերյան միացյալ պլենումի որոշումներին:

1. Партархив Груз. филиала ИМЛ, ф. 14, оп. 1, д. 2246, лл. 890—891.
2 Տե՛ս «Խորհրդային Հայաստան», № 182, 1926 թ.:
3 Տե՛ս ՄԼԻ Հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 1, ց. 8, գ. 38, թ. 21:

Միաժամանակ համագումարը հանձնարարեց ՀԿ(բ)Կ Կենտկոմին և ԿՎՀ-ին վերջ դնել տեղական օպոզիցիոներների հետագա գործունեությանը[1]: Համագումարը օպոզիցիոներներին վտարեց կուսակցությունից: 1927 թ. նոյեմբերի 21—25-ին կայացավ անդրկովկասյան կոմունիստական կուսակցությունների V համագումարը, որն ի մի բերեց երկրամասի կուսկազմակերպությունների պայքարի արդյունքներն ընդդեմ տեղական օպոզիցիոներների, հանուն կուսշարքերի լենինյան միասնության: ՀամԿ(բ)Կ Անդրերկրկոմի քաղաքական և կազմակերպական հարցերի շուրջ հաշվետվության առթիվ կայացված բանաձևում մեծ գոհունակությամբ ընդգծվում էր, որ 1922 թ. Վ. Ի. Լենինի գլխավորությամբ մեր կուսակցության դիրեկտիվների հիման վրա ստեղծված Անդրֆեդերացիան կենսունակ է, կանգուն և համապատասխանում է այդ ժողովուրդների համատեղ պայքարի ու եղբայրական համագործակցության ձևերին, արտահայտում է այդ ժողովուրդների քաղաքական, տնտեսական և կուլտուրական շահերը[2]:

Անդրկովկասի բոլոր վայրերի կուսկազմակերպությունները քննարկեցին կուսակցության XV համագումարի արդյունքները և միահամուռ հավանություն տվեցին դրա որոշմանը:

Այսպիսով, Անդրկովկասի կոմունիստական կազմակերպությունները հավատարիմ մնացին լենինյան կուսակցության միասնությանը և մեծ ջանքեր գործադրեցին իրենց շարքերի հետագա աճի ու ամրապնդման համար: Ի պատասխան Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության X տարեդարձի առթիվ ՀամԿ(բ)Կ Կենտկոմի դիմումի, ուր կոչ էր արվում լավագույն բանվորներով ու բանվորուհիներով համալրել կուսակցության շարքերը, Անդրկովկասի կոմունիստական կազմակերպությունները հարյուրավոր առաջավոր բանվորների ընդունեցին կուսակցության մեջ:

Հոկտեմբերյան կոչերի առթիվ Անդրկովկասի կուսկազմակերպությունների կատարած աշխատանքների շնորհիվ 1928 թ. ապրիլի 1-ին երկրամասի կազմակերպությունների անդամ-թեկնածուների ընդհանուր թիվը հասավ 74.408 հոգու, որից Վրաստանում՝ 31.297, Ադրբեջանում՝ 33.769, Հայաստանում՝ 9.342 հոգի:

Կուսակցության շարքերն էին ընդունվում Անդրկովկասի բանվոր դասակարգի բոլոր ազգությունների լավագույն ներկայացուցիչները: Սկսած քաղաքային և վերջացրած գավառային կուսկազմակերպություններով, արտադրության առաջին կոմբջիջներից մինչև գյուղական կոմբջիջները, ամենուր պահպանվում էր այդ սկզբունքը: Պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքը դա այն հիմքն էր, որի վրա ստեղծվում, աճում և ամրապնդվում էին անդրկովկասյան հանրապետությունների կոմունիստական կուսակցությունները: Վրաստանի, Հայաստանի և Ադրբեջանի կոմունիստական կազմակերպություններն իրենց ողջ ուժերն ուղղեցին Անդրկովկասի կոմունիստական կուսակցության միասնության հետագա ամրապնդմանը, այն համարելով երկրամասի ժողովուրդների հաղթանակի երաշխիքը՝ սոցիալիստական շինարարության բոլոր ճակատներում:

**Ի. Ի. ԹԱՄՐԱԶՈՎԱ**

[1] ՏԵ՛ս ՄԼԻ Հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 1, գ. 2, գ. 9, թթ. 56—57:

[2]. Пятый съезд коммунистич. организаций Закавказья (Стенограф. отчет), Тифлис, 1928, стр. 285.

# ԿՈՄՈՒՆԻՍՏ ՄԵԽԱՆԻԶԱՏՈՐԸ



Շիրակի գողտրիկ անկյուններից մեկում ընկած Հայկավան գյուղը թիկնել է դարավանդին՝ կանաչ թիկնոցն ուսերին առած։ ...Հայկավան։ Այստեղ աշխատանքային իր կյանքի առաջին էջերն է գրել սոցիալիստական աշխատանքի հերոս, անվանի կոմբայնավար, կոմունիստ Քերոբ Քերոբյանը։ Ամռանը, երբ կոլտնտեսության դաշտերի ոսկե հասկերի ծփանքը միանում է Ախուրյանի ջրերի խշշոցին, անվանի կոմբայնավարն իր կոմբայնով նավարկում է հասուն արտերի անսահման ծովում։ 26 տարի շարունակ նա ղեկի մոտ նստած իր կյանքի գեղեցիկ լեգենդն է հյուսել սև ցելերի մեջ։ Նրա համար աշխատանքը դարձել է տարերք, երգ է դարձել ու բալլադ։ Կոմունիստ Քերոբ Քերոբյանն աշխատանքային մեծ վաստակի տեր է, հմուտ մեխանիզատոր։ Շատերի նման նա էլ աշխատանքով է հերոսացել։ Աշխատանքն է նրան բերել անուն ու վաստակ, բարձր պատվի արժանացրել։ Ահա թե ինչու նա աշխատում է խղճով, սրտի թելադրանքով և կոմունիստական վերաբերմունք ունի աշխատանքի նկատմամբ։ Իր հայրենի գյուղի տարեգրության պատմության մեջ անմոռաց շատ էջեր է գրել նա։ Քերոբյանը վաղ հասակից է սիրել հողագործի ազնիվ աշխատանքը, որը նրա ներքնաշխարհը հարստացրել է բնավորության ազնիվ ու գեղեցիկ գծերով։

Անվանի կոմբայնավարը՝ Քերոբ Քերոբյանը, հետաքրքրական շատ դրվագներ է պատմում իր աշխատանքային կյանքից ու ես գրառումներ եմ կատարում։ Հաճախ նրա մտքերը լրացնում են աշխատանքային ընկերները, կոլտնտեսության նախագահ Արշալույս Եղիազարյանը և կուսկազմակերպության քարտուղար Վրույր Հլղաթյանը։ Պատմում է նա, ու վերստին Շիրակի գեղեցիկ անկյուններից մեկում ընկած Ախուրյանի շրջանի Հայկավան գյուղն է իմ մտապատկերում՝ իր աշխատասեր մարդկանցով, ցորենի ծով արտերով ու երկինք միտած թոնիրների կապույտ ծխով։

26 տարի կոմբայնի ղեկի մոտ։ Քիչ ժամանակամիջոց չէ։ Տարիների հետ նա ձեռք է բերել աշխատանքի հա-

րուստ փորձ ու հմտություն, դարձել իր գործի իսկական վարպետը ու հիմա ինքն է ուրիշներին սովորեցնում կոմբայնավարի մասնագիտությունը։ Նրանց կոմբայնային բրիգադան մի քանի տարի է, ինչ պայքարում է կոմունիստական աշխատանքի պատվավոր կոչման արժանանալու համար։ Նրանք աշխատում են կոմունիստաբար, մեկը բոլորի և բոլորը մեկի համար նշանաբանով։ Առաջավոր կոմբայնավարներն օգնում են միմյանց աշխատանքում և կենցաղում, ուրախանում մեկը մյուսի հաջողություններով։

Հայկավանի կոլտնտեսությունն ամեն տարի հացահատիկային կուլտուրաների հարուստ բերք է աճեցնում։ Կոլտնտեսության ձեռք բերած այդ հաջողությունների մեջ, անշուշտ, մեծ լումա ունի ներդրած նաև կոմունիստ կոմբայնավար Քերոբ Քերոբյանը։

Տասնինն տարի առաջ Քերոբ Քերոբյանը դիմեց կոլտնտեսության կուսկազմակերպությանը՝ ՍՄԿԿ շարքերն անցնելու համար։ Կոմունիստներից շատերն իրենց պատրաստակամությունը հայտնեցին նրան երաշխավորելու։ Լենինյան կուսակցությանը զինվորագրվելուց հետո էլ Քերոբյանը կուսակցության անդամի պատվավոր կոչումն արդարացնում է հայրենանվեր աշխատանքով, հասարակական կյանքին ակտիվ մասնակցությամբ։ Նա ՍՄԿԿ կանոնադրության պահանջներին մոտենում է պարտքի ու պատասխանատվության բարձր գիտակցությամբ, ավանգարդային դեր կատարում կոլտնտեսային արտադրության մեջ, լավ աշխատանքով օրինակ ծառայում մյուսներին։

Քերոբյանը հացահատիկային կուլտուրաների ցանքատարածություններից բարձր բերք ստանալու համար 1951 թ. պարգևատրվեց Լենինի և աշխատանքային կարմիր դրոշի շքանշաններով, իսկ 1954 թ., մասնակցելով ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսին, պարգևատրվեց ոսկե և արծաթե մեդալներով։ Անցյալ տարի անվանի կոմբայնավարը «ՍԿ—4» մարկայի կոմբայնով 13 աշխատանքային օրում հավաքեց 270 հեկտարի բերք և կոլտնտեսության պահեստ ուղարկեց 6500 ցենտներ հացահատիկ։ Քերոբյանը Հայկավանի կոլտնտեսության կուսկազմակերպության բյուրոյի անդամ է։ Նա հաճախ է մասնակցում բյուրոյի նիստերում և կուսժողովներում քննարկվող հարցերի նախապատրաստմանը, ելույթներ ունենում կուսկազմակերպության ժողովներում, խոսում իրեն հուզող հարցերի մասին, գործին օգնող խելացի առաջարկություններ անում, իր կարծիքը հայտնում այս կամ այն հարցի կապակցությամբ։

Կոմունիստ Քերոբ Քերոբյանը միաժամանակ հասարակական ակտիվ աշխատող է, բարեխիղճ ագիտատոր։ Նա հաճախ է զրույցներ անցկացնում մեխանիզատորների հետ, նրանց բացատրում կուսակցության ու կառավարության որոշումները, իրազեկ պահում երկրում տեղի ունեցող կարևոր իրադարձություններին։

Քերոբյանը սիստեմատիկաբար զբաղվում է նաև իր քաղաքական գիտելիքների հարստացմամբ, ակտիվ մասնակցում կուսկազմակերպությանը կից գործող քաղխմբակի պարապմունքներին և պատասխանատվության բարձր զգացումով կատարում պրոպագանդիստի կողմից տրված բոլոր հանձնարարությունները։

Լայն է կոմունիստ Քերոբյանի հետաքրքրասիրությունների շրջանակը։ Նա սիստեմատիկաբար կարդում է մարքսիզմի կլասիկների, ռուս և հայ գրողների աշխատությունները։ Քերոբ Քերոբյանը միաժամանակ հոգատար հայր է ու լավ ամուսին։

Ավարտում եմ զրույցս Ախուրյանի շրջանի Հայկավանի կոլտնտեսության անվանի կոմբայնավար, կոմունիստ Քերոբյանի հետ և մտածում. այո՛, այդպիսին պետք է լինի մեր օրերի մարդը, լենինյան կուսակցության անդամը։ Իրոք, նա իր ազնիվ աշխատանքով վայելում է բոլորի սերն ու համակրանքը, միշտ ձգտում բարձրին, կատարյալին։ Լավ է ասել բանաստեղծը.

Մեր դեմ դժվարին անցումներ դեռ կան,
Կատարներ բա՜րձր, բա՜րձր, երկնահաս,
Երբ որ մարտիկ ես անխոնջ լենինյան՝
Պիտի բարձրանաս...

ԱՐՇԱԼՈՒՅՍ ՄԻՐԱՍ

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ



## ՀԱՍԱՐԱԿԱՅՆՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՄԱՐԴԱՏԱՐ ԱՎՏՈՄՈԲԻԼԱՅԻՆ ՏՐԱՆՍՊՈՐՏԸ

**Բ. Ե. ՍԱՐԳԻՍՈՎ**

ՀՍՍՀ ավտոմոբիլային տրանսպորտի մինիստր

Ժողովրդական տնտեսության սպասարկման ոլորտը մտնող ճյուղերը ամենօրյա կապերով սերտ հարաբերության մեջ են բնակչության հետ։ Քանի որ այդ ճյուղերի նպատակը սպասարկումն է, դրանք մշտապես գտնվում են բնակչության ուշադրության կենտրոնում, նրա անմիջական, որպես կանոն, ոչ ոքի կողմից չկազմակերպված, տարերային հսկողության տակ։ Այդպիսիներից է ավտոմոբիլային տրանսպորտը։

Գնալով ավելի է մեծանում ավտոտրանսպորտի դերը հասարակական կյանքում։ Տարեցտարի ընդարձակվում է դրա ցանցը։ Միայն մեր մինիստրության պարկերում կա 2000 ավտոբուս։ Միջքաղաքային երթուղիներով Երևանից (Սոչի, Կիսլովոդսկ, Գրոզնի, Օրջոնիկիձե, Թբիլիսի, Ախալցխա, Բաքու, Կիրովաբադ և այդ քաղաքներ) սլանում են 100 ավտոբուս, օրական տանելով 4000 ուղևոր։ Ավտոբուսային երթուղով մայրաքաղաքի հետ են կապված մեր հանրապետության բոլոր շրջանները։ Հայկական ՍՍՀ ավտոտրանսպորտի մինիստրության գծով անցյալ տարի միայն ավտոբուսներով փոխադրվել են մոտ քառորդ մլրդ ուղևոր, որից 102 մլն Երևանում։ Եթե դրան ավելացնենք էլեկտրատրանսպորտով Երևանում ու Լենինականում իրականացվող փոխադրումները, ապա այդ թիվը կաճի մեծ չափով։

Բնակչությունը, որպես լավ կարգավորված ճշգրիտ ծանրաչափ, իր վրա է զգում մարդատար ավտոտրանսպորտի լավ կամ վատ աշխատանքը, հաճախ չհետաքրքրվելով, թե ինչն է մեկի կամ մյուսի պատճառը։

Կանգառում ավտոբուսին սպասելիս ուղևորը չի մտածում այն մասին՝ կատարվո՞ւմ թե չեն կատարվում փոխադրումների, եկամուտների, շահույթի սահմանված պլանները և տեխնիկա-տնտեսական ու ֆինանսական մյուս ցուցանիշները։ Նրա օրինական ցանկությունն ու պահանջն է՝ շատ ժամանակ չկորցնել տրանսպորտին սպասելիս, նեղվածք ու հրհրոց չլինի ավտոբուսում, մաքուր լինեն ավտոմեքենաները, անձնակազմը քաղաքավարի ու կուլտուրական վերաբերմունք ցույց տա ուղևորներին։

Վերջին հաշվով ճիշտ ու հասկանալի է այդ ամենը։

Բայց մեր պատկերացմամբ մարդատար ավտոտրանսպորտի յուրահատկությունն այն է, որ դրա հաջող աշխատանքը որոշ չափով կախված է ուղևորներից, հասարակայնությունից։

Տվյալ հոդվածում շոշափվում են մարդատար ավտոտրանսպորտի և հասարակայնության փոխադարձ կապերի հարցը։ Մարդատար ավտոտրանսպորտի աշխատողներից յուրաքանչյուրը գիտե և պետք է գիտենա այն պարզ ճշմարտությունը, որ ավտոտրանսպորտն ուղևորի համար է, և ոչ թե ընդհակառակը։ Ուստի և ավտոտրանսպորտի աշխատողները թերևս որոշ չափով զրկված են այն բանից, ինչից օգտվում են գործարանների ու ֆաբրիկաների, հիմնարկությունների աշխատողները։ Ավտոտրանսպորտային աշխատողն առավոտները պետք է ամենքից վաղ վեր կենա, որպեսզի հասցնի ժամանակին մատուցել ավտոբուսը կամ տաքսին. գիշերը նա ուղևորներ փոխադրելուց հետո պետք է ամենքից ուշ վերադառնա տուն. տոն և շաբաթվա ոչ աշխատանքային օրերին նա պետք է աշխատի, որպեսզի տոներն ուրախ անցկացնելու և հանգստի օրերին ազատ ժամանակը լավ կազմակերպելու պայմաններ ստեղծի աշխատավորների համար։

Բայց այդ դեռ բոլորը չէ։ Ավտոտրանսպորտի աշխատողները միշտ հիշում են և ոչ մի րոպե չպետք է մոռանան, որ իրենք, բացի մնացած ամեն ինչից, անմիջական պատասխանատվություն են կրում ուղևորի առողջության պահպանման և անվտանգության համար։ Վարորդներից յուրաքանչյուրը իր հերթափոխության ժամանակ փոխադրում է մինչև երկու հազար մարդ։ Հետևապես նրա որակավորումից, կարգապահությունից ու կազմակերպվածությունից, աշխատանքի կուլտուրայից և պատասխանատվության բարձր զգացումից է կախված այդ երկու հազար ուղևորներից յուրաքանչյուրի բարեհաջող երթևեկությունը։

Հայտնի է, որ գործարանում ու ֆաբրիկայում բանվորի աշխատանքի արդյունքների կարևոր չափանիշներից մեկը արտադրանքի որակն է։ Եթե այսօր այն ցածր է, ապա դա, իհարկե, վատ է, բայց վաղը կարելի է այդ գործն ուղղել։ Ավտոտրանսպորտի աշխատողի, մասնավորապես վարորդի աշխատանքի որակի հիմնական ցուցանիշն առանց դժբախտ պատահարների մարդկանց փոխադրումն է։ Այս գործում ավտոտրանսպորտային աշխատողի այսօր թույլ տված խոտանը վաղը երբեմն անհնար է լինում ուղղել։

Ավտոտրանսպորտի աշխատողները, որոնք յուրաքանչյուր օր կազմակերպում են հարյուր հազարավոր մարդկանց փոխադրումը, զգում են և մշտապես պետք է զգան, որ իրենց լավ կամ վատ աշխատանքից է կախված՝ արդյոք լա՞վ թե վատ տրամադրությամբ ավտոբուսից իրենց ձեռնարկությունների ու հիմնարկությունների մոտ կիջնեն բանվորները և ծառայողները, աշխատանքից հոգեկան ի՞նչ վիճակում կվերադառնան իրենց ընտանիքների մոտ, ինչպե՞ս կկարողանան հյուր գնալ իրենց հարազատների ու մտերիմների մոտ։

Բազմամիլիոն ուղևորը ցանկանում է, որ սպասարկելիս կուլտուրական և քաղաքավարի, հոգատար և ուշադիր լինի ավտոտրանսպորտային աշխատողի վերաբերմունքը՝ վարորդ լինի նա թե տոմսավաճառ, դիսպետչեր լինի թե տոմս ստուգող, մեկ է։

Հասարակայնությունը չի ներում, չի կարող և չպետք է ների ավտոտրանսպորտի աշխատողի ոչ մի թերացում ինչպես ավտոմոբիլը ժամանակին մա-



տուցելու, այնպես էլ ուղևորներին կուլտուրական վերաբերմունք ցույց տալու գործում։

Մի խոսքով մեծ ու բազմակողմանի է ավտոտրանսպորտի աշխատողի պատասխանատվությունը բնակչության առաջ։ Պատասխանատվության այդ բարդ կոմպլեքսը մտավոր ու հոգեկան մեծ ունակություններ, ֆիզիկական շատ աշխատանք և նյարդային լարվածություն է պահանջում այդ աշխատողից։

Այդ ամենի համար հասարակայնությունը պատշաճն է հատուցում ավտոտրանսպորտի աշխատավորներին, գնահատում ու հարգում է նրանց ազնիվ, բարդ և պատասխանատու աշխատանքը։

Դժբախտաբար, ավտոտրանսպորտի աշխատողներին ամենևին էլ միշտ չէ, որ հաջողվում է բավարարել բնակչության պահանջներն ու կարիքները, ուղևորների փոխադրումներով, անխափան և կուլտուրական սպասարկմամբ հասարակայնության առաջ հաջողությամբ բռնել քննությունն այդ բազմակողմանի պատասխանատու գործում։

Այստեղ շատ են օբյեկտիվ և սուբյեկտիվ պատճառներն ու հանգամանքները։ Հոդվածում չեն շոշափվում օբյեկտիվ պատճառները, այսինքն՝ արտադրական-տեխնիկական ժամանակակից ամուր բազա ստեղծելու, մարդատար ավտոտնտեսություններին հատուկ պահեստամասերի մատակարարումն արմատապես բարելավելու, տեխնիկական սպասարկումը կազմակերպելու և հիմնական վերանորոգման բազա ստեղծելու, ուղևորների փոխադրումների արտադրական և ֆինանսական-տնտեսական ցուցանիշները (բազան և ամենամյա պարտադիր աճը) պլանավորելու և այլ պրոբլեմներ։ Դրանք մեծ ու բարդ պրոբլեմներ են, որոնք առանձին խոսակցության և քննարկման կարիք են զգում։

Բայց այդ օբյեկտիվ պատճառների կողքին կան նաև բազմաթիվ սուբյեկտիվ պատճառներ, որոնք կախված են ավտոտրանսպորտի մեծ ու փոքր աշխատողներից, գործը և մարդկանց կազմակերպելու նրանց ունակությունից, առանց հետաձգելու առօրյա հարցերը լուծելու օպերատիվությունից, ուղևորների, հասարակայնության հանդեպ ունեցած պարտքի բարձր գիտակցության զգացումից, հասարակայնություն, որին սպասարկելու են կոչված իրենք։

Այս գործում հասարակայնությունն իրավունք ունի հանդիմանելու ավտոտրանսպորտի շատ աշխատողների։ Չէ՞ որ հազվագյուտ երևույթ չէ, երբ գործի ուղարկելու համար պլանավորվածից որոշ թվով ավտոբուսներ աշխատանքի չեն դուրս գալիս։ Ընդ որում, դրանց զգալի մասը աշխատանքի չի դուրս գալիս ոչ թե որևէ լուրջ պատճառով, այլ ուղղակի ավտոտնտեսության այն աշխատողների դանդաղկոտության հետևանքով, որոնք պատասխանատու են տվյալ օրը շարժակազմը երթուղի դուրս բերելու նախապատրաստման համար, երբեմն էլ իրենց պարտականությունների նկատմամբ անփույթ ու անպատասխանատու վերաբերմունքի, պատասխանատվության զգացմունքի բացակայության պատճառով։ Գրեթե ամեն օր որոշ քանակությամբ ավտոբուսներ պակաս են երթուղի դուրս գալիս վարորդների՝ առանց հարգելի պատճառների աշխատանքից բացակայելու հետևանքով։ Էլ չենք խոսում այնպիսի բացասական երևույթների մասին, ինչպիսիք են՝ ավտոբուսների աշխատանքի դուրս գալու չվացուցակի խախտումը, հաճախ առանց որևէ պատճառի ավտոբուսների ժամանակից շուտ հավաքակայան վերադառնալը և այլ աննորմալ երևույթներ։

Այնպես է ստացվում, որ ավտոտնտեսության մի փոքր խումբ աշխատողներ, կորցնելով բնակչության, հասարակայնության առաջ պատասխանատվության զգացումը, կարող են վնաս հասցնել հազարավոր մարդկանց ոչ միայն անձնական, այլև արտադրական շահերին, փչացնել նրանց տրամադրությունը։ Այդպիսի աշխատողներին չի մտահոգում այն, որ պլանով նախատեսվածներից յուրաքանչյուր ավտոբուսի աշխատանքի չուղարկելը խախտում է նրանց չվացանկն ու չվացուցակը, կանգառներում ավելացնում սպասող ուղևորների հերթերը, մյուս ավտոբուսներին ստիպում է գերբեռնվածությամբ աշխատել և փչանալ, իսկ բանվորների ու ծառայողների աշխատանքից ուշացումը բացասաբար է անդրադառնում նրանց արտադրողականության վրա։

Հայկական ՍՍՀ ավտոտրանսպորտի մինիստրությունը վերջին ժամանակներս միջոցառումներ է իրականացնում վերացնելու նման երևույթներն ու փաստերը։ Յուրաքանչյուր ավտոտնտեսությունից ավտոբուսները երթուղիներ դուրս բերելու՝ մշակված «Պլան-կարգագրի» և «Ամենօրյա պլան-կարգագրի կատարման վերաբերյալ զեկուցագրի» շնորհիվ, տեխնիկական և շահագործման ծառայությունների աշխատողների մոտ սահմանվել է պարզ ու որոշ անձնական պատասխանատվություն յուրաքանչյուր պլանավորված ավտոբուս ըստ հաստատված չվացուցակի այս կամ այն երթուղի դուրս բերելու համար։ Ավտոբուսները երթուղի դուրս չբերելու կամ նշված չվացուցակի խախտման պատճառներն ամեն օր ուշադրությամբ քննության են առնվում, մեղավորների նկատմամբ կիրառվում են համապատասխան միջոցներ։

Բնակչության առաջ բարձր պատասխանատվությունը պահանջում է՝ ավտոտնտեսություններում իսկական պայքար կազմակերպել յուրաքանչյուր ավտոմեքենան ճիշտ սահմանված ժամանակ երթուղի դուրս բերելու համար։

Ավտոտրանսպորտի և հասարակայնության փոխադարձ կապի մասին խոսելիս, մեր կարծիքով, անհրաժեշտ է կանգ առնել այն հարցի վրա, թե մարդկանց տեղափոխելու համար ո՞վ է օգտագործում այդ տրանսպորտը, ո՞ւմ է հանձնարարվում այդ հույժ պատասխանատու գործը։ Խոսքը ուղևորների փոխադրման համար վարորդ կադրերի ընտրության մասին է։ Բանն այն է, որ պրոֆտեխնիկական կրթության հաստատություններում և մյուս կազմակերպություններում վարորդների ուսուցման ու պատրաստման գոյություն ունեցող սիստեմում վարորդներ են պատրաստում, որոնց հետագայում ուղարկում են աշխատելու թե՛ ինքնաթափերի, թե՛ բենզինակիրների, թե՛ կողավոր բեռնատար ավտոմոբիլների և թե մարդկանց տեղափոխող ավտոմեքենաների վրա։ Սակայն այլ բան է շինանյութ կամ բեռնարկղ տեղափոխելը և այլ բան՝ մարդկանց տեղափոխելը։ Միանգամայն տարբեր է պատասխանատվության աստիճանը։

Մեր կարծիքով, ուղևորներ փոխադրող վարորդը, որն ամեն օր սերտորեն շփվում է հազարավոր մարդկանց հետ և որից կախված է այդ մարդկանց երթևեկության անվտանգությունը, բացի համապատասխան որակավորումից, պետք է ունենա կուլտուրական ու բարոյական ավելի բարձր հատկություններ, քան քար կամ խիճ փոխադրող վարորդը, որը պատասխանատու է իր անձի և իր փոխադրած բեռան համար միայն։ Մարդ փոխադրող վարորդը պետք է պատրաստված լինի իր կողմից կատարվող խնդրի մակարդակով, հասարակայնության առաջ բարձր պատասխանատվության զգացումով։ Իսկ գործնականում ավտոբուսների ու տաքսիների համար վարորդների ընտրությունը տեղի է ունենում տարերայնորեն՝ շատ հաճախ, ինչպես բախտը կբերի։ Մինչդեռ



ընտրությունը հարկավոր է կատարել հմտորեն, անհատական մոտեցում ունենալով այս կամ այն վարորդին, չափանիշ ընդունելով այն, թե արդյոք համապատասխանո՞ւմ է նա ուղևորների փոխադրման պահանջներին։

Օգտակար կլիներ ավտոբուսների ու տաքսիների վարորդների պատրաստումը կազմակերպել ո՛չ թե ուսուցման ընդհանուր հոսանքում, ինչպես արվում է այժմ, այլ առանձին, ուսուցման հատուկ մշակված ծրագրով, որում նախատեսվեն նաև հանրակրթական, կուլտուրական պատրաստականությունը։

Ինչպես վերևում ասվեց, անխզելիորեն և օրգանապես միահյուսված են ավտոտրանսպորտի և բնակչության, հասարակայնության շահերը։ Երկու կողմերի ցանկությունն էլ, վերջին հաշվով, նույնն է՝ ուղևորի լավ, կուլտուրական ու ժամանակին սպասարկումը։

Բայց մարդատար ավտոտրանսպորտի աշխատանքի բուն պրոցեսը և բնակչության կողմից այդ տրանսպորտից օգտվելու պրոցեսն այնպիսիք են, որ դրանք անհնար է պարզ ու որոշակի երկու ինքնուրույն մասերի բաժանել և ասել, թե կողմերից մեկը (ավտոտրանսպորտի աշխատողները) միայն պարտականություններ ունի, իսկ մյուսը (ուղևորները)՝ միայն իրավունքներ։ Կողմերից յուրաքանչյուրը մյուսի հանդեպ ունի թե՛ պարտականություններ, թե՛ իրավունքներ։

Իրոք, ավտոբուսն այն վայրն է, ուր քաղաքացին մտնում է օրական մի քանի անգամ, ինչպես իր բնակարանը, իր տունը։ Եվ բնական է, յուրաքանչյուր տանտէր հոգ է տանում իր բնակարանի մասին՝ սկսած մաքրությունը պահպանելուց, մինչև ոչինչ չջարդելը, չփչացնելը։ Շատ ցանկալի կլիներ, որ յուրաքանչյուր ուղևոր նման հոգատարություն ցուցաբերեր նաև ավտոբուսի կամ տաքսիի հանդեպ։ Դա, իհարկե, մեծ ցանկություն է, որի կենսագործումն անհրաժեշտ է։ Երբեք չի կարելի հանդուրժել այնպիսի այլանդակ արարքներ, երբ առանձին սանձարձակ տարրեր, բոլորովին անհասկանալի ու անբացատրելի պատճառներով ածելու շեղբով կտրտում են ավտոբուսների նստոցների պաստառը, կարծր առարկաներով զանազան մակագրություններ քերում մեքենաների ներքին մակերեսներին և այլն։ Բայց այդ ամենն արվում է ուղևորների աչքի առաջ, որոնք պարտավոր են ո՛չ միայն պահպանել կարգը, այլև կարգի հրավիրել ու պատասխանատվության կանչել նրանց, ովքեր զբաղվում են այդպիսի անվայել գործերով և ավտոտրանսպորտի աշխատողներին խանգարում կուլտուրապես սպասարկել աշխատավորներին։

Բայց ավտոտրանսպորտի նկատմամբ ուղևորի ինքնակարգապահության և ինքնապատասխանատվության հետ մեկտեղ, անհրաժեշտ է ավելի քան պարզորոշ դարձնել մեր հասարակայնության բարոյա-կազմակերպական օգնությունը և աջակցությունը ավտոտրանսպորտին։ Կասկածից վեր է, որ ուղևորների ճնշող մեծամասնությունը, եթե ոչ բոլորը, ցանկանում են այդպիսի օգնություն ցույց տալ։ Բայց այն պետք է կազմակերպել։ Մենք կարծում ենք, որ կազմակերպման նախաձեռնությունը պետք է պատկանի իրենց, ավտոտրանսպորտի աշխատողներին և, ամենից առաջ, նրա ղեկավարներին։

Այստեղ մենք նկատի ունենք հանրապետության ավտոտրանսպորտի մինիստրության, նրա ապարատի, տրեստների, ավտոտնտեսությունների ղեկավարների սիստեմատիկ հանդիպումները ձեռնարկությունների, հիմնարկությունների ու կազմակերպությունների կոլեկտիվների հետ։

«Հայէլեկտրալույս» միավորման գլխավոր դիրեկտորի, կուսբյուրոյի և

արհմիության տեղական կոմիտեի նախաձեռնությամբ մեր մինիստրության ղեկավարությունը «Հայուղևորտրանս» մասնագիտացված մարդատար տրեստի, ավտոբուսային ու տաքսամոտորային տնտեսությունների ղեկավարների հետ վերջերս հանդիպում ունեցավ Երևանի էլեկտրալամպերի գործարանի բանվորների և ծառայողների հետ (գործարանի ակումբում)։

Հանդիպման ժամանակ գործարանի աշխատողները բազմաթիվ արդարացի քննադատական դիտողություններ և օգտակար առաջարկություններ արեցին քաղաքային ավտոտրանսպորտի աշխատանքի բարելավման ուղղությամբ։ Այնուհետև, մինիստրության աշխատողների և գործարանի ղեկավարների, արտադրամասերի պետերի մի նոր հանդիպման ժամանակ համատեղ մշակվեցին առավոտյան և երեկոյան ժամերին գործարանի բանվորների փոխադրումը բարելավելու միջոցառումներ։

Գործարանի բանվորները բնակվում են Երևանի երեք շրջաններում։ Գործարանը թվական տվյալներ ներկայացրեց այդ շրջաններից յուրաքանչյուրի մասին և դրան համապատասխան որոշվեցին գործարանի աշխատողների առավոտյան հավաքատեղիները և ավտոբուսներ ուղարկելու ժամանակը՝ նոր երթուղի։ Նույն ձևով կազմակերպվել է հակառակ ուղղությամբ բանվորների փոխադրումը ժամը 24-ին։ Մշակված այդ առաջարկությունները ձևակերպվեցին մինիստրության կարգադրությամբ, իսկ գործարանի ղեկավարությունը պատասխանատու հերթապահներ նշանակեց նախատեսված տեղերում, որոնք ավտոտնտեսությունների աշխատողների հետ միասին կկազմակերպեն բանվորներին ավտոբուսները նստեցնելու և ճանապարհելու գործը։ Պատասխանատու հերթապահներն ամեն օր հանդիպելով ավտոտնտեսությունների աշխատողներին, հնարավորություն ունեն օպերատիվ լուծելու ծագող բոլոր հարցերը և ոչ թե ժամանակ առ ժամանակ խնդիրներ ու գանգատներ գրելու և պատասխանի սպասելու գրասենյակային տարբեր ատյաններից։ Այդ կարգը հաջողությամբ փոխարինվում է ավտոտնտեսության, տրեստի և գործարանային հասարակայնության ներկայացուցիչների համատեղ աշխատանքով։

Հանդիպում տեղի ունեցավ նաև մաթեմատիկական հաշվիչ մեքենաների ինստիտուտի ինժեներա-տեխնիկական անձնակազմի և բանվորների հետ։ Ինստիտուտի կուսակցական-տնտեսական ակտիվի ժողովում լսվեց և քննարկվեց մեր մինիստրության ղեկավարության զեկուցումը քաղաքային ավտոտրանսպորտի աշխատանքի վիճակի և դրա բարելավման միջոցառումների մասին։ Ակտիվի ժողովին մասնակցեցին մասնագիտացված մարդատար բոլոր ավտոտնտեսությունների դիրեկտորները։

Էլեկտրալամպերի գործարանի և մաթեմատիկական հաշվիչ մեքենաների ինստիտուտի կոլեկտիվները, որոնք ստանձնել են Երևանի ավտոբուսային (համապատասխանորեն) առաջին ու չորրորդ հավաքակայանների շեֆությունը, ընդունեցին դիմում Երևանի բոլոր ձեռնարկությունների ու կազմակերպությունների կոլեկտիվներին, կոչ անելով կոնկրետ օգնություն և աջակցություն ցույց տալ քաղաքային ավտոտրանսպորտի աշխատանքի բարելավման գործին, ձեռնարկություններում ու հիմնարկություններում այդ նպատակով կազմակերպել ավտոտրանսպորտին աջակցող հանձնաժողովներ։

Հայաստանի կոմկուսի Երևանի քաղաքային կոմիտեն ընդունեց որոշում, որով հավանություն տվեց այդ երկու կոլեկտիվների նախաձեռնությանը և հանձնարարեց կուսակցության շրջանային կոմիտեներին, ձեռնարկությունների ու հիմնարկությունների ղեկավարներին, նրանց կուսակցական, արհ-



միութենական և կոմերիտական կազմակերպություններին՝ պաշտպանել օգտակար այդ նախաձեռնությունը և ձեռնամուխ լինել գործի լայն կազմակերպմանը։

Հանրապետության ավտոտրանսպորտի մինիստրության ղեկավարները մասնակցել են աշխատավորների դեպուտատների քաղաքային ու շրջանային սովետների սեսիաներին, որտեղ քննարկվել են ավտոտրանսպորտով բնակչության սպասարկումը բարելավելու հարցերը, ինչպես նաև հանդես են եկել արդյունաբերական ձեռնարկությունների սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների՝ Հայաստանի կոմկուսակցության Կենտկոմի կազմակերպած սեմինարում։

Գործնականում մենք արդեն զգում ենք հասարակայնության հետ ավտոտրանսպորտային աշխատողների կապի սահմանման ուղղությամբ արված առաջին քայլերի դրական արդյունքները։ Եթե ավտոտնտեսության դիրեկցիան կամ տեղկոմը քննում է այն վարորդի կամ նորոգման աշխատողի հարցը, որի մեղքով ավտոբուսները երթուղի դուրս չեն եկել և ուղևորների դժգոհության պատճառ են դարձել, ապա հավաքակայանի շեֆ կոլեկտիվի ներկայացուցչի մասնակցությունը, նրա ձայնն արտահայտում է հասարակայնության կարծիքն ու դժգոհությունը։ Դրա դրական ազդեցությունը և դաստիարակչական նշանակությունը հաճախ գերազանցում է բոլոր ակնկալությունները։ Ամեն մարդ լավ գիտե՝ հասարակայնության հետ, նրա կարծիքի հետ կատակ չի կարելի անել։

Ավտոտրանսպորտն առնչություն ունի յուրաքանչյուր ընտանիքի, ամբողջ բնակչության հետ։ Հասարակայնությունը, սպորտային լեզվով ասած՝ պետք է ավտոտրանսպորտի ցավաքաշը լինի։ Ֆուտբոլային թիմի ցավաքաշները, ուրախանալով նրա հաջողություններով, վշտանալով անհաջողությունների համար, միշտ քաջատեղյակ են իրադարձություններին, գիտեն, թե ինչ է արվում թիմում։ Եթե կարելի է մի այսպիսի զուգահեռ անցկացնել, ապա հարկավոր է, որպեսզի քաղաքների, շրջանների հասարակայնությունը որոշ չափով տեղյակ լինի, թե ինչ է կատարվում ավտոտնտեսությունում։

Հաճախ կարելի է լսել, թե ուղևորներին չի հետաքրքրում՝ հավաքակայանները կատարո՞ւմ են արդյոք իրենց արտադրական ու ֆինանսա-տնտեսական պլանները, նրան հետաքրքրում է միայն, որ ժամանակին ու կուլտուրական լինի սպասարկումը։ Մեզ թվում է, որ դա այնքան էլ ճիշտ չէ։ Պլանային բոլոր ցուցանիշների կատարումն ու գերակատարումը նշանակում է աշխատավարձի ժամանակին վճարում աշխատողներին, վարորդների լավ վաստակ, այսինքն՝ շահագրգռվածություն կուլտուրական սպասարկմամբ, նշանակում է ֆինանսա-նյութական ռեալ հնարավորություններ ունենալ հարկ եղած թվով աշխատողներ պահելու շարժակազմի նախապատրաստման և մշտապես կուլտուրական-սանիտարական պատշաճ վիճակի ապահովման համար։ Շատ շահույթ ունենալ, նշանակում է՝ ունենալ նյութական շահագրգռման լավ ֆոնդեր, սոցիալ-կուլտուրական միջոցառումների մեծ ֆոնդեր, որոնցից կարելի է լրացուցիչ միջոցներ ծախսել ավտոմեքենաները երթուղի դուրս բերելու նախապատրաստման, սանիտարական պատրաստության համար, վարորդների, տոմսավաճառների հատուկ արտահագուստ ձեռք բերելու և ավտոբուսային փոխադրումներով բնակչության լավ սպասարկումն ապահովող ուրիշ շատ միջոցառումների համար։

Հարց է ծագում, իսկ ի՞նչ անմիջական կապ կա այդ հարցերի և հասա-

րակայնության միջև: Անմիջական կապ գուցե և չկա, սակայն հասարակայ-
նության ազդեցությունը դրանց վրա անկասկած է:

Դժբախտաբար, մենք պետք է ասենք, որ մեզ մոտ դեռ լինում են անտոմս
ուղևորներ, մանավանդ երթևեկության լարված ժամերին: Թեև պետք է ասել,
որ նրանց թիվը մեծ չէ, բայց եթե չտրված հինգ կոպեկները բազմապատկենք
ամբողջ տարվա օրերի վրա, ապա մեծ գումար կստացվի՝ թերևս միլիոնավոր
ռուբլիներ: Իսկ այդ գումարը տնտեսությանը, ինչպես ասում են՝ չէր վնասի:
Դեռ չեն վերացվել նաև այն դեպքերը, երբ անկարգապահ, անբարեխիղճ վա-
րորդները կամ ավտոտրանսպորտի մյուս աշխատողները առանց տոմսի ուղե-
վորներ են փոխադրում, որը նույնպես թանկ է նստում ավտոտնտեսություն-
ներին և խիստ բացասաբար անդրադառնում պլանների կատարման վրա:

Կարծում ենք, որ այդ գործում ավտոհավաքակայանների ամենալավ ու
խնամքով կազմակերպված վերահսկողությունը չի կարող փոխարինել հասա-
րակայնության, իրենց՝ ուղևորների դերին, քանի որ ավտոտրանսպորտի լավ
աշխատանքով նրանց շահագրգռվածությունը, նրանց մշտական ներկայու-
թյունն ավտոբուսում ոչ ոքի թույլ չէին տա այդպիսի խախտումներ կատարելու:

Հանրապետության ավտոտրանսպորտի մինիստրության աշխատողների
16-հազարանոց կոլեկտիվի ջանքերով կատարվել և զգալի չափով գերակա-
տարվել են 1968 թ. ժողովրդատնտեսական պլանով նախատեսված ֆինան-
սա-տնտեսական բոլոր ցուցանիշները փոխադրումների բոլոր տեսակների
գծով: Այդ թվում ավտոբուսային փոխադրումների պլանները կատարվել են
100,1 տոկոսով, որը 1967 թ. համեմատությամբ 11 տոկոսով ավելի է: Պետք
է ասել, որ վերջին 12 տարիներում ավտոբուսային փոխադրումների պլաննե-
րը թերակատարվում էին: Տաքսամոտորային փոխադրումների պլանները կա-
տարվել են 104,7 տոկոսով (աճել է 20,5 տոկոսով): Շահույթի պլանը մինիստ-
րության սիստեմում կատարվել է 121 տոկոսով և ստացվել 2.172 հազար
ռուբլու գերպլանային շահույթ:

Անցած տարի բոլոր ավտոտնտեսությունները, աշխատելով տնտեսական
ռեֆորմի պայմաններում, ստեղծել են նյութական խրախուսման, սոցիալ-
կուլտուրական միջոցառումների և արտադրության զարգացման խոշոր ֆոն-
դեր: Այդ ֆոնդերի գումարը կազմեց 3.108 հազար ռուբլի, պլանով նախա-
տեսված 1.758 հազար ռուբլու փոխարեն: Բերված տվյալները խոսում են այն
մասին, որ 1968 թ. անհրաժեշտ պայմաններ էին ստեղծվել ավտոտնտեսու-
թյունների արտադրական և ֆինանսա-տնտեսական ամրապնդման համար:

Հայտնի է, որ առայժմ չի լուծված ավտոտնտեսությունները պահեստա-
մասերով լրիվ ապահովելու պրոբլեմը: Ուստի, դրանց նպատակահարմար և
խնայողաբար օգտագործումը ավտոտրանսպորտային աշխատողների առաջ-
նակարգ խնդիրներից մեկն է: Խորդուբորդ փողոցներն ու ճանապարհները
անընդհատ փչացնում են գործող ավտոբուսները, էլ չենք խոսում այն մա-
սին, որ դրանք վթարների ու պատահարների աղբյուր են: Քանի՜-քանի ավտո-
բուս ամեն օր կոտրած զսպանակներով վերադառնում են հավաքակայան,
քանի՜-քանի ավտոբուս փչանում է այն պատճառով, որ ձմեռվա օրերին ժա-
մանակին չեն մաքրում փողոցների ու ճանապարհների ձյունը: Այդ ամենի
վրա ծախսվում են պահեստամասերի առանց այն էլ աղքատիկ ռեզերվները,
ժամանակ է վատնվում նորոգման համար:

Հասարակայնությունը, ինչպես վերևում ասվեց, պետք է ավտոտրանս-
պորտի աշխատողներից մշտապես պահանջի լավ աշխատանք, բայց գործի



շահերը պահանջում են նաև, որ նման պահանջկոտություն ներկայացվի նաև
այն մարմիններին, որոնք պարտական են փողոցներն ու ճանապարհները
պահելու ավտոտրանսպորտի երթևեկության համար պիտանի վիճակում: Եթե
այդ գործը գտնվի հասարակայնության չթուլացող հսկողության տակ, ապա
դա, անշուշտ, մեծ օգնություն կլինի ավտոտրանսպորտի աշխատողներին:

Կամ մի ուրիշ բան: Ավտոտնտեսության արտադրական-տեխնիկական
բազայի առկայությունը ավտոտրանսպորտի ուղևորների նորմալ սպասար-
կումն ապահովող գլխավոր պայմանն է: Ավտոտրանսպորտի հետագա բարե-
լավումն ու զարգացումը պահանջում են արագացնել շարժակազմի ինչպես
շահագործման, այնպես էլ նորոգման այդպիսի բազաների շինարարությունը:
Բայց, դժբախտաբար, հաճախ դանդաղ են իրականացվում ավտոտրանսպոր-
տային կառույցները: Մեր հանրապետությունում չկան ավտոբուսի հիմնական
վերանորոգում կատարող գործարաններ: Այդ տիպի նորոգման համար ավտո-
բուսներն ուղարկվում են հանրապետության սահմաններից դուրս՝ Պետրոզա-
վոդսկ, Միչուրինսկ քաղաքները և այլուր: Դրա համար շատ ժամանակ ու
միջոցներ են ծախսվում, որը չի կարող չանդրադառնալ ավտոբուսային փո-
խադրումների վրա: Լենինականում կառուցվում է ավտոբուսների և ագրե-
գատների նորոգման խոշոր գործարան: Սակայն վերջին երկու տարում արդեն
երրորդ անգամն է, ինչ խախտվում է մարդատար ավտոտրանսպորտի համար
այդ կենսականորեն կարևոր օբյեկտի գործարկման ժամկետը: Նույն բախտին
է արժանացել ավտոբուսային չորրորդ հավաքակայանի շինարարությունը
Երևանում: Այն պետք է շահագործման հանձնվեր անցյալ տարի: Բայց
չհանձնեցին: Իսկ բոլորին հայտնի է, թե որքան սուր է այդ հավաքակայանի
կարիքը բնակչության սպասարկման բարելավման գործի համար:

Լավ կլիներ, եթե ավտոտրանսպորտի օբյեկտների շինարարությունը
(թեև նրանք իրենց մասշտաբներով այնքան էլ աչքի չեն ընկնում, բայց իրենց
նշանակությամբ մյուս օբյեկտներից սակավ կարևոր չեն) գտնվեր հասարա-
կայնության ուշադրության կենտրոնում և հսկողության տակ:

Ավտոտրանսպորտային աշխատողները կուզենային, որ հասարակական
կարծիքի արտահայտիչները հանդիսացող մամուլը, ռադիոն ու հեռուստատե-
սությունը ավելի շատ ուշադրություն նվիրեն հասարակայնության և ավտո-
տրանսպորտի փոխհարաբերությունների հարցերին: Հենց այդ մարմիններն
են, որ շատ լայն հնարավորություններ ունեն դառնալու ավտոտրանսպորտա-
յին աշխատողների և հասարակայնության համատեղ աշխատանքի կազմա-
կերպման կենտրոնը: Մեր կարծիքով, օգտակար կլիներ կազմակերպել «Օգ-
նություն ավտոտրանսպորտին» կամ «Ավտոտրանսպորտը և հասարակայնու-
թյունը» ռադիո-հեռուստատեսային հանդես:

Ավտոտրանսպորտի աշխատանքը սերտորեն միահյուսված է մեր հասա-
րակության, նրա ամեն մի անդամի հասարակական-քաղաքական, տնտեսա-
կան-աշխատանքային կյանքի հետ: Հասարակայնության ակտիվ և օգտակար
միջամտությունն ավտոտրանսպորտային աշխատողների ամենօրյա բազմա-
պիսի կյանքին, մեծապես կօգնի հաջողությամբ իրականացնելու իրենց պա-
տասխանատու խնդիրները և պարտականությունները հասարակության հան-
դեպ:

# ՈՉԽԱՐԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ՄԱՍՆԱԳԻՏԱՑՈՒՄԸ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ ՈՒ ՍՈՎԽՈԶՆԵՐՈՒՄ*

**Լ. Ա. ԲՈԼԻԲԵԿՅԱՆ**

Հանրապետության վաստակավոր զոոտեխնիկ

*Ոչխարաբուծությունը մեր հանրապետության անասնաբուծության առաջատար և եկամտաբեր ճյուղերից մեկն է, մեծ է նրա դերը գյուղատնտեսության էկոնոմիկայում։ Հայաստանը ոչխարաբուծությունից ստանում է անասնաբուծության ապրանքային ամբողջ արտադրանքի 33—40 տոկոսը։ Կոլտնտեսությունների և սովխոզների դրամական եկամուտների 10—11 տոկոսն ստացվում է ոչխարաբուծությունից. այդ ոլորտում զբաղված են գյուղատնտեսության մեջ աշխատողների ոչ ավելի քան 5 տոկոսը։ Հանրապետությունում արտադրվող մսի մեկ երրորդը տալիս է ոչխարաբուծությունը, իսկ Ազիզբեկովի, Ապարանի, Եղեգնաձորի, Թալինի, Գորիսի շրջանների կոլտնտեսություններում ու սովխոզներում տարիներ շարունակ 45—60 տոկոս էր։ 1967 թ. ոչխարի մսի ինքնարժեքը կոլտնտեսություններում կազմել է տավարի մսի ինքնարժեքի 69,4, իսկ սովխոզներում՝ 77,0 տոկոսը։ Սակայն մեր կոլտնտեսություններն ու սովխոզները դեռևս անբավարար աշխատանք են տանում արտադրությունը համակենտրոնացնելու, մասնագիտացնելու, ոչխարաբուծությունն ինտենսիվացնելու և բարձր ապրանքայնություն ունեցող ֆերմաներ կազմակերպելու ուղղությամբ։ Այսպես, եթե հանրապետությունում յուրաքանչյուր կոլտնտեսություն ու սովխոզ, միջին հաշվով, ունի մոտ 1850 ոչխար, ապա նախալեռնային և լեռնային գոտիների 140 տնտեսություններից յուրաքանչյուրն ունի միայն 250—1000 ոչխար։ Փոքր գլխաքանակ ունեցող ֆերմաները կասեցնում են տնտեսությունների հնարավորությունների լրիվ օգտագործումը, արգելակում արտադրության ինտենսիվացումն ու կոմպլեքսային մեքենայացումը։*

*ՍՄԿԿ Կենտկոմի փետրվարյան պլենումը (1964 թ.) նշեց, որ մասնագիտացումը գյուղատնտեսության արտադրության ինտենսիվացման բաղկացուցիչ մասն է։*

*Ոչխարաբուծական ֆերմաների խոշորացումը և մասնագիտացումը հնարավորություն կընձեռեն ինտենսիվ վարելու ոչխարաբուծությունը, այն կդարձնեն բարձր ապրանքային և եկամտաբեր։ Որքան խոշոր լինեն ֆերմաները և ունենան պատշաճ գլխաքանակ, այնքան բարձր կլինի դրանց տնտեսական արդյունավետությունը։*

* Տպագրվում է հարցադրման կարգով։ Խմբ.։



*Սակայն մի շարք կոլտնտեսություններ ու սովխոզներ խոշոր ու բարձր ապրանքային ֆերմաներ կազմակերպելու, ոչխարաբուծությունը համակենտրոնացնելու փոխարեն 1960 թ. սկսած զգալի չափով կրճատել են 5000 և ավելի ոչխար ունեցող ֆերմաներում եղած գլխաքանակը։*

*Հաշվարկումները ցույց են տալիս, որ 3500 ոչխար ունեցող տնտեսություններում, 500-ի համեմատությամբ (հոտի նույն կառուցվածքի պայմաններում), գյուղատնտեսության օգտագործելի հողերի 100 հեկտարի հաշվով, մսի արտադրությունն ավելի է 90, բրդինը՝ 55 տոկոսով։ Խոշոր ոչխարաբուծական ֆերմաներում զգալիորեն ցածր է մսի և բրդի ինքնարժեքը։*

*Մենք ունենք շատ տնտեսություններ, որոնք ունենալով ոչխարների մեծ գլխաքանակ, արդյունավետ են վարում ոչխարաբուծությունը, ցածր է արտադրանքի ինքնարժեքը և 100 հեկտար հողատարածության հաշվով բարձր է արտադրանքի քանակը։ Օրինակ, Գորիսի շրջանի Խնածախ գյուղի կոլտնտեսությունն առ 1-ը հունվարի 1967 թ. ուներ 6820 ոչխար, ուր 100 հեկտարի հաշվով արտադրվել է բուրդ՝ 3,35 և ոչխարի միս՝ 21,7 ցենտներ (կենդանի քաշով), իսկ մեկ ցենտներ արտադրանքի ինքնարժեքը կազմել է. բրդինը՝ 393, մսինը՝ 78,7 ռուբլի. Նույն շրջանի Քարահունջի կոլտնտեսությունում (3130 ոչխար) այն կազմել է համապատասխանաբար՝ 2,1:13,1 ցենտներ և 515:103 ռուբլի։*

*Ամասիայի շրջանի Գյուլլիի կոլտնտեսությունն ուներ 3230 ոչխար, իսկ նույն շրջանի Մեղրաշատինը՝ 2280 ոչխար, որոնցում 100 հեկտարի հաշվով արտադրանքի քանակը և ինքնարժեքը համապատասխանաբար կազմել են. առաջինում՝ 5,1:44,4 ցենտներ և 289:57,9 ռուբլի, իսկ երկրորդում՝ 3,5:18,0 ցենտներ և 454:90,7 ռուբլի։*

*Վերոհիշյալն արդյունք է այն բանի, որ տնտեսությունների ղեկավարներն իրենց առօրյա աշխատանքում հաշվի են առնում անասնապահության ճյուղերի զարգացման հեռանկարները, կերի բազայի ամրապնդումն ու ճիշտ օգտագործումը, արտադրության ինտենսիվացումը և տնտեսությունը վարում են տնտհաշվարկի համաձայն։*

*Անհրաժեշտ է, որ մեր գիտահետազոտական ինստիտուտները (ելնելով յուրաքանչյուր շրջանի ու տնտեսության ռեալ պայմաններից) գիտականորեն հիմնավորված, մանրամասն հանձնարարականներ մշակեն մասնագիտացվող տնտեսությունների առաջատար ու օժանդակ ճյուղերի, ֆերմաների գլխաքանակի առավելագույն չափերի վերաբերյալ։*

*Մեր կարծիքով, Հայաստանի ոչխարաբուծությունը հետագայում պետք է զարգանա խոշորացված, բարձր ապրանքային տնտեսություններ կազմակերպելով, յուրաքանչյուրում ոչխարների գլխաքանակը հասցնելով 2000—3000-ի, իսկ մասնագիտացվող տնտեսություններում՝ 3000—5000, 5000—10.000 և 10.000—15.000-ի։*

*Ոչխարաբուծությունն ինտենսիվ դարձնելու նպատակով Անիի, Արթիկի, Ամասիայի, Բասարգեչարի, Գորիսի, Կրասնոսելսկի, Եղեգնաձորի, Մարտունու, Թալինի և Կամոյի շրջաններում անհրաժեշտ է կազմակերպել 39 խոշորացված, մասնագիտացված սովխոզներ, իսկ կոլտնտեսություններում՝ մասնագիտացված ֆերմաներ. ոչխարների գլխաքանակն առկա 190 հազարից 1975 թ. հասցնել 307 հազարի։*

*Խոշորացված ու մասնագիտացված այդ տնտեսությունները, հոտերը համալրելուց հետո, յուրաքանչյուր տարի մեծ քանակությամբ էժան միս և բուրդ կարտադրեն, որը կկազմի հանրապետության կոլտնտեսությունների ու սովխոզների ոչխարի մսի և բրդի ամբողջ արտադրանքի 27—28 տոկոսը։*

*Հայաստանի լեռնային ու նախալեռնային գոտու շատ տնտեսություններ ունեն 250—1500 գլուխ ոչխար։ Այդ տնտեսությունները հանրապետության միջին մեծության (1850 գլուխ) ապրանքային ֆերմաներին հասցնելու ու կոմպլեկտավորելու միջոցով միայն հնարավոր կլինի առաջիկայում զգալիորեն ավելացնել ոչխարների գլխաքանակը։ Այս միջոցառումների իրականացմամբ 1975 թ. ոչխարների ընդհանուր գլխաքանակը հանրապետությունում կհասնի 2,5 մլն, որից կոլտնտեսություններում ու սովխոզներում՝ 1.500—1.550 հազարի։*

*Ոչխարաբուծության մասնագիտացումը կփոխի արտադրապրոցեսների բնույթը, արոտային շրջանում գլխաքանակը կհասնի առավել չափերի, իսկ մսուրային շրջանի սկզբում կկրճատվի 29—30 տոկոսով։ Արմատապես կվերափոխվի անասնաբույծների աշխատապրոցեսների բնույթը, կզարգանան արտադրաուժերը։ Ոչխարաբուծության կենտրոնացմամբ ու մասնագիտացմամբ մեծ չափով կմեքենայացվեն աշխատատար պրոցեսները, արդյունավետ կօգտագործվեն կերային ռեսուրսները, կբարելավվի տոհմային աշխատանքը, կբարձրանա համախառն ապրանքային արտադրանքը, որը գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման կարևոր պայմանն է։*

*Ոչխարաբուծության զարգացման այդ ուղին հնարավորություն կընձեռի ինտենսիվ վարելու այդ ճյուղը և զարգացնելու շահութաբեր խոշոր ֆերմաները։ Մասնագիտացումը պետք է կատարվի տվյալ գոտում առավել չափով արտադրվելիք այնպիսի մթերքների ոլորտում, ուր արտադրության համար կան բարենպաստ պայմաններ։ Ուստի, յուրաքանչյուր տնտեսություն, ելնելով իր պայմաններից և հաշվի առնելով ժողովրդական տնտեսության պահանջները, պետք է որոշի, թե տնտեսության համար որ արտադրանքն է ավելի շահավետ։*

*Հաշվի առնելով տարբեր շրջանների կոլտնտեսային-սովխոզային արտադրության տնտեսական պայմանները, ոչխարաբուծության տեսակարար կշիռը, այդ ճյուղի զարգացման հեռանկարները, հանրապետության ոչխարաբուծության զարգացման վերաբերյալ կարելի է անել հետևյալ եզրակացությունը. այն տնտեսությունները, որոնք ոչխարաբուծության զարգացման համար ունեն նպաստավոր պայմաններ և տալիս են ավելի շատ ու ցածր ինքնարժեքով միս և բուրդ, պետք է ավելի մասնագիտացվեն։ Մեր կարծիքով, այդ, առաջին հերթին, վերաբերում է Անիի, Ապարանի, Ազիզբեկովի, Բասարգեչարի, Մարտունու, Եղեգնաձորի, Կամոյի, Գորիսի, Թալինի շրջանների տնտեսություններին։*

*Կոլտնտեսությունների ու սովխոզների երկարամյա փորձը ցույց է տվել, որ հիմնականում ոչխարաբուծության ամենաարդյունավետ ուղղությունը կիսանրբագեղմ՝ մսաբրդակաթնայինն է, որովհետև նրբագեղմ և կոպտաբուրդ ոչխարների տրամախաչումից ստացված խառնացեղ կիսանրբագեղմ ոչխարները լրիվ չափով զուգակցում են նման այդ երկու ցեղերի տնտեսական ու բիոլոգիական օգտակար հատկությունները։*

*Վերոհիշյալի հիման վրա, մեր կարծիքով, հանրապետության ոչխարաբուծությունը պետք է զարգանա հետևյալ ուղղություններով.*



*1. Ազիզբեկովի, Եղեգնաձորի, Մարտունու և Վեդու շրջանների տնտեսություններում (մսաբրդակաթնային՝ կոպտաբուրդ) պետք է բուծել զտարյուն կոպտաբուրդ ոչխարներից լավագույնը՝ բալբաս ցեղը։*

*2. Հանրապետության մնացած շրջաններում, որտեղ բուծվում են նրբագեղմ ու կոպտաբուրդ ոչխարների խառնացեղեր՝ մսաբրդակաթնային (կիսանրբագեղմ) ցեղեր։*

*Ոչխարաբուծության զարգացումը սերտորեն կապված է կերի արտադրության ինտենսիվացման և ամուր բազայի ստեղծման հետ, ուստի անհրաժեշտ է, առաջին հերթին, ինտենսիվացնել կերի արտադրությունը։ Կերի ամուր բազա ստեղծելու փոխարեն շատ տնտեսությունների ղեկավարներ տնտեսական հաշվարկներ չեն կատարում և բավարար չափով կեր չեն կուտակում. լավագույն դեպքում բավարարվում են մսուրային ժամանակաշրջանի համար (120—150 օր), յուրաքանչյուր ոչխարի հաշվով, 1,0—1,5 ցենտներ խոտ կուտակելով։ Այդպիսով, յուրաքանչյուր ոչխարի օրական կերաբաժինը կկազմի 0,8—1,0 կգ խոտ կամ կենդանու կենսապահանջի մոտ 50 տոկոսը։*

*Անբավարար կերակրման հետևանքով շատ ցածր է ոչխարաբուծության արտադրանքը և այդ պատճառով սիստեմատիկ չի կատարվում մսի և բրդի արտադրության և գլխաքանակի աճի տարեկան պլանը։ Կոլտնտեսություններում և սովխոզներում վերջին տարիների ընթացքում, մեկ ոչխարի միջին բրդատվությունը կազմել է 2,0—2,1 կգ և 100 մաքիից ստացվել է 75—78 գառ, որից պահպանվել է 70—72 գլուխ։ Անհրաժեշտ է նկատել, որ մի շարք շրջաններում ու տնտեսություններում անհամեմատ բարձր է բնական և ցանովի խոտաբույսերի ինքնարժեքը, որի հետևանքով բարձր է ոչխարաբուծական մթերքների ինքնարժեքը (մոտ 40 տոկոսը բաժին է ընկնում կերին)։ 1967 թ. տվյալներով, հանրապետության կոլտնտեսություններում մեկ ցենտներ բնական խոտի ինքնարժեքը կազմել է 3,69, իսկ ցանովի բազմամյա խոտինը՝ 2,68 ռուբլի։ Սակայն Շամշադինի, Աշտարակի, Թալինի, Եղեգնաձորի շրջանների կոլտնտեսություններում այն կազմել է, համապատասխանաբար՝ 4,21—5,80 և 4,10—7,67 ռուբլի։ Դրա հետևանքով ոչխարաբուծական արտադրանքի ինքնարժեքն այդ շրջանների տնտեսություններում անհամեմատ բարձր է հանրապետության միջին ցուցանիշներից։*

*Եթե 1967 թ. Հայաստանի կոլտնտեսություններում մեկ ցենտներ ոչխարի մսի ինքնարժեքը (կենդանի քաշով) 101 ռուբլի էր, բրդինը՝ 500, ապա Մարտունու, Աշտարակի, Թալինի, Շամշադինի շրջանների տնտեսություններում այն կազմել է 102—140 և 526—717 ռուբլի։*

*Ոչխարաբուծական մթերքների արտադրությունը կարելի է բարձրացնել միայն ամուր կերի բազա ստեղծելու միջոցով։ Այդ նպատակով անհրաժեշտ է մսուրային ժամանակաշրջանի համար յուրաքանչյուր ոչխարի հաշվով առնըվազն կուտակել. խոտ՝ 2,0—2,5, սիլոս՝ 1,0—1,5 և խտացրած կեր՝ 0,3 ցենտներ։*

*Անասունների կերաբաժնում շատ հաճախ սպիտակուցային նյութերի պարունակությունը հազիվ է ապահովում պահանջվող նորմայի 60—70 տոկոսը, որի հետևանքով 30—40 տոկոսով կերի գերածախս է լինում, իսկ անասնաբուծական մթերքների արտադրությունը կրճատվում է ավելի քան մեկ երրորդով։ Այդ տեսակետից մեզ օգնում է ժամանակակից քիմիան, որը խոշոր ազդեցություն է գործում ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի տեխնիկական առաջադիմության վրա։ Քիմիական միջոցներով արտադրվում*

են սպիտակուցների, վիտամինների փոխարինողներ, բիոլոգիական զանազան ակտիվ խթանիչներ և հարստացուցիչներ, հանքային կեր, բուժիչ և հիվանդությունները կանխող իմունոգեն նյութեր, որոնք մեծ ընդունելություն են գտել անասնապահության մեջ։

Ոչխարաբուծության մթերատվությունը կարելի է մեծ չափով բարձրացնել, եթե կոլտնտեսություններն ու սովխոզները 12—15 տոկոսով ավելացնեն կերի ընդհանուր արտադրությունը (որի համար կան չօգտագործված ռեզերվներ) և տարեկան լրացուցիչ արտադրեն 75—90 հազար տոննա խոտ և նույնքան սիլոս, որը լիովին կապահովի ոչխարաբուծության կերի պակասը։ Արոտավայրերն ու խոտհարքները բարելավելու համար անհրաժեշտ է կազմակերպել կոմպլեքս միջոցառումներ։ Հայտնի է, որ մեր բնական խոտհարքներն ու արոտավայրերը ցածր բերք են տալիս, բարձր չէ նաև ստացվող խոտի որակը, որը մեծ չափով անդրադառնում է անասնաբուծության մթերատվության վրա։ Հաշվումները ցույց են տալիս, որ ագրոտեխնիկական կոմպլեքս միջոցառումներ իրագործելիս 30 հազար հեկտար լավորակ արոտավայրեր կարելի է խոտհարքների վերածել և տարեկան առնվազն 35—40 հազար տոննա լրացուցիչ խոտ ստանալ։

Կերի բազայի ամրապնդման գործում կարևոր նշանակություն ունի մի շարք շրջանների (Գորիսի, Սիսիանի, Բասարգեչարի, Կրասնոսելսկի, Վեդիի) ձմեռային արոտավայրերի պահպանումը գարնան-ամառային ժամանակաշրջանում և դրանց ճիշտ օգտագործումը ձմռանը։ Կերի ռեսուրսները զգալի չափով կավելանան, եթե կոլտնտեսություններն ու սովխոզները հարավային թեքություն ունեցող արոտավայրերից առանձնացնեն և օգտագործեն մսուրային ժամանակաշրջանում։ Դա հնարավորություն կընձեռի տարեկան տնտեսելու 20—25 հազար տոննա խոտ։ Անհրաժեշտ է նաև գարնանը՝ մինչև գառները ալպիական բարձրադիր արոտավայրերը փոխադրելը, մատղաշներն արածեցնել արհեստական արոտավայրերում։ Այդ նպատակով պետք է կատարել խոտաբույսերի ցանք՝ յուրաքանչյուր 1000 գառի համար 4—5 հեկտարի հաշվով։ Այս միջոցառման լայն կիրառումը հնարավորություն կընձեռի գառներին անհամեմատ լավ վիճակում ամառային արոտավայրեր փոխադրելու, այնտեղ աճեցնելու, գիրացնելու. դրանով տնտեսությունները կապահովեն 8—9 ամսական գառների աշնանային առավելագույն քաշը։

Կերի արտադրության ավելացման աղբյուրներն արդյունավետ օգտագործելու շնորհիվ նշանակալից չափով կբարձրանան ոչխարների գլխաքանակն ու մթերատվությունը, առաջին հերթին 100 մաքիից փաստացի ստացվող 75—80 մատղաշի փոխարեն կստացվի ու կպահպանվի 90—95 գառ և հաջողությամբ կկատարվի ոչխարաբուծական մթերքների արտադրության հնգամյա պլանը։

Մինչև վերջին տարիներն իշխում էր այն սխալ կարծիքը, թե տնտեսապես ձեռնտու չէ ընթացիկ տարվա արու մատղաշի իրացումը. սակայն առաջավորների մասսայական փորձերը հիմնովին հերքեցին այդ։

Ինչպես հայտնի է, մեկ միավոր քաշաճի համար համեմատաբար քիչ կեր է ծախսվում 3—8 ամսական մատղաշի աճի ու գիրացման ժամանակ։ Այսպես, հասակավոր ոչխարների մեկ կգ քաշաճի համար ծախսվում է առնվազն 10 կգ, իսկ 3—8 ամսական մատղաշի՝ մոտ 8 կգ կերային միավոր։ Ոչխարաբույծների առաջնահերթ խնդիրն է՝ օգտագործել մատղաշի բիոլոգիական աճի այդ առանձնահատկությունը և լավագույն կերպով կազմակերպել արոտային



գիրացումը, աշնանը դրանց կենդանի քաշը (8—9 ամսական հասակում) 35—40 կգ հասցնելու համար։

Հաշվումները ցույց են տալիս, որ մինչև մեկ տարեկան արու մատղաշի իրացման շնորհիվ հոտում բարձրանում է մաքիների տեսակարար կշիռը (այժմ կոլտնտեսություններում ու սովխոզներում այն կազմում է 57,4 տոկոս), զգալի չափով ավելանում մթերքների արտադրանքը (բրդի, մսի, կաթի), տնտեսությունների եկամտաբերությունը, իսկ մատղաշի մսի ինքնարժեքը, հասակավոր ոչխարի համեմատությամբ, զգալի չափով իջնում է, քանի որ դրանք պահվում են հիմնականում արոտի հաշվին և մինչև հաջորդ մսուրային ժամանակաշրջանն արդեն իրացված են լինում։

Փորձերը ցույց են տալիս, որ արոտային պայմաններում վաղ ծնի, ինչպես կոպտաբուրդ բալբաս, նմանապես և խառնացեղ (կիսանրբագեղմ ու կիսակոպտաբուրդ) արու գառները լավ գիրանում են աշնանը. առանց լրացուցիչ կերակրման կենդանի քաշը հասնում է 35—41 կգ, իսկ մսեղիքը կշռում 16—18 կգ։ Մեկ տարի խնամելուց և կերակրելուց հետո այդ մատղաշների միջին կենդանի քաշը, լավագույն դեպքում, հասնում է 45—46, իսկ սպանդանոցայինը՝ 22—23 կգ։ Քաշաճի այդ տարբերությունը, ինչպես տեսնում ենք, այնքան փոքր է, որ չի արդարացնում մեկ տարվա ընթացքում մատղաշի վրա կատարած կերի և հետագա աճի ու պահպանման լրացուցիչ ծախսումները, որի հետևանքով բարձրանում է 1,5 տարեկան և ավելի արու ոչխարների մսի ինքնարժեքը։

Հանրապետության գարնան-ամառային լայնարձակ արոտավայրերում խոշոր եղջերավոր անասուններից և ձիերից բացի, արածում են մոտ 3 մլն մանր եղջերավոր անասուն, սակայն այդ տարածությունները բարելավելու և դրանք ռացիոնալ օգտագործելու շնորհիվ հնարավոր է մինչև 5 մլն ոչխար պահել։ Պահպանելով հոտի ընդունված կառուցվածքը, հնարավորություն կընձեռվի աշնանը բոլոր կատեգորիայի տնտեսություններից 1,2 մլն ոչխար վաճառել (40 հազար տոննա ընդհանուր կենդանի քաշով)։

Ինչպես ցույց է տալիս առաջավոր տնտեսությունների փորձը, 8—9 ամսական գառների մսի ինքնարժեքը կազմում է հասակավոր ոչխարի մսի ինքնարժեքի 50—60, իսկ տավարի մսի՝ 35—40 տոկոսը։ Զգալիորեն ցածր է նաև մատղաշի բրդի ինքնարժեքը։

Անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման հետ մեկտեղ (մթերատու անասունների գլխաքանակի աճ, կերակրման ու խնամքի պայմանների բարելավում) խոշոր նշանակություն ունի նաև տոհմային աշխատանքը, մասնավորապես, դրա կարևոր օղակներից մեկը՝ ցեղի բարելավումը և կատարելագործումը։

Տոհմային աշխատանքը կազմակերպելիս տարեցտարի կբարելավվեն կենդանիների ցեղական կազմը, մթերատու ու տոհմային հատկությունները և դրա հիման վրա անընդհատ կկատարելագործվի հոտի որակական կազմը, կավելանա անասնապահական մթերքների համախառն արտադրանքը։ Ոչխարաբուծության ինտենսիվացման համար անհրաժեշտ է արմատական վերափոխում կատարել հոտի վերարտադրման աշխատանքներում և ներդնել զոոանասնաբուժական ու տնտեսական կոմպլեքս միջոցառումներ, սահմանել զուգավորման ու ծնի լավագույն ժամկետներ և տնտեսությունների իրական հնարավորություններից ելնելով, աշխատանքի ու միջոցների համեմատաբար

փոքր ծախսումներով ապահովել այդ ճյուղի բարձր արտադրողականությունն
ու եկամտաբերությունը։

Ոչխարաբուծության զարգացմանը և արտադրանքի առավել աճմանը
խոշոր չափով արգելակում է հոտի ոչ ռացիոնալ կառուցվածքը։ Կոլտնտեսա-
յին-սովխոզային հոտերի ոչխարների ընդհանուր գլխաքանակում 1969 թ.
հունվարի 1-ի դրությամբ, մաքիների տեսակարար կշիռը կազմել է 57,4 տո-
կոս, որը խիստ անբավարար է։ Ոչխարաբուծական մթերքների արտադրու-
թյունն ավելացնելու նպատակով անհրաժեշտ է հոտի կառուցվածքն այնպես
վերափոխել, որ աշխատանքի ու միջոցների հիմնական ծախսումներն ուղղ-
վեն դրա վերարտադրողական մասի առավել պահպանմանը. դա հնարավո-
րություն կընձեռի գլխաքանակի տարեկան պլանի կատարման հետ միասին
մեծ չափով կրճատելու ձմեռման գնացող մինչև մեկ տարեկան արու մատղաշի
գլխաքանակը, հոտում մաքիների՝ տեսակարար կշիռը հասցնելու 57,4-ից
մինչև 70—75 տոկոսի։

Հոտի ռացիոնալ կառուցվածքի ներդրման շնորհիվ հանրապետության
կոլտնտեսություններում ու սովխոզներում մաքիների գլխաքանակն այժմյան
787 հազարից, 1973 թ. հնարավոր է հասցնել 1 մլն-ի և տարեկան 900—950
հազար գառ ստանալ, որի 50 տոկոսը (արուներ) արոտային գիրացման դնե-
լուց հետո, նույն տարում 8—9 ամսական հասակում կվաճառվի որպես էժան
միս, դրանով կկանխվի մինչև մեկ տարեկան արու մատղաշի մսուրա-
յին խնամքը։ Այդ նշանակում է, որ հանրապետության բոլոր կոլտնտեսու-
թյունների ու սովխոզների հոտերի կազմը ռացիոնալ դարձնելու և ձմեռա-
յին ու վաղ գարնանային ծին կազմակերպելու միջոցով հնարավոր կլինի
1975 թ. ոչխարի մսի արտադրանքն ավելացնել 2800—3000, բրդինը՝ 300—
320, կաթինը՝ 4000—4500 տոննայով։ Իսկ 100 մաքիից առնվազն 90 գառ
ստանալու ու պահպանելու միջոցով մսի արտադրությունը լրացուցիչ կավե-
լանա 5600, բրդինը՝ 300 տոննայով։

Ոչխարաբուծության ինտենսիվացման հիմնական հարցերից մեկն էլ մա-
քիների զուգավորման և ծնի լավագույն ժամկետների սահմանումն է։ Ծնի
ճիշտ ժամկետների կիրառմամբ հնարավոր է ստանալ ամրակազմ սերունդ և
աճեցնել տեղի բնակլիմայական պայմաններին հարմարված, առողջ, ամրա-
կազմ ու բարձր մթերատու կենդանիներ։

Հանրապետության տարբեր գոտիների բնատնտեսական պայմաններին
համապատասխան, ոչխարների զուգավորման ու ծնի ժամկետները տարբեր
են։ Դրանք պայմանավորվում են՝ կոշտ, հյութալի, խտացրած կերերի ապա-
հովվածությամբ, բարեկարգ ոչխարանոցների, աշնան-ձմեռային արոտների և
բավարար թվով աշխատող ձեռքերի առկայությամբ։

Առաջավոր տնտեսությունների փորձը ցույց է տալիս, որ ոչխարաբու-
ծության մեջ ամենաարդյունավետը ձմեռային և վաղ գարնանային ծինն է։

Ելնելով մեր բազմամյա փորձից և հաշվի առնելով հանրապետության
բնատնտեսական տարբեր պայմանները, նպատակահարմար ենք գտնում ոչ-
խարների զուգավորումն ու ծինն անցկացնել հետևյալ ժամկետներում.

Արարատյան գոտու տնտեսություններում զուգավորումն անցկացնել օ-
գոստոս—սեպտեմբեր ամիսներին, Զանգեզուրի գոտու տնտեսություններում՝
հուլիս—օգոստոսին, միջին լեռնային գոտու տնտեսությունների մեծ մասում՝
օգոստոս—սեպտեմբերին, բարձրադիր լեռնային շրջաններում, որտեղ մսու-
րային ժամանակաշրջանը երկարատև է (5—6 ամիս)՝ հոկտեմբերին, որպեսզի
ծինն ընդունվի մարտին։

# ՇԱՀՈՒԹԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԲԱՆԱԼԻՆ

## ԹԱՄԱՐԱ ՏԵԼԵԳԱՆՈՎԱ

ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1965 թ.) պլենումի նախանշած միջոցառումները ձեռնարկությունների պլանավորման մեթոդները բարելավելու, դրանց նախաձեռնությունը մեծացնելու, հասարակական շահերն ու անձնական շահագրգռվածությունն առավել զուգակցելու ուղղությամբ նոր հնարավորություններ բացեցին արդյունաբերական ձեռնարկություններում արտադրության կազմակերպումը կատարելագործելու համար։

ՍՄԿԿ XXIII համագումարի դիրեկտիվներում խնդիր է դրվում. «...տեխնիկական առաջադիմությունն է՛լ ավելի զարգացնելու, աշխատանքի և արտադրության կազմակերպումը կատարելագործելու, արտադրաֆոնդերի և կապիտալ ներդրումների օգտագործումը բարելավելու, արտադրանքի որակը լավացնելու հիման վրա բարձրացնել արտադրության արդյունավետությունը»։

Նոր տեխնիկան և տեխնոլոգիան լայնորեն արմատավորելու համար մեծ նշանակություն ունի արտադրության ու աշխատանքի կազմակերպման հետագա կատարելագործումը։ Ինչպես ցույց է տվել Սովետական Միության և արտասահմանյան երկրների փորձը, արտադրության կազմակերպման առաջադիմական ձևեր կիրառելու շնորհիվ ապահովվում են աշխատանքի արտադրողականության բարձրացումը, արտադրական կարողությունների ու սարքավորման լավագույն օգտագործումը, աշխատուժի ճիշտ տեղաբաշխումը, արտադրապրոցեսների առավել նպատակահարմար կազմակերպումը, եկամտաբերության և շահութաբերության բարձրացումը։

Արտադրության կազմակերպման առաջավոր ձևերն ապահովում են նաև աշխատանքի ռիթմը, որը շատ կարևոր է ո՛չ միայն արտադրանքի թողարկումն ավելացնելու և աշխատանքի նորմալ պայմաններ ստեղծելու, այլև ձեռնարկությունների սարքավորման անվթարությունն ապահովելու համար։

Արտադրության արդյունավետությունը բարձրացնելու գլխավոր լծակներից մեկը դրա առաջադիմականությունն է։ Մեքենայացման ու ավտոմատացման մակարդակի բարձրացման արդի պայմաններում նոր տեխնիկայի օգտագործման արդյունավետությունը մեծապես պայմանավորված է արտադրության կազմակերպման մակարդակով։ Ուստի, այն խիստ այժմեական է։

Այդ պայմաններում կոշիկի արդյունաբերության մեջ արդյունավետության բարձրացումը և արտադրության կազմակերպման կատարելագործումը վճռական նշանակություն ունեն։ Այս ձեռնարկություններում հիմնական ֆոնդերի օգտագործումը և շահավետության բարձրացումը կախված են այն բանից, թե որքանով առաջադիմական կլինի արտադրության կազմակերպման մակարդակը ֆաբրիկաններում և դրանք ինչպես կօգնեն գործադրելու չօգտագործված ռեզերվները։

Արդյունաբերության զարգացման ժամանակակից փուլի բնորոշ առանձնահատկությունն անցումն է ձեռնարկությունների պլանավորման ու տնտեսական խթանման նոր սիստեմին, որը կենսագործվում է ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի (1965 թ.) որոշմանը համապատասխան։ Տնտեսական ռեֆորմը զարգանում է լայնությամբ և խորությամբ։ Եթե 1966 թ. ՍՍՀՄ-ում նոր պայմաններում աշխատում էին թեթև արդյունաբերության 49 ձեռնարկություն, ապա 1967 թ. հունվարի 1-ից երկրում պլանավորման ու տնտեսական խթանման նոր մեթոդներին անցան այդ ճյուղի ավելի քան 700 ձեռնարկություն։ ՀՍՍՀ թեթև արդյունաբերության մեջ 1968 թ. ավարտվեց անցումը տնտեսական

նոր ռեֆորմին, բացառությամբ կարի արդյունաբերության ձեռնարկությունների։

ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի որոշումները լայն ասպարեզ են բացում արտադրական միավորումների զարգացման, դրանց ձևերի, կառուցման ու կազմակերպման սկզբունքների կատարելագործման համար։ Արտադրական միավորումների նպատակն է՝ արմատավորել տեխնիկական առաջադիմությունը, հասարակական արտադրության արդյունավետության բարձրացումը, արտադրաուժերի զարգացումը և դրա հիման վրա արտադրահարաբերությունների կատարելագործումը։

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը, տեխնիկական առաջադիմությունն անխզելիորեն կապված են արտադրության կենտրոնացման, արդյունաբերության կազմակերպման առավել առաջադիմական ձևերը՝ մասնագիտացումը, կոոպերացումը և համակցումը զարգացնելու հետ։ ՍՄԿԿ ծրագրում մատնանշվում է, որ մասնագիտացումն ու կոոպերացումը, արտադրական բնույթով մոտիկ ձեռնարկությունների նպատակահարմար համակցումը տեխնիկական առաջադիմության և աշխատանքի հասարակական բաժանման ու նպատակահարմար կազմակերպման կարևորագույն պայմաններից են։

Աշխատանքի հասարակական բաժանումն ուժեղացնում է կապերը ձեռնարկությունների, ճյուղերի միջև, բարձրացնում տնտեսական շրջանների զարգացման կոմպլեքսայնությունը։ Աշխատանքի բաժանումը և դրա հանրայնացումը բարենպաստ նախադրյալներ են ստեղծում արտադրության համակցման բարձր մակարդակի հասնելու համար։ Արդյունաբերական արտադրության կենտրոնացումը միևնույն ժամանակ տեխնիկայի արդյունավետ կիրառման կարևորագույն պայմանն է։

Սոցիալիստական արդյունաբերության կենտրոնացման բարձր աստիճանը ամենաառաջավոր, ամենակատարյալ տեխնիկայի կիրառման, արտադրության կազմակերպման առավել առաջադիմական ձևերի՝ մասսայական արտադրության, հարահոս եղանակի, կոնվեյերացման պրակտիկ կենսագործման կարևորագույն նախադրյալներից մեկն է։

ՀՍՍՀ-ում «Մասիս» արտադրական միավորման ստեղծումը նպաստեց լայն մասնագիտացման հիման վրա համասեռ ձեռնարկությունների կենտրոնացմանը։ «Մասիս» կոշիկի ֆիրման իր գործունեությունն սկսել է 1963 թվականից։ Այն կազմակերպելիս նախատեսվում էր արտադրության լայն մասնագիտացում, կոմպլեքսային մեքենայացում ու ավտոմատացում, արտադրության տեխնոլոգիայի և կազմակերպման կատարելագործում։ Այդ միավորումն ունեցավ իր դրական կողմերը։ Ֆիրմայի ղեկավարությունը կարողացավ կարճ ժամկետում առաջավոր տեխնիկայով և տեխնոլոգիայով հագեցնել շատ ֆիլիալներ։ № 7 ֆաբրիկան, որը կիսատնայնագործական մի ձեռնարկություն էր և արտադրության մեջ գերակշռում էր ձեռքի աշխատանքը, դարձել է կոշիկի լրիվին կոնվեյերացված ժամանակակից ձեռնարկություն։ Դա հնարավորություն ընձեռեց բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը և բարելավելու կոշիկի որակը։ Արդիականացված և նոր կոնվեյերներ են մտցված առաջին և երկրորդ ֆաբրիկաներում, կենտրոնացված է մեքենաների, սարքավորման և գործիքների մատակարարումը, կազմակերպված է ֆիլիալների սպասարկման մեխանիկական արտադրամաս։ Կապիտալ շինարարության վրա կատարված մեծ ծախսերը հնարավորություն ընձեռեցին գլխավոր ֆաբրիկայում արտադրական կարողությունները ավելացնելու մեկ մլն, իսկ չորրորդ ֆիլիալում՝ 500 հազար զույգ կոշիկով։

Չնայած դրան, ինչպես ֆիրման կազմակերպելիս, այնպես էլ դրա հետագա աշխատանքում թույլ էին տրվել որոշ սխալներ։ Բավարար ուշադրություն չէր նվիրվում ֆիլիալների տնտհաշվարկին։ «Մասիս» ֆիրմայի բոլոր ֆիլիալները զրկվել էին ինքնուրույնությունից, փոխադրվել ներֆիրմային տնտհաշվարկի, վերացվել էին պետբանկում ունեցած հաշվարկային հաշիվները, իսկ գլխադաս ձեռնարկության հաշիվը միավորման համար դարձել էր միասնական։ Հաշվի չէր առնված, որ ֆիլիալները տերիտորիալ առումով մեծ հեռավորությունների վրա են գտնվում գլխավորող ֆաբրիկայից։ Ֆիլիալների դիրեկտորները զրկվել էին իրավաբանական և ֆինանսական իրավունքներից։ Այդ պատճառով էլ վատանում էին աշխատանքի հեռանկարները, նվազել էր շահագրգռվածությունն արտադրությունը մեծացնելու, արտադրանքի որակը բարելավելու հարցում։ Շահույթներն ավելացնելու ասպարեզում չկար ձգտում, որովհետև դրանք կենտրոնացվում էին գլխավոր ձեռնարկության հաշվեկշռում և շահույթների մի մասն առանձնացվում էր ո՛չ միայն շահութաբեր, այլև վնասաբեր ֆիլիալների աշխատողներին խրախուսելու համար։ Այդպիսով, խրախուսվում էին թե՛ լավ, թե՛ վատ աշխատողները։

Քանի որ արտադրամիավորումների կազմակերպման նման ձևն իրեն չարդարացրեց, 1966 թ. «Մասիս» ֆիրմայի բոլոր ֆիլիալները նորից անցան լրակատար տնտհաշվարկի և ինքնուրույն հաշվեկշռի։

Ֆիրման կազմակերպելու ժամանակ եղած թերություններից մեկն էլ այն էր, որ նախատեսվում էր գլխավոր ձեռնարկությունում կենտրոնացնել հումքի և նյութերի կուտակումը, բոլոր ֆիլիալների համար կենտրոնացած կարգով կոշիկի երեսպատող մասերի ձևավորումը, պատրաստուքի կարը, կոշիկի ներբանային մասերի դրոշմումն ու մշակումը, ֆիլիալներին թողնելով միայն կոշիկի կարը։ Այդ նպատակով կառուցվեց հատուկ արտադրական առանձնաշենք, որտեղ պետք է տեղավորվեին նախապատրաստական ու սպասարկող բոլոր արտադրամասերը։ Սակայն արտադրության կազմակերպման ոչ անհրաժեշտ բարձր մակարդակի պատճառով այդ միջոցառումներից ոչ մեկը չկենսագործվեց։

Արտադրությունը կատարելագործելու և ավելի բարձր մակարդակի հասցնելու համար մեծ նշանակություն ունեցավ արդյունաբերական ձեռնարկությունների պլանավորման ու տնտեսական խթանման նոր սիստեմին անցնելը։ Այժմ տնտեսական-ֆինանսական գործունեության արդյունքները գնահատվում են ըստ իրացված արդյունքների ծավալի, օգուտների և շահավետության։ Նախատեսված պլանի համեմատությամբ, որքան մեծ է իրացված արտադրանքի ծավալը, շատ են օգուտները և բարձր է շահութաբերության մակարդակը, այնքան ձեռնարկությունն ավելի շատ շահույթներ կունենա։ Դրա շնորհիվ արտադրանքի թողարկումն ավելացնելու, որակը բարելավելու, բարձր պահանջարկ ունեցող նոր, բարձրորակ արտադրանքներ յուրացնելու և այլ արտադրական ցուցանիշների համար կոլեկտիվին պարգևատրելու, ինչպես նաև ձեռնարկության աշխատողների կուլտուր-կենցաղային և բնակարանային պայմանների բարելավման, արտադրության ընդլայնման, տեխնիկական մակարդակի կատարելագործման, արտադրության ու աշխատանքի կազմակերպման համար ծախսեր կատարելու հնարավորություն կընձեռի։

Հայկական ՍՍՀ թեթև արդյունաբերության մինիստրության «Մասիս» կոշիկի ֆիրման 1967 թ. ապրիլի 1-ից անցել է պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմին։ 1967 թ. 9 ամիսների ընթացքում կոշիկի բոլոր ֆաբրիկաներն արտադրանքի իրացման պլանը գերակատարեցին։ Ամբողջությամբ վերցրած, «Մասիս» կոշիկի միավորումը պլանը գերակատարեց 5,9 տոկոսով։ Ֆիրմայում օգուտներից տնտեսական խրախուսման ֆոնդ է փոխանցվել պլանով նախատեսվածից 52,3 տոկոսով ավելի. այդ թվում պլանից դուրս նյութական խրախուսման համար՝ 352, կուլտուր-կենցաղային միջոցառումների՝ 87 և արտադրության զարգացման՝ 24,2 հազար ռուբլի։

Արտադրաֆոնդերի օգտագործումը բարելավելու և արտադրության արդյունավետությունը բարձրացնելու համար սահմանված է շահութաբերության նոր ցուցանիշ՝ շահույթների հարաբերությունը հիմնական արտադրաֆոնդերի գումարի և նորմավորվող շրջանառու միջոցների նկատմամբ։ Շահութաբերության ցուցանիշի հաշվարկման այդ մեթոդի առավելությունն այն է, որ այն ձեռնարկության կոլեկտիվին նպատակադրում է արտադրաֆոնդերն ավելի լավ, ինտենսիվ օգտագործելու միջոցով բարձրացնել արտադրության շահավետությունը։

Կոշիկի «Մասիս» ֆիրմայում նոր սիստեմի շնորհիվ շահութաբերության մակարդակը բոլոր ֆիլիալներում պլանի դիմաց զգալիորեն գերակատարվեց։ Այսպես, ամբողջ միավորման հաշվարկային շահութաբերությունը 1967 թ. ինն ամսում աճեց 53 տոկոսով։ 1968 թ. բոլոր ֆիլիալներում աճեց շահութաբերությունը։

Շահութաբերության մակարդակը պայմանավորված է շատ գործոններով և, ամենից առաջ, այն նորմայով, որը որոշում է շահույթների չափը և հիմնական արտադրաֆոնդերի ու նորմավորվող շրջանառու միջոցների կարևորագույն տարրերի օգտագործման արդյունավետությունը։ Իր հերթին, այնպիսի ամբողջականացնող ցուցանիշ, ինչպիսին շահույթն է, կախված է ո՛չ միայն օբյեկտիվ տնտեսական պայմաններից, այլև սուբյեկտիվ գործոններից՝ աշխատավորների ակտիվությունից, սոցիալիստական մրցության կազմակերպումից, աշխատանքի և արտադրության գիտական կազմակերպման մակարդակից, ձեռնարկության ղեկավարության տնտեսական ու վարչական մեթոդների ճիշտ զուգորդումից և այլն։ Ձեռնարկության արտադրական գործունեության կոնկրետ պայմաններում այդ գործոնների բազմազանության ամբողջությունն էլ, վերջին հաշվով, որոշում է դրանց շահութաբերությունը։

Այդ գործոնները տարբեր ձեռնարկությունների վրա տարբեր կերպ են անդրադառնում։ Սակայն բնորոշ փոփոխությունները որոշել կարելի է միայն մասսայական միջին տվյալների հիման վրա։

Կոշիկի արդյունաբերության զարգացումը և արտադրության շահավետության բարձրացումը մեծ չափով պայմանավորված է դրա կազմակերպական մակարդակով։ Կոշիկի արդյունաբերության տարբերիչ հատկանիշն արտադրության մասսայականությունն է և աշխատանքի դետալային բաժանումը՝ ըստ կոշիկի արտադրման տեխնոլոգիական պրոցեսների։ Կոշիկ կարելու համար անհրաժեշտ է կատարել մոտ 340 գործողություն։ Թողարկվող արտադրանքի մասսայականությունը պահանջում է չընդհատվող արտադրության մեթոդներ, դետալների մշակման և մեկ գործողությունից մեկ այլ գործողության անցումների մեքենայացման բարձր մակարդակ։ Կոշիկի ֆաբրիկաների արդյունավետությունը պայմանավորված է արտադրության պրոցեսների մեքենայացման մակարդակով և, մասնավորապես, մեքենայացման կոմպլեքսայնությամբ։ Կոշիկի արդյունաբերությունը զարգանում է արտադրապրոցեսների ինտենսիվ մեքենայացման և ավտոմատացման ճանապարհով։

«Մասիս» ֆիրմայի ֆիլիալներում նկատվում են տեխնիկական բազայի առավելագույն կոմպլեքսայնության և ավտոմատացման տենդենցներ։ Այսպես, 1967 թ. կենտրոնացված պատրաստուքի արտադրամասում շահագործման է հանձնվել կիսաավտոմատ հասցեա-բաշխիչ կոնվեյեր, որի էլեկտրական սխեման մշակվել և իրականացվել է կիսահաղորդիչների հիման վրա։ Հասցեա-բաշխիչ կոնվեյերի կիրառումը բարելավում է աշխատանքի կազմակերպման ռեժիմը և աշխատանքային պայմանները։

1967 թ. անց են կացվել մի շարք այլ միջոցառումներ ևս, որոնք նպաստեցին արտադրության կազմակերպման մակարդակի բարձրացմանը։ Կազմակերպական մակարդակ հասկացողությունը ենթադրում է այնպիսի պայմանների առկայություն, երբ առավելագույն չափով օգտագործվում են արտադրության այն բոլոր տարրերը, որոնք ապահովում են առավել մեծ արդյունքներ՝ առավել քիչ ծախքերի առկայությամբ։ Արտադրության կազմակերպական մակարդակի բարձրացման տենդենցները պետք է անդրադառնան աշխատանքի արտադրողականության և ֆոնդազինվածության աճի հարաբերակցության վրա։

«Կոշիկի «Մասիս» ֆիրմայում աշխատանքի արտադրողականությունը 1967 թ. աճել է 3,5, իսկ ֆոնդազինվածությունը (այդ նույն ժամանակաշրջանում)՝ 45,1 տոկոսով։ Բերված տվյալները ցույց են տալիս, որ կոշիկի «Մասիս» միավորման ձեռնարկություններում կազմակերպական մակարդակը դեռևս բավարար վիճակում չէ, չնայած այն բանին, որ բազմազան միջոցներ են ձեռնարկվել տեխնոլոգիան բարելավելու ուղղությամբ, արմատավորվել են կոշիկի ներբաններն ամրացնելու առաջավոր մեթոդներ, տարեցտարի աճել արտադրական կարողությունները։ Այստեղից հետևում է, որ ֆիրմայի ձեռնարկություններում արտադրանքի թողարկման աճը առավելապես կատարվել է հիմնական արտադրաֆոնդերի մեծացման հաշվին։ Սակայն արտադրության կազմակերպման մակարդակի բարձրացման համար աշխատանքի արտադրողականությունն ավելի մեծ չափով պետք է աճի, քան ֆոնդազինվածությունը։ Հաշվարկումները ցույց են տալիս, որ 1967 թ. արտադրանքի աճը ձեռք է բերվել աշխատանքի արտադրողականության հաշվին՝ 28,8 և ֆոնդազինվածության աճի հաշվին՝ 71,2 տոկոսով։ 1968 թ. այդ ցուցանիշները կազմել են 47,3 և 52,7 տոկոս։

Արտադրության կազմակերպական մակարդակի բարձրացումը պետք է նպաստի արտադրակարողությունների ավելի լրիվ օգտագործմանը՝ սարքավորումների օգտագործման ինչպես ինտենսիվ, այնպես էլ էքստենսիվ գործակիցների հաշվին։ Դա շատ կարևոր նշանակություն ունի նոր պայմաններում աշխատող ձեռնարկությունների համար, երբ հիմնական արտադրաֆոնդերը վճարովի են։

Հանրապետության կոշիկի արդյունաբերության մեջ պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմով կատարվող աշխատանքի արդյունավետությունը մեծ չափով պայմանավորված է թողարկվող արտադրանքի որակով։ Արտադրանքի որակի բարձրացումը հավասարազոր է աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։

Չնայած նրան, որ «Մասիս» ֆիրմայի ձեռնարկություններում տնտեսական գործունեության բոլոր հիմնական ցուցանիշներով պլանային առաջադրանքները գերակատարվել են, այնուամենայնիվ, արտադրանքի որակը դեռևս անբավարար է։

Հաշվետվության համաձայն, «Մասիս» ֆիրմայի ձեռնարկություններում առաջին տեսակի արտադրանքը 1967 թ. պլանով նախատեսված 81 տոկոսի փոխարեն 83,5 տոկոս էր։ Չնայած պլանը գերակատարվել է, բայց 1967 թ. ցածրորակ կոշիկի համար ֆիրմային ներկայացվել է 159 դանգատ, որի համար 52,7 հազար ռուբլի տուգանք է վճարվել։ Թողարկվող կոշիկների 14—15 տոկոսը, միջին հաշվով, իջեցվում է ավելի ցածր տեսակի կամ վերադարձվում ձեռնարկություններին՝ թերությունները վերացնելու համար։

Տնտեսական ռեֆորմն ուղղված է բարձրորակ արտադրանք թողարկելու գործում ձեռնարկությունների շահագրգռվածության բարձրացմանը։ Արտադրանքի որակի բարձրացումը դառնում է տնտեսագիտության տեսության և տնտեսական պրակտիկայի առավել հրատապ պրոբլեմներից մեկը։

Մինչև տնտեսվարման նոր սիստեմը ձեռնարկությունների գործունեության գնահատականը, ինչպես նաև աշխատողների նյութական խթանման սիստեմը, որոշվում էր առավելապես արտադրության զարգացման քանակական ցուցանիշներով։ Անցումը պլանի կատարման գնահատականին (ըստ իրացված արտադրանքի, շահույթի և եկամտաբերության) հնարավորություն է տալիս ավելի ճիշտ գնահատելու ո՛չ միայն քանակական, այլև որակական ցուցանիշները։

Արտադրանքի որակի բարձրացումը՝ որպես գիտատեխնիկական առաջադիմության և հասարակական աշխատանքի տնտեսման կարևոր միջոց, նպաստում է հասարակական հարստության ավելացմանը և ժողովրդական տնտեսության ու բնակչության պահանջմունքների լավագույն բավարարմանը։



# ԵՐԱԺՇՏՈՒԹՅԱՆ ԱՊԱԳԱՆ ԴՊՐՈՑՈՒՄ Է*

Երգն ու երաժշտությունն ամեն մի ժողովրդի հոգևոր մշակույթի կարևորագույն տարրերից են։ Ավելին, ժողովրդի հոգեկան կազմակերպվածության աստիճանն զգալի չափով բնութագրվում է նրանով, թե երաժշտական զարգացման ինչպիսի մակարդակի վրա է նա, և նրա կյանքում ինչ տեղ է գրավում գեղարվեստորեն լիարժեք մասսայական երգը։

Լավ երգն առաջմղիչ ուժ է, հոգեկան վերելքի աղբյուր։ Պատմական որոշ հանգամանքներում երգը առաջադիմական շարժումների հզոր դաշնակիցն է եղել, համախմբել ու թևավորել է մասսաներին։ Բավական է հիշել, թե ինչպիսի դեր էին կատարում պայքարի բովում ծնունդ առած ազատասիրական երգերը Ֆրանսիայում 1789-ից մինչև 1871-ը՝ Փարիզի կոմունան։ Ժողովրդի նվիրական հույզերի ամենավառ արտահայտիչն էին *Մարսելյոզը* և հետո՝ առաջին անգամ 1888 թ. Լիլլի բանվորների տոնահանդեսին երգված *Ինտերնացիոնալը*։

Ռուսաստանում ճորտատիրական բռնապետության դեմ ծավալված շարժումներին ուղեկցում էին այնպիսի մարտաշունչ երգեր, ինչպես՝ *Վարշավյանկան* ու *Անվախ ընկերը*։ Իտալիայում *Բանդիերա Ռոսան* արտահայտում էր զանգվածների ցասումը Մուսոլինիի դիկտատուրայի դեմ։

Հին ժամանակներից երգը եղել է նաև մեր ժողովրդի ուղեկիցը նրա լավ ու վատ օրերին, պանդխտության մեջ, հանուն ազգային ու սոցիալական ազատագրման մղվող պայքարում։

Իսկ ժամանակակից աշխարհում հոգևոր բարձր զարգացման հասած որևէ ժողովրդի կյանքն անհնար է պատկերացնել առանց մասսայական երաժշտական կուլտուրայի ու, մանավանդ, նենցաղի մեջ ստած խմբերգային արվեստի։ Եվ, եթե ուշադիր դիտում ենք այս երևույթի ակունքները, աշխատում պարզել, թե ինչ ազդակների շնորհիվ է ժողովրդի ընդերքը թափանցել երաժշտական բարձր կուլտուրան, տեսնում ենք, որ միշտ և ամենուր սկսել են դպրոցից, մանուկ սերնդի երաժշտական կրթությունից։

Դպրոցական երաժշտության զարգացման բացառիկ կարևոր դերը համընդհանուր ճանաչում է գտնում։ Դրա արտահայտությունն էր նաև «Յունեսկոյի» 1953 թ. Բրյուսելում հրավիրած միջազգային կոնֆերանսը, ուր քննարկվեց «Երաժշտության դերը պատանիների և անչափահասների դաստիարակության գործում»։ Կոնֆերանսում կարդացված հիմնական զեկուցման մեջ ասվում էր.

> «**Երաժշտության ապագան դպրոցում է.** այս խոսքը սոսկ ընձալի մի մտորում չէ այլևս։ Խնդիրն այն է, թե ինչպես կարելի է ամբողջ Եվրոպայում ստեղծել ճշմարիտ մարդասիրության վրա հիմնված երաժշտական կրթություն՝ մանկապարտեզից սկսած։ Հնօրյա կուլտուրա ունեցող Եվրոպայի ամեն մի երկրում... ամենքը, որ իրոք գնահատում են երաժշտական կրթությունը դպրոցում, դիտում են այն իբրև դարուս աղետների և տարաբախտությունների դեմ մաքառելու մի սիստեմ, ընդհանրական ու վստահելի մի դեղատոմս»։

Մարդասիրական գեղեցիկ իղձերով համակված զեկուցողը, թերևս, փոքր-ինչ գերագնահատում է երաժշտական կրթության հնարավորությունները ժամանակակից իրականության մեջ։ Բայց, որ «դպրոցական երաժշտության» դերն իրոք վիթխարի է նոր սերնդի դաստիարակության, ժողովրդի հոգևոր կուլտուրայի զարգացման գործում, անառարկելի է։

Երաժշտության ներգործությունը մանկան զգացմունքների վրա խոր է, անմիջական։ Երաժշտական ընկալումների և պատկերացումների աշխարհը մի սքանչելի անեզրություն է մանկան համար, ուր նա լողում է ինչպես լուսաթույր եթերում։ Անտարակույս, երաժշտությու-

* Հատված տպագրության ներկայացված աշխատությունից։

նը բացառիկ դեր է կատարում երեխայի, պատանու բնավորության մեջ ամեն տեսակ հոռի հակումները հաղթահարելու, մեղմություն, քնքշություն, ավելի լայն առումով՝ մարդկայնություն ներարկելու գործում: Զուր չի ասել Շեքսպիրը *Վենետիկի վաճառականը* կատակերգության մեջ.

Չկա մի էակ այնքան փայտացած, բիրտ ու կատաղի,
Որ գեթ մի րոպե չընափոխվի երաժշտությամբ:
Ով իր մեջ չունի երաժշտություն
Եվ չի զգացվում քաղցր հնչյունների դաշնակությունից,
Նա ընդունակ է դավի, դերբանքի և խարդավանքի,
Մռայլ են նրա հոգու հույզերը ինչպես գիշերը,
Եվ խավարչոտ են նրա կրքերը Էրեբոսի պես:
Պետք չէ հավատալ այդպիսի մարդու...

Գոհունակությամբ կարող ենք հիշել, որ հայ մանկավարժների շրջանում վաղուց ի վեր գոյություն է ունեցել բավականին ճշմարիտ պատկերացում երաժշտության «բարոյաշունչ ներգործության», դպրոցում նրա ունեցած վսեմ կոչման վերաբերյալ: Պոլսահայ մամուլի առաջադեմ օրգաններից «Մասիսը» դեռևս 1894 թ. հակիրճ ու հստակ ձևակերպել է այդ միտքը.

Երգը **«միայն գեղեցիկին չի ծառայեր, այլ գեղեցիկով ի բարին կառաջնորդե»:** Հեղինակն ավելացնում է. «Երբ կյանքի նյութական շահերը խեղդել կսպառնան սրտի դեպի գեղեցիկն ունեցած հակումը, երբ ամեն մտածում ու ջանք այնտեղ կհանգի, թե պետք է տիրանալ այն մետաղին, որի շուրջը հորթի կերպարանքի տակ պար բռնեցին իսրայելացիք, ճիշտ այս ժամանակներուն մեջ ամենեն կարևոր է արվեստը բարձր բռնել» (Հ. Տիրատուրյան. **Երաժշտությունը վարժարանաց մեջ,** «Մասիս», 1894 թ. № 5):

Այս նույն միտքը, որ այնքան հրատապ է հնչում, այլևայլ ձևերով արտահայտված է նաև կովկասյան նախահեղափոխական մամուլի էջերում: Բայց սուղ էին պայմանները: Պետական օժանդակության մասին խոսք լինել չէր կարող ո՛չ ցարական Ռուսաստանում, ո՛չ, իհարկե, սուլթանական Թուրքիայում: Եվ ամեն մի, թեկուզ աննշան քայլ երաժշտական կրթության բնագավառում այն ժամանակ իրավամբ մեծ իրադարձություն էր թվում:

Մեզ մոտ երաժշտական կրթությունը լուրջ հիմքերի վրա դնելու մասին մտածել հնարավոր եղավ միայն սովետական կարգերի հաստատումից հետո: Լիարժեք դասավանդման համար, սակայն, դեռ երկար ժամանակ պակասում էին և՛ համապատասխան կադրերը, և՛ պահանջվող նյութատեխնիկական միջոցները: Երաժշտության մասնագետ ուսուցիչների պակասը դեռևս այսօր էլ զգացվում է ո՛չ միայն մեզ մոտ, այլև Սովետական Միության կենտրոնական քաղաքներում: Վերջին տարիներս այս առումով դրությունն սկսեց շեշտակի փոխվել: Այդ բեկումը մի կողմից առնչվում է երաժշտական կուլտուրայի ընդհանուր վերելքի, գործիքների և այլ պարագաների մասսայական արտադրության հետ, մյուս կողմից՝ ժողովրդական լուսավորության մարմինները և իրենք՝ մանկավարժներն սկսեցին ավելի եռանդուն միջոցների դիմել դպրոցում երաժշտության դասավանդումը բարելավելու նպատակով: Եվ այժմ իրավամբ կարող ենք ասել, որ արդեն ունենք աշակերտների երաժշտական դաստիարակության՝ հիմնականում մշակված մի համակարգ:

Հայաստանը ևս այս առումով արմատական բարեփոխման ընթացքի մեջ է և դա հիմք է տալիս հավատալու, որ առաջիկա տարիները կլինեն երաժշտական դաստիարակության ծավալման, բուռն վերելքի տարիներ: Երաժշտության ուսուցիչների պատրաստման գործը դրվում է ավելի լուրջ հիմքերի վրա: Դրա հետ միասին, մոտալուտ բարեփոխման առհավատչյան են նոր ուսումնական ծրագիրը և հայ իրականության մեջ առաջին անգամ ստեղծված և հրատարակված I—VIII դասարանների երաժշտության դասագրքերը: Երաժշտության դպրոցական ծրագիրն ինքնին կարևոր մի երևույթ է, կուլտուրական մեծ նվաճում: Ծրագրի համաձայն երաժշտության ունկնդրումը դպրոցում դիտվում է իբրև ուսումնական լուրջ պարապմունք: Ամեն մի դասարանի «ունկնդրական» ծրագիրն այնպես է կազմված, որ այն ո՛չ միայն սոսկ ներզգայական հաճելի տպավորություններ հարուցի, այլև վարժեցնի աստիճանաբար ավելի խոր վերապրելու ստացած տպավորությունները, ինքնուրույն դատելու դրանց մասին: Իսկ *զգացողության զարգացումը*, թերևս, ամենակարևորն է *հանրակրթական դպրոցում.* քանի որ տրամադրում է մանկանն այն բանալին, որով նա հետզհետե պետք է բացի ձայնարվեստի հոյաշեն տաճարների դռները:

Ծրագրի մշակման ուղղությամբ կատարված երկար տարիների կոլեկտիվ աշխատանքը տվել է իր պտուղները: Մնում է պայմաններ ստեղծել՝ բոլոր դպրոցներում լիովին կենսագործելու ծրագրի ուրվագծած համակարգը՝ երաժշտության ուսուցմանը և երեխաների գեղագիտա-



կան դաստիարակությանը զարկ տալու նպատակով: Այդ նշանակում է, նախ՝ ձեռք բերել պահանջվող երաժշտական ստեղծագործությունները, տեխնիկական միջոցներ ստեղծել դրանց կատարման համար և կատարել դրանք համապատասխան դասարաններում՝ զուգակցելով ծրագրային նյութի ուսուցմանը: Երկրորդ՝ ունկնդրման ժամերը դիտելով իբրև լիարժեք ուսումնական պարապմունք, հաջորդաբար իրագործել ծրագրով նախատեսված բոլոր մեթոդական պահանջները: Չմոռանանք ասել, որ եթե ունկնդրման ծրագիրը հենվում է մեծ մասամբ դասական երաժշտության վրա, ապա կատարողական վարժությունների, երաժշտության դասընթացի ուսուցման համար գլխավորապես ընտրված են ժամանակակից հայ երաժիշտների երկերը: Գոհունակությամբ ենք հիշատակում, որ գտնվել են իրենց բնույթով բազմազան, մանուկներին մատչելի բավականաչափ երկեր բոլոր (I—VIII) դասարանների համար: Մինչդեռ 1881 թ. մեր ականավոր մանկավարժ Սեդրակ Մանդինյանը Շուշուց (որտեղ նա թեմական դպրոցի տեսուչն էր) սրտի ցավով գրում էր Նոր-Նախիջևան՝ Ռափայել Պատկանյանին. «Մեր մանուկները երգ չունեն» ու թախանձագին խնդրում էր բանաստեղծին՝ իր մուսայով օգնության հասնել: Մանկական երգը երկար ժամանակ մնում էր ամենաանհրաժեշտ և ամենից ավելի պակասող տարրը մեր ազգային մշակույթում: Ու, թեև այժմ ևս մանկական ամեն նոր երգի երևան գալը կարևոր իրադարձություն է. այդուհանդերձ, ինչպես ցույց է տալիս ծրագիրը, կուտակվել է նոր երգերի այնպիսի մի պաշար, որը գումարվելով նախահեղափոխական ժառանգությանը, լիակատար հնարավորություն է ընձեռում պատշաճ բարձրության հասցնելու երաժշտության ավանդումը դպրոցում:

Ելնելով դպրոցական իրականությունից, անդրադառնանք մի քանի էական խնդիրների, մի կողմ թողնելով ծրագրի՝ երաժշտության թեորիայի և սոլֆեջիոյի ուսուցմանը վերաբերող մասը. այն մտածված և բազմիցս ստուգված դիդակտիկ-մեթոդական հրահանգների մի ամբողջություն է և սոսկ պետք է ճշգրիտ կատարել: Խոսենք երգեցողության մասին, քանի որ դա է երաժշտության դպրոցական ուսուցման առանցքը:

Երգեցողությունը, որոշ իմաստով, *բնական վիճակ* է մարդու, մանավանդ, երեխայի համար, որն ավելի անմիջական է իր հույզերն արտահայտելիս: Մանկան զվարթությունը, հոգեկան աշխույժը, նրա հաղորդակցությունն ու շփումը շրջապատի հետ, ներքին գոհունակությունն իր զբաղմունքից, մանկական բազում հոգեվիճակներ դրսևորվում են նրա *երգեցիկ տրամադրության* (բարձրաձայն կամ կամացուկ երգի, մեղմ սուլոցի) մեջ:

Եվ, ահա, այս բնական, տարերային զգացողությունն ու տրամադրությունը զարգացնելը, այն սովորույթի և գիտակցական մշակույթի աստիճանին հասցնելը հենց դպրոցական երգեցողության խնդիրն է: Ըստ ուսումնական ծրագրի, I դասարանից սկսած, պետք է հետզհետե գաղափար տալ երեխաներին «կյանքի ու երաժշտության» կապի մասին, կատարելով այնպիսի ստեղծագործություններ, որոնց մեջ հեղինակը ձգտել է զգացնել արտաքին աշխարհի ձայները, կենսական այս կամ այն երևույթի ռիթմը: Ճիշտ կլինի այդ նպատակով երեխաներին մոտիկից հաղորդակից դարձնել նաև երաժշտական հնչյունականության գլխավոր սկզբնաղբյուրին՝ կենդանի բնությանը, բնության երաժշտությանը, նրա ուշադրությունը հրավիրելով անտառի, գետակի, լճակի ձայների վրա. այդպիսով, մենք ո՛չ միայն գաղափար կտանք երաժշտության բնական սկզբնաղբյուրների մասին, այլև կխթանենք երեխայի երաժշտական զգացողությունը, կզարգացնենք նրա մեջ ինքնամոռաց մտորմունքի, խոհականորեն ունկնդրելու ունակություն, որն անչափ կարևոր է երաժշտություն սովորելիս:

Այս նախնական զգացողությունից դեպի *երգելիս հաճույք ստանալը, երգելու մշտական պահանջ զգալու* աստիճանը կատարվող անցումն այն առաջին հաղթանակն է, որ տանում է երաժշտության ուսուցիչն իր աշխատանքում: Դրանից հետո պետք է ջանալ աշակերտի հոգում ստեղծել այն համոզմունքը, թե երգ-երաժշտություն սովորելը լուրջ գործ է, որ երաժշտությունից կարելի է լիարժեք հաճույք ստանալ միայն այն դեպքում, երբ այն յուրացվում է իբրև գիտություն, աշակերտը խորապես գիտակցում է, որ երգեցողություն սովորելը աշխատանք ու կարգապահություն պահանջող զբաղմունք է:

Ինչպես վկայում են երաժշտության մեծավաստակ ուսուցիչները, առաջին նպատակակետը պետք է լինի հնարավոր բոլոր եղանակներով *երեխաների հոգում սերմանել երաժշտության հաճույքի լիակատար զգացողությունը*, որն աստիճանաբար զարգանալով սովորեցնում է երեխային նկատել, հիշողության մեջ պահել շատ բան, որ հետագայում փոխարկվելու է վարժության, ապա նաև՝ հմտության: Թերևս որակային առումով այս անցումը նկատվում է այն պահից, երբ երեխան սկսում է արտահայտիչ կատարել երգը և զգալ դրա, իբրև իր ձեռք բերած ունակության նոր, մեծ հաճույքը:

Այսպես, ուրեմն, արտահայտիչ կատարումը երեխայի գեղագիտական դաստիարակության դրսևորման առաջին աստիճանն է, որին հետևող ոգեշունչ, ինքնամոռաց տրամադրությունը

հենց այն *գեղագիտական հաճույքն է*, որ նա ապրում է, զգալով ու ըմբռնելով երաժշտությունն իբրև այդպիսին։

Անշուշտ, ոգեշնչման աղբյուրը դպրոցում ո՛չ միայն երգի, իբրև արվեստի, ստեղծագործական հատկանիշներն են, այլև ուսուցչի անձնավորությունը, նրա արվեստասիրությունը, բանիմացությունը, մանկավարժական ձիրքը։ Բայց սա արդեն այլ հարց է, որին այստեղ անդրադառնալու հնարավորություն չունենք։

Դպրոցական երաժշտության նոր ծրագրերն ու դասագրքերը մեզ մոտ ուսմանը հաղորդում են մանկավարժորեն հարուստ բովանդակություն։ Երաժշտական կրթության արևմտաեվրոպական ու ամերիկյան կոնցեպցիաներում երբեմն հանդիպում ենք արդեն ծամծմված, թվում է լոկ սովորույթի ուժով հարատևող այսպիսի մի ձևակերպման. ուսուցման պրոցեսում երաժշտությունը «սոսկ միջոց է, բայց ոչ նպատակ»։ Այլ կերպ ասած՝ թե ի՛նչ երգեր կերգեն երեխաները, ի՛նչ կտորների կատարմամբ կզարգացնեն իրենց ունակությունները, կարևոր չէ. էականը երգել, նվագել սովորելն է։ Մինչդեռ հենց *սովորեցնելու*, աստիճանաբար բարդացող դասընթացի յուրացումը գլուխ բերելու համար ևս միշտ հարկ է եղել ընտրել որոշ տիպի և բարդության որոշակի թվով երկեր։ Բայց, եթե ցանկանում ենք կատարողական պարզ ունակությունների հետ զարգացնել նաև երեխաների գեղարվեստական ճաշակը, ապա առաջնակարգ նշանակություն պետք է տալ ուսուցանվող նյութի ընտրությանը (ո՛չ միայն մատչելիությամբ ու տիպով, այլև ըստ ժանրերի և գեղարվեստական որակի)։

Դեռևս 1900-ական թթ., գանգատվելով, որ երաժշտությունը հայկական դպրոցներում այնպես են անցնում, որ «մանկան ճաշակը մնում է անկիրթ և անտարբեր», Գ. Պալասանյանը համարում է այդ «ցավալի և կորստաբեր երևույթ»։ Իր ժամանակի տարրական դպրոցի երգացանկից նա հիշում է *Մեզնից շատ առաջ կար մի թագավոր*, և այլն ու հարց է տալիս. «7—9 տարեկան դպրոցականը ընդունա՞կ է արդյոք ըմբռնելու սիրո, «իմ յարի» գաղափարը (*Երաժշտությունը մեր դպրոցներում*, «Նոր դպրոց», Թիֆլիս, 1909 թ., № 5)։ Նույն շրջանում Արշակ Տեր-Հովհաննիսյանը բողոքում է այն բանի դեմ, որ հասարակության մեջ տարածում են «վավաշոտ երաժշտությունը, որը բացի հեշտանքից ուրիշ ոչ մի բարոյական ցանկություն չի ծնում ունկնդիրների մեջ» (*Երաժշտական դաստիարակությունը*, «Ընկեր», Թիֆլիս, 1912 թ., № 15)։

Հիմա էլ պատահում է, ընտանեկան հանդեսներին մեծերն ստիպում են յոթ-ութ տարեկան երեխային ձայնը գլուխը գցած երգել.

Լուսի՛ն, ո՛վ լուսին, չտեսա՞ր յարիս,
Յարաբ ո՞ւր գնաց, չտեսա՞ր նրան...
. . . . . . . .
Յար սիրելը շատ նեշտ բան է, չլինի խաբվեք...

Մեզ ունի՞ արդյոք այստեղ դպրոցը։ Անշուշտ։ Դպրոցներում առիթ ենք ունեցել նկատելու, որ ցածր, անզարգացած ճաշակի տեր մարդկանց ու նրանց ազդեցությանը ենթակա երեխաների, բնակչության դեռևս բավականաչափ ստվար խավի «սոցիալական պատվերին» ընդառաջելով, ուսուցիչներից ոմանք երբեմն թույլատրում են երգել և նույնիսկ սովորեցնում են որոշ ցածրորակ, բայց «ժողովրդականություն» ձեռք բերած երգեր, որոնք ճիշտ է, չեն լսվում միջդպրոցական տոնահանդեսներին, բայց «ներքին կարգով» տարածվում են՝ «ինչ ուզում են երգեն, միայն թե երգեն» սկզբունքով։

Մինչև վերջերս դպրոցին հանձնարարվող երգացանկում ևս քիչ չէին ցածրորակ գործերը։ Նոր ծրագրով ավելի համակողմանի ու խիստ ընտրությամբ են հանձնարարվում երգերը։ Ահա, օրինակ, առաջին դասարանի երգերն առաջին քառորդի համար. «Ջա՜ն, ջա՜ն, ջա՜ն աշուն է», «Սարսար» (հայկական ժողովրդական երգ), «Անբախտ փիսոն» և այլն։ Սա ուսման այն աստիճանն է, երբ երեխան հրաժեշտ է տալիս օրորոցային երգերին, երաժշտական թոթովանքի շրջանին և թևակոխում բոլորովին տարբեր, թեև նույնպես վաղ մանկական մի շրջան— երաժշտական խաղերի, երաժշտական զվարճանքի շրջանը։

Նոր ծրագիրն առանց աճապարանքի առաջ է տանում մանուկներին. նրանք անցնում են՝ «Հավիկը», «Տոնածառը» (պատրաստվելով դպրոցական առաջին տոնածառին), առաջին ռուսերեն երգը՝ «Осенняя песня», ապա «Վերջին փաթիլները»՝ ձմռան վերջին, և «Ուրախ սագեր»՝ գարնանամուտին։

Երկրորդ ուսումնական տարվա առաջին երգն է՝ «Դեպի դպրոց», ապա մի շարք վաղուց սիրված իրոք մանկական երգեր՝ «Սագիկ-մագիկ», «Փիսիկի գանգատը», «Ձմեռ պապի» և այլն։

Եվ այսպես, դեպի առաջ՝ տեքստի և երաժշտության աստիճանական բարդացման և ժանրային հարստացման ճանապարհով։ Այսպիսով, նոր ծրագիրը հնարավորություն է ընձեռում ուսուցման ընթացքում անցնելու *երեխայի տարիքին, գրական-երաժշտական զարգացմանը համապատասխան երգեր*։ Այն հարուստ է մանկական, հեղափոխական, պատանեկության առօրյային ու մեր այսօրվա կյանքին նվիրված երգերով։ Այստեղ իրենց տեղն են գրավել նաև մեր վաղուց սիրված ու ժողովրդականացած, շատ մելոդիկ և հայ մարդու ականջին դյուրընկալ ու սիրելի հայրենասիրական երգեր։ Ծրագրում կան նաև բավարար թվով ու որակով այլ ժողովուրդների դասական ու ժամանակակից երգեր, որը նպաստում է երեխաների երաժշտական մտահորիզոնի ընդլայնմանը, այդ նույնպես ուսուցման կարևոր խնդիրն է։ Վերջապես, իր արժանի տեղն է գրավել նաև հայ և այլ ժողովուրդների ժողովրդական երաժշտությունը։ Այստեղ խստապահանջ ընտրություն է կատարված. սա ևս մեր երաժշտական կրթության նվաճումը պետք է համարել։

Եթե դպրոցում երգն իր նշանակությամբ երաժշտական այն գլխավոր ժանրն է, որին դիմում ենք թե՛ ուսուցման պրոցեսում, թե՛ հանդեսների ժամանակ, ապա խմբերգը (խմբերգային երաժշտությունը), անտարակույս երաժշտական ուսուցման հիմնական, ամենաբեղմնավոր, ամենաարդյունավետ ձևն է այնտեղ։ Առհասարակ մեծ ակնկալություններ ունենք խմբերգային արվեստի ժողովրդականացումից և այս առումով անչափ մեծ հույսեր ենք կապում դպրոցի հետ։

Խմբերգային մշակույթի մեջ ո՛չ միայն ներկայումս, այլև անցյալում առանձին մեծատաղանդ երաժիշտների անհատական ձեռներեցության և խանդավառության շնորհիվ բարձր նվաճումների հասած լինելով՝ ընդհանուր առմամբ մենք դեռևս ետ ենք մնում շատ ժողովուրդներից։ Ճիշտ է, վերջին տարիներս առաջխաղացումն ակներև է. պրոֆեսիոնալ երգչախմբերը մի կողմ թողած, ուշադրության առնենք ինքնագործ, ժողովրդական խմբերը մեր քաղաքներում, և երգի տոները, որոնք իբրև սկիզբ, փոքր բան չեն։ Սակայն բնավ չի կարելի դրանք համեմատել Վիլնյուսում, Տալլինում, Ռիգայում և Կաունասում կազմակերպվող երգի տոների հետ, որոնց մասնակցում են նաև տասնյակ հազարավոր երեխաներ։ Երգչախմբային բարձր կուլտուրան այստեղ արտահայտվում է ամենատարբեր ձևերով (ծրագրի հարստությունն ու բազմազանությունը, առանց տևական փորձերի բազմաթիվ խմբերի ներդաշնակ, ձույլ երգը իբրև միասնական մի անսամբլ, մեներգային արվեստը, նույնիսկ տոնահանդեսների՝ զանազան վայրերից եկած հազարավոր մասնակիցների վարք ու բարքը)։

Ո՞րն է լիտվացի, էստոնացի և լատվիացի մեր բարեկամների հաջողության գաղտնիքը։ Գաղտնիք, եթե կուզեք, չկա։ Այն հազարավոր մարդկանց, որակյալ երաժիշտ-մանկավարժների տասնյակ տարիների ինքնամոռաց աշխատանքի արդյունքն է։ Մերձբալթյան ժողովուրդների երգչախմբային մշակույթը, որ գեղարվեստական մեծ հաճույքի աղբյուր է ամենքի համար, դպրոցից է գալիս։ Այնտեղ չկա մի դպրոց, որը երաժշտության որակյալ ուսուցիչ չունենա, և որտեղ չլինեն պահանջվող երաժշտական գործիքները։ Ավելին, այնտեղ երեխաները սովորում են երգել ու նվագել բոլոր մանկապարտեզներում։ Եթե դրան գումարենք ծնողների երաժշտական կուլտուրան, որ փոխանցվում է երեխաներին, և այն ընդհանուր երաժշտական մթնոլորտը, որի մեջ նրանք ապրում են, ապա հասկանալի կդառնան նաև այն բարձր կազմակերպվածությունն ու ինքնավստահությունը, որ հանդես են բերում երեխաները և դպրոցական երգչախմբային կոլեկտիվները երգահանդեսների ժամանակ։

Այդ ամենը մենք դեռ ստեղծելու ենք. դրա համար, իհարկե, տարիներ են պետք։ Բայց եթե մենք ամենքս, մանկավարժները և ծնողները, խորապես գիտակցենք, թե որքան թանկ բան է երգչախմբային կուլտուրան ժողովրդի համար, թե ինչպիսի երջանկություն կարող է բերել այն մեզ՝ իրոք զանգվածային դառնալու դեպքում (ինչպես, ասենք, Իտալիայում կամ Կուբայում), որպիսի մեծ ազդեցություն կարող է թողնել մարդու խառնվածքի վրա (ներգործելով հատկապես բարքերի մեղմացման առումով), ապա, անտարակույս, դա մեծապես կարագացնի նաև մեր առաջխաղացումն այդ ուղղությամբ։

Կ. Դ. Ուշինսկին, մեկն այն մանկավարժներից, որոնք սերտորեն կապված էին ժողովրդի հետ և շատ լավ էին ըմբռնում *զանգվածային հոգեբանությունը*, ինչպես և արվեստի դերն այդ հոգեբանությունը վերափոխելու գործում, խանդավառությամբ գրում էր.

**«Ինչպիսի՜ հզոր ուժ է խմբերգային երաժշտությունը... Խմբերգի մեջ կա ո՛չ միայն մարդուս աշխուժացնող ու թարմացնող մի բան, այլև ինչ-որ բան, որ կազմակերպում է աշխատանքը, համերաշխորեն երգողներին տրամադրում համերաշխ գործի... Անհատների զգացմունքները նա միաձուլում է մի ուժեղ զգացման մեջ և տարբեր սրտերը ձուլում—դարձնում ուժգնորեն բաբախող մի մեծ սիրտ։ Իսկ սա շատ կարևոր է դպրոցում, որտեղ ընդհանուր ջանքերով են հաղթահարվում ուսման դժվարությունները։ Երգի մեջ, բացի այդ, ինչ-որ բան կա, որ դաստիարակում է հոգին, մանավանդ զգացմունքը, ուստ որում զուտ մարդկային զգացմունքը»** (Д. Ушинский Собрание сочинений, 1948 , т. III, стр. 162)։

Այս ամենն, իհարկե, ավելի քան ճշմարիտ է, և զուր չէ, որ Կոմիտասն այնքան մեծ նշանակություն էր տալիս մանկական երգեցողությանը «ապագա ազգային դաստիարակության գործի մեջ» (Կոմիտաս, *Հոդվածներ և ուսումնասիրություններ*, 1942 թ., էջ 63):

Իրոք որ մեզ մոտ նույնիսկ դպրոցական երգչախմբային մշակույթի զարգացման ներկա աստիճանում, երգչախմբերը հանդիսանում են դպրոցների գեղագիտական դաստիարակության իրական առաջխաղացման վկայությունը՝ ներկայացնելով դպրոցը ինքնագործունեության շրջանային, քաղաքային և հանրապետական ստուգատեսների ժամանակ:

Սրանք լավ նախանշաններ են:

Կարա-Մուրզայից, Եկմալյանից ու Կոմիտասից եկող մեր ազգային երգչախմբային կուլտուրայի լավագույն ավանդները պահպանելով, եվրոպական երաժշտության և մեր եղբայրակից սոցիալիստական ժողովուրդների նվաճումներից սովորելով, հենված սեփական փորձառության վրա, մեր դպրոցը պետք է առաջադիմի այս բնագավառում: Ամեն մի ժողկրթբաժնի վարիչի և դպրոցի դիրեկտորի համար վեհ և սրբազան պարտականություն են երգչախմբի քիչ թե շատ գիտակ ղեկավար գտնելը և առաջիկա տարիներին ամեն մի դպրոցում աշակերտական երգչախմբեր ստեղծելը:

Իսկ երգչախմբերի ղեկավարման որակն ապահովելուն շատ կօգնեն պատշաճ երգացանկը, ուսումնական ծրագիրն ու դասագրքերը: Սկսնակ ուսուցիչն այնտեղ կգտնի նաև հետևողականորեն մշակված մեթոդական ցուցումներ, որոնք նրա ուշադրությունը բևեռում են ամեն մի դասարանում երեխաների խմբերգային ունակությունների զարգացման կարևոր հարցերի վրա:

Սա ո՛չ միայն գիտելիքներ և ունակություններ ձեռք բերելու, այլև *հոգեկան վերելքի ճանապարհ է, զգացմունքների կրթության ու նրբացման ճանապարհ*, որ պիտի անցնեն աշակերտները ութ տարվա ընթացքում:

Դպրոցում խմբական երգեցողության *ծավալմանն* ուղղելով մեր ջանքերը, երբեք չպետք է մոռացության տանք *որակը:* Դպրոցական երաժշտությամբ շահագրգռված մեր մանկավարժները միշտ էլ հիշեցրել են, որ ամեն երգեցողություն չէ, որ նպաստում է գեղագիտական ճաշակի զարգացմանը: Սեդրակ Մանդինյանը դեռևս մոտ մեկ դար առաջ հայկական դպրոցների համար կազմած իր ուսման նախագծում գրել էր.

> «Մեզանում շատ անգամ այնպես անիմաստ, անողորմ և առանց ճակացողության երգում են, որ կարծես մեր ազգային երաժշտության գլխավոր ճատկությունն այն է, որ կոկորդը գոռա, իսկ սիրտը և միտքը անզգա մնա... Մինչև որ ուսումնարանը այդ ճաշակը մեր մեջ չզարգացնէ, մենք միշտ կմնանք առանց երգի, այսինքն՝ առանց սրտի ուրախության» (Ս. Մանդինյան. **Ուսման նախագիծ ազգային ուսումնարանների համար,** Տփխիս, 1876 թ., էջ 36):

Մոտ չորս տասնամյակ հետո այդ նույն հարցը մտահոգում էր երաժիշտ-մանկավարժ Անտոն Մայիլյանին: Բողոքելով «շարմանկաների բանակի» և «ցիգանսկի ռոմանսների» ներկայացրած երաժշտության դեմ, երաժշտություն, որը «գայթակղեցնում է մատաղ սերնդի լսողությունը», և որով «տարված է աշակերտության մեծ տոկոսը», նա անհանգստանում էր, որ «ապագայում այդ սերունդը թեթև ժանրի ստրուկ պիտի լինի և վերջին ֆաբրիկացիայի օպերետայի սիրահար» («Բաքվի ձայն», 1919 թ. № 2):

Մենք իրավամբ կարող ենք բաժանել ավելի քան կես դար առաջ հայտնված այս մտահոգությունը մեր ժամանակակից երիտասարդության ու պատանեկության որոշ մասի վերաբերյալ:

Անշուշտ, միայն մեզ չի վերաբերում այս: Պայքարը լուրջ, մեծարվեստ երաժշտության և էժանագին, գռեհիկ, ջղագարության հանգող, գերազանցապես վավաշոտ երաժշտության (և պարի) միջև, պայքարը նորահաս սերունդների վրա ազդեցություն ձեռք բերելու համար ներկայումս շատ ավելի սուր բնույթ ունի կապիտալիստական արևմուտքում: Նույնիսկ Իտալիայում, Վերդիի և Ռոսինիի հայրենիքում, որտեղ մեղեդային երաժշտությունն արդեն դարավոր ավանդներ ունի և ժողովրդական կենցաղի անկապտելի հատկանիշն է, ինչպես իմանում ենք 1957 թ. հրատարակված մի մենագրությունից *(Երեխաներն ու երաժշտությունը)*, ըստ երաժշտության նոր ծրագրի, «դպրոցական մանկավարժության» կարևոր խնդիրն է համարվում երաժշտության ուսուցման միջոցով որքան կարելի է *դիմադրել «բուլվարային կինեմատոգրաֆիային»*, ջանալով հակազդել գրգռիչ, վաղաժամ սեռական հասունություն և հիվանդագին հոգեվիճակ առաջացնող երաժշտությանը, որ ուժեղ ներգործություն է ունենում երեխաների վրա (տե՛ս Le fanciullo e la musica di Antonio Mura. Bologna, 1957. La musica della nostra scuola media):

Ինչ խոսք, այն անսահմանափակ ազատությունը, որ վայելում է բուլվարային երաժշտությունն Արևմուտքում, չի կարող ունենալ մեզ մոտ: Ռադիոն ու հեռուստատեսությունը, օպերային և ֆիլհարմոնիկ երաժշտությունը, ձայնապնակների պետական արտադրությունը, վերջապես դպրոցական ուսուցումը բարերար ազդեցություն են գործում աշակերտության ճաշակի վրա:



Բայց և այնպես դպրոցից դուրս զանազան արևմտապաշտ «արվեստասերներ», ջղագար երաժշտություն լսելով, կարողանում են ուրիշներին ևս գայթակղեցնել:

Ասենք նաև, որ ինչպես դպրոցական առօրյայում և միջդպրոցական հանդեսների ժամանակ, մեզ մոտ ևս նկատելի է ամեն տեսակ նոր երգեր դպրոցում անհապաղ երգելու տարեցտարի ուժեղացող հակումը: Երբեմն դրանք լինում են մեծարվեստ գործեր, երբեմն՝ ակնհայտ անճաշակություններ, որոնց միակ «արժանիքը» դրանց նորաստեղծ և, ինչպես ենթադրում են, «նորարարական» լինելն է: Երաժշտության ուսուցիչը չի կարող անտեսել այս երևույթը: Նրա պարտքն է ընդառաջել աշակերտության՝ նոր երգեր ու երաժշտական կտորներ լսելու և կատարելու ցանկությանը: Երաժշտության ուսուցիչը պետք է հետևի, որ ոչ ամեն երգ՝ կատարվելով, ներկայացվի ընդհանուրի ուշադրությանը: Նույնիսկ Ամերիկայի Միացյալ Նահանգներում, որտեղ երաժշտական (և պարարվեստի) նորարարությունը բազմաթիվ ձեռնարկուների մրցության հետևանքով մի կատաղի մոլուցք է դարձել, դպրոցական ուսուցչի բարոյական պարտականությունն է համարվում նոր երգերի ուշադիր ընտրությունը: Մեր դպրոցների համար շատ կարևոր է, որ երաժշտության ուսուցիչները սովորեն *քննադատորեն վերաբերվել նորին, նորարարությանը, ճիշտ այնպես, ինչպես սովորական պայմաններում քննադատորեն ենք մոտենում նաև հին երաժշտությանը:* Այդպիսի վերաբերմունքի բացակայությունը ճանապարհ է բացում ամեն տեսակ անճաշակությունների տարածման համար:

Ի դեպ, երբեմն նոր, «ժամանակակից ոգուն» համապատասխան երաժշտություն տարածելու նշանաբանով մերթ աղարտվում է նաև մեր հայկական երաժշտության բնույթը: Փորձում են իբրև ազգային-ժողովրդական ոճի արտահայտություն ներկայացնել ամեն տեսակ հարայ-հրոց, որին ուղեկցում են թերևս, Հյուսիսային Կովկասի լեռնական ցեղերի նախահեղափոխական կենցաղից առնված «մարտաշունչ» շարժումները: Անհիմն կերպով այդ պարերը նմանեցնում են սասունցիների (Աշնակի) պարարվեստին: Այն պարարվեստը, սակայն, որ քսանական թվականներից սկսած Վահրամ Արիստակեսյանի ջանքերով ժողովրդականություն էր ձեռք բերել, որը գրավում, ոգևորում էր Մաքսիմ Գորկու և Ա. Վ. Լունաչարսկու նման մարդկանց, ապշեցուցիչ ռիթմիկ և իրոք մարտաշունչ լինելով, զերծ է գռեհկությունից, առավել ևս՝ ներքին աններդաշնակությունից. այն մարդկայնորեն նուրբ արվեստ է:

Նմանօրինակ թյուր ըմբռնումները վանելու համար, հետևողականորեն իրագործելով երգ-երաժշտության դպրոցական ծրագիրը, դասական ու ժամանակակից, ինչպես և ժողովրդական երաժշտության լավագույն նմուշների հիման վրա կրթելով երեխաների ճաշակը, պետք է ըստ կարելույն լրացնել դպրոցական երգացանկը՝ ՍՍՀՄ և Արևմուտքում նոր ստեղծվող երաժշտության ընտիր նմուշներով:

Դրա համար անհրաժեշտ է հաճախ կազմակերպված ձևով լսել մայրաքաղաքում և այլուր հանդես եկող երաժշտական բարձրորակ կոլեկտիվներին և անհատ երաժիշտներին, գյուղական վայրերում տարածել ու սիրելի դարձնել սիմֆոնիկ երաժշտությունը. ջանալ լայնորեն տարածել աշակերտական շրջանում սիրված բարձրորակ երաժշտությունը, ինչպես՝ Կուբայի ժողովրդական երգ ու պարը պաչանգայի նվագակցությամբ կամ Ռոբերտինո Լորետտիի երգերը: Դպրոցում հաճախ առիթ ենք ունեցել ականատես լինելու, թե ինչպիսի խանդավառություն են առաջացնում Կուբայի կենսահորդ երգերը, երբ երեխաները կատարում են դրանք ոչ միայն թարգմանությամբ, այլև բնագրով, երբ կատարումը ղեկավարում է գիտակ, փորձառու, գործը սիրող ուսուցիչը, երեխաները խանդավառությամբ երգում են իսպաներեն, չիմանալով լեզուն, բայց խորապես ըմբռնելով դրա ոգին: Նույնպիսի տպավորություն է գործում նաև ռուսական օպերային երաժշտության որոշ հատվածների կատարումը ռուսերեն կամ իտալականը՝ իտալերեն:

Այս ամենն իրագործելու դեպքում մենք կարող ենք չվախենալ, որ աշակերտները կհափշտակվեն այլ և այլ էժանագին նորարարություններով, որոնք հաճախ արվեստի մեջ վաղուց մերժված ոճի ավելի անշնորհք, թեև ավելի ճչան կրկնությունն են լինում:

Մի դիտողություն ևս. մի քանի տարի առաջ ֆիզիկական կուլտուրան դպրոցում «որբ» առարկաների շարքում էր. այդ առարկայից ստացած թվանշանը «չէր ազդում» աշակերտի փոխադրվելու կամ չփոխադրվելու վրա: Գիտակցվեց, որ դա աշակերտների աչքում գցում է առարկայի հարգը... և ֆիզկուլտուրայից ստացած թվանշանը արժեք ձեռք բերեց:

Արդ, վայե՜լ է մեզ՝ երաժշտական հարուստ կուլտուրա ունեցող մի ժողովրդի, որ հանրակրթական դպրոցում երաժշտության առարկան շարունակում է մնալ անտերունչ: Ժամանակը չէ՞ արդյոք, որ երգ-երաժշտությունը ևս մյուսներին իրավահավասար առարկա դառնա. այդ դեպքում կփոխվի թերևս ոչ միայն ուսուցիչների ու ծնողների, այլև աշակերտների վերաբերմունքը առարկայի նկատմամբ, և այդ իր հերթին կնպաստի երաժշտության լիարժեք ուսուցմանը:

ՌԱՖԱՅԵԼ ԱԹԱՅԱՆ

# ԲԱՐՁՐԱՑՆԵՆՔ ՍՊԱՍԱՐԿՄԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆ

Ժողովրդական տնտեսության զարգացման հիման վրա բնակչության բարեկեցության անընդհատ աճը սոցիալիստական հասարակության զարգացման հիմնական պայմանն է. այդ է պատճառը, որ կուսակցությունն ու կառավարությունը հսկայական միջոցներ են հատկացնում բնակչության կենսապայմանների, կրթական ու կուլտուրական մակարդակի բարձրացմանը: Հայաստանի բնակչության աճին, դրա տեղաբաշխման մեջ կատարված զգալի փոփոխություններին զուգընթաց խոշոր չափով փոխվել են ժողովրդական տնտեսության պահանջները որակյալ աշխատուժի և նրա մասնագիտացման աստիճանի նկատմամբ: Այս ամենը վճռական ազդեցություն է ունեցել բնակչության կենսապայմանների բարելավման, կուլտուրական մակարդակը բնորոշող ճյուղերի զարգացման վրա: Հայաստանի բնակչությունը, 1967 թ., 1913 թ. համեմատությամբ, աճել է ավելի քան երկու, այդ թվում քաղաքային բնակչությունը 12 անգամ: Քաղաքային բնակչության նման աճը բխել է ժողովրդական տնտեսության, հատկապես արդյունաբերության տարբեր ճյուղերի արագ զարգացման պահանջներից: Վերջինս կանխորոշել է նաև բնակչության բարեկեցության բուռն վերելքը: Հանրապետության արտադրաուժերի արագ զարգացումը, արտադրության արդյունավետության բարձրացումը հնարավորություն ընձեռեցին ավելացնելու աշխատողների եկամուտները: Հայաստանի ժողովրդական տնտեսության մեջ բանվոր-ծառայողների միջին ամսական աշխատավարձը վերջին տասը տարում ավելացել է 41,3, կոլտնտեսականների եկամուտները՝ 81,4 տոկոսով: Բնակարանային ընդհանուր տնտեսությունը վերջին յոթ տարում ավելացել է մոտ 57 տոկոսով:

Սովետական իշխանության տարիներին, հատկապես հետպատերազմյան շրջանում, աշխատավորների կենսամակարդակը բնութագրող ոչ մի բնագավառ այնպես նկատելիորեն չի փոխվել, ինչպես բնակարանային տնտեսությունն ու առողջապահությունը: Բավական է ասել, որ վարչական կենտրոն հանդիսացող Երևան քաղաքի ողջ կոմունալ տնտեսությունը բաղկացած էր մեկ ջրմուղից և մի քանի գետնափոր, հակասանիտարական պայմաններում գործող բաղնիքներից: Բնակչության ճնշող մեծամասնությունն ապրում էր հողաշեն, գերազանցապես միահարկ, լուսավորությունից, կոմունալ տարրական հարմարություններից զուրկ տներում:

Սովետական իշխանության տարիներին, երբ պետությունն ամբողջովին ստանձնեց բնակարանների կառուցման ծախսերը, արմատապես փոխվեցին բնակչության կենսապայմանները: Ուսման, բուժման և բնակարանով ապահովելու պրոբլեմը լուծելի դարձավ բնակչության բոլոր խավերի համար:

Այսօր անճանաչելի են դարձել մեր հանրապետության բնակչության բնակարանային պայմաններն ու կոմունալ հարմարությունները: Զգալի չափով ավելացել է բնակչության մեկ շնչին ընկնող բնակելի տարածությունը: Այն ներկայումս կազմում է 6,7 քառ. մ: Չպետք է մոռանալ, որ այդ տեղի է ունեցել բնակչության ինտենսիվ աճի պայմաններում:

Մարդու կենցաղի բարելավման, ազատ ժամանակը հանգիստ ու ռացիոնալ



օգտագործելու տեսակետից հսկայական նշանակություն ունեն բնակարանների կոմունալ հարմարությունները: Պետք է ասել, որ հանրապետության ներկայիս բնակարանային ֆոնդի ճնշող մեծամասնությունն ապահովված է ժամանակակից կուլտուրական մարդու կենցաղի հիմնական պահանջները բավարարող հարմարություններով: Միայն յոթնամյակի տարիներին հանրապետության 808 հազար, իսկ 1966—1967 թթ. 257 հազար բնակիչներ տեղափոխվել են նոր, բարեկարգ բնակարաններ: Եթե դրան ավելացնենք նաև այն, որ բնակարանային վարձը մեզ մոտ կազմում է ընտանիքի միջին բյուջեի շատ փոքր մասը, ապա պարզ կդառնա, թե որքան խոշոր միջոցներ են տրամադրվում սովետական մարդու բնակարանային պայմանների բարելավմանը:

Ժողովրդական տնտեսության բուռն վերելքը և բնակչության նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացումը պայմանավորեցին նրա բարեկեցության վիճակն արտահայտող մյուս բնագավառների՝ մանրածախ առևտրի, հասարակական սննդի և բնակչության կենցաղային սպասարկման զարգացումը: Ապրանքաշրջանառությունը մեզ մոտ վերջին տասը տարիների ընթացքում աճել է ավելի քան 2 անգամ. մանրածախ առևտրի և հասարակական սննդի օբյեկտների թիվն ավելացել՝ 60 տոկոսով: Հանրապետության քաղաքներում և քաղաքատիպ վայրերում յուրաքանչյուր 1000 կմ²-ի վրա գործում են 198 խանութ և մանրածախ առևտրի կետ, հասարակական սննդի՝ 72 ձեռնարկություն: Մանրածախ առևտրի ցանցի, վաճառքի հանված ապրանքների և բնակչության եկամուտների զգալի աճի շնորհիվ մեծ չափով ավելացել է նաև մեկ շնչին ընկնող ապրանքաշրջանառությունը, որը 1967 թ. կազմել է 400 ռուբլի, 1950 թ. 175 ռուբլու փոխարեն: Զգալիորեն ավելացել է նաև բնակչությանը մատակարարվող ճաշաբաժինների քանակը: 1967 թ. Հայաստանի բնակչությանը հասարակական սննդի օբյեկտների միջոցով տրվել է մոտ 148 միլիոն ճաշաբաժին, 1958 թ. 44,1 միլիոնի փոխարեն: Վերջին տարիներին գրեթե կրկնակի ավելացել է մսամթերքների, կաթի ու կաթնամթերքների, ինչպես նաև մրգի, բանջարեղենի, կարտոֆիլի վաճառքը, ավելացել է նաև արդյունաբերական կարևորագույն, հատկապես կուլտուր-կենցաղային, տնտեսական գործածության այնպիսի բարձրարժեք ապրանքների վաճառքը, ինչպիսիք են՝ հեռուստացույցը, լվացքի մեքենան, սառնարանը և այլն:

Բնակչության բարեկեցության բարձրացման արտահայտությունն է նաև նրա պահանջների աճը կենցաղսպասարկման ծառայությունների նկատմամբ: Զգալի չափով մեծացել է վերանորոգող կանայան տաղավարների ու անհատական պատվերների ատելիեների, բաղնիքների, լվացքատների թիվը: Այսպես, 1960 թ. հանրապետությունում գործում էին ընդամենը 30 բաղնիք՝ 1825 տեղով, 9 լվացքատուն, որ կարող էին մեկ հերթում ընդունել 375 կգ սպիտակեղեն, վերանորոգման 1511 կանայան տաղավարներ ու ատելիեներ[1]. 1967 թ. դրանց թիվը հասավ, համապատասխանորեն՝ 55, 3786, 2662, 3100-ի[2]: Այդ նույն ժամանակաշրջանում բնակչության կողմից տրված պատվերների արժեքն ավելացավ մոտ 9 միլիոն ռուբլով: Հանրապետության լվացքատները բնակչությունից 1967 թ. ստացել են վեց անգամ ավելի պատվերներ, քան 1960 թ.:

Հանրապետությունում այժմ բուռն թափով զարգանում են գիտությունն ու տեխնիկան, արվեստն ու կուլտուրան: Գիտատեխնիկական այս աննախադեպ առաջընթացը պահանջում է ինչպես մասնագիտական գիտելիքների ձեռքբերում, այնպես էլ մարդու կուլտուրական զարգացումն ապահովող համապատասխան կուլտուր-լուսավորական հիմնարկների պատշաճ գործունեություն: Ակումբներն ու գրադարանները կոչված են իրականացնելու մարդկանց կուլտուրական զարգացման խնդիրները: Այդ իսկ պատճառով նշված կազմակերպությունների գործունեության արդյունավետության բարձ-

1. Экономика и культура Армении к 50-летию Великого Октября. Ереван, 1967, стр. 306.

2. Народное хозяйство СССР в 1967 г., Москва, 1968 г., стр. 772, 774.

րացումն արդի շրջանում երկրի կուլտուրական շինարարության կարևոր խնդիրներից է:

Գիրքը, գիտությունը, տեխնիկան, կուլտուրան, հատկապես գրականությունը, գրքի լայն պրոպագանդումը և գրադարանային գործը մեծ մոտ պետական նշանակություն ունեն: 1960 թ. հանրապետության մեկ գրադարանին ընկնում էր միջին հաշվով 500, 1967 թ.՝ 1000 ընթերցող: Ներկայումս մեր հանրապետությունում գործում են ավելի քան 1185 գրադարան՝ 9383 հազար գրքային ֆոնդով (1913 թ. 13 գրադարանի և 120 հազար գրքային ֆոնդի դիմաց), Հայաստանում յուրաքանչյուր 415 հոգուն ընկնում է մեկ գրադարան:

Նախահոկտեմբերյան շրջանում բնակչության համատարած անգրագիտության պայմաններում (անգրագետ էր բնակչության 80 տոկոսից ավելին) լրագրերը, ամսագրերն ու գրքերը մատչելի չէին լայն մասսաներին: Դրանցից օգտվում էին մի խումբ մտավորականներ միայն: Բավական է ասել, որ նախքան հեղափոխությունը Հայաստանում հրատարակվում էին ընդամենը 8 անուն օրաթերթ ու ամսագիր, իսկ գրքերը՝ շատ փոքր տպաքանակով: Այժմ հրատարակվում են 83 օրաթերթ ու շաբաթաթերթ, 81 ամսագիր, յուրաքանչյուր տարի հրատարակվում են միջին հաշվով 1033 անուն գիրք՝ 7178 հազար տպաքանակով: 1966 թ. ՀՍՍՀ-ում յուրաքանչյուր 100 բնակչին ընկել է 400, այդ թվում քաղաքում՝ 406, իսկ գյուղական վայրերում՝ 392 գիրք և ամսագիր:

Խոշոր առաջադիմություն է նկատվում նաև արվեստի, հատկապես կինոյի ու թատրոնի բնագավառներում: 50 տարի առաջ Հայաստանի միայն երեք քաղաքներում՝ Ալեքսանդրապոլում, Կարսում և Երևանում գործում էին 4 կինոթատրոն (որոնք կոչվում էին իլյուզիոններ). ցուցադրվող ֆիլմերը գաղափարապես աղքատիկ էին, անբովանդակ: Ներկայումս հանրապետությունն ունի մոտ 690 կինոթատրոն և 12 թատրոն, որոնք միայն 1967 թվականին ունեցել են 26 միլիոն 469 հազար դիտողներ:

Հանրապետության բնակչության կուլտուրական կյանքում մեծ նշանակություն ունեն ռադիոն, հեռուստատեսությունը, որոնք ամբողջ ժողովրդին մասնակից են դարձնում կոմունիզմի կառուցման մեծ գործին, տալով նրան սպառիչ ինֆորմացիա բոլոր կարևոր իրադարձությունների վերաբերյալ: Հեռուստատեսությունը՝ գեղարվեստա-սպասարկման այս նոր ձևը ևս լայնորեն մուտք է գործել մարդկանց կենցաղի մեջ, դարձել դրա անբաժանելի մասը:

Սովետական իշխանության տարիներին լայն պայմաններ ստեղծվեցին նաև ֆիզիկական կուլտուրայի մասսայական կարգացման համար: Դեռևս սովետական իշխանության առաջին տարիներին Լենինականում և Երևանում ստեղծվեցին սպորտային կազմակերպություններ: Կառուցվեցին նաև սպորտային հրապարակներ ու ստադիոններ: Այժմ հանրապետությունում գործում են 2735 սպորտային ընկերություն՝ 380199 անդամով, 15 ստադիոն՝ միջին հաշվով 1,5 հազար տեղով, գործում են նաև վոլեյբոլի, բասկետբոլի ու թենիսի բազմաթիվ հրապարակներ:

Սպորտում իր ուրույն տեղն ունի տուրիզմը՝ սպորտի նոր, սակայն մեծ հեռանկարներ ունեցող ճյուղերից մեկը: Հայաստանի վեց քաղաքներում և երեք քաղաքատիպ ավաններում կազմակերպվել են հատուկ տուրիստական բազաներ: Եթե 1959 թ. նշված տուրիստական բազաներն ունեին ընդամենը 300 մահճակալ, ապա 1965 թ. դրանց թիվը հասավ 1225-ի կամ ավելի քան քառապատկվեց. Երևան և Կիրովական քաղաքների տուրիստական բազաներն աշխատում են ամբողջ տարին անընդմեջ: Նշված բազաներում հանգստացել, իրենց առողջությունն են կոփել ավելի քան հարյուր հազար մարդ: Բացի Միության տարբեր հանրապետություններից եկած կբոսաշրջիկներից, հանրապետության տուրիստական կազմակերպություններն ընդունել են նաև արտասահմանից եկածներին, որոնց թիվը 1960—1967 թվականներին հասել է ավելի քան 25 հազարի:

Այս բոլորը մեր ժողովրդի ձեռք բերած հաջողություններն են: Սակայն պետք է խոստովանել, որ ծառայությունների ոլորտի կարգացման ներկա թափը չի համապատասխանում բնակչության օրավուր աճող պահանջմունքներին: Սկսենք գրադարաններից. գրադարանների ցանցն ամբողջ հանրապետությունում խիստ անհավասար է բաշխված: Այսպես՝ Արարատյան հարթավայրում, որտեղ բնակվում է ՀՍՍՀ ողջ բնակչության 14,8 տոկոսը, դրանք կազմում են հանրապետության գրադարանների 12,9, մինչդեռ, Զանգեզուրում, համապատասխանաբար՝ 6 և 14 տոկոսը: Նույնն է վիճակը Սևանի ավազանի և Արարատյան գոգավորության նախալեռնային գոտու տնտեսական շրջաններում: Յուրաքանչյուր 10.000 բնակչին ընկնող գրադարանների թվով Արարատյան հարթավայրը, ինչպես և հանրապետության լեռնային և հյուսիս-արևելյան անտառային գոտին կզալիորեն զիջում են Սևանի ավազանին, Դարալագյազին և Զանգեզուրին՝ 54, 52,2 և 61,6 տոկոսով, լեռնային գոտին համապատասխանաբար՝ 48, 53,9 և 56,6, իսկ հյուսիս-արևելյան անտառային գոտին՝ 36, 43,3 և 46,6 տոկոսով:

Չեն կատարվում նաև պլանով նախատեսված գրադարանային շինարարության առաջադրանքները: Այսպես, 1967 թվականին նշված առաջադրանքը կատարվել է ընդամենը 94 տոկոսով: Պակաս է նաև գրքային ֆոնդը: Յուրաքանչյուր 100 բնակչին ընկնող ցուցանիշով ՀՍՍՀ-ն զիջում է ՍՍՀՄ-ին 58,7 տոկոսով:

Առավել շոշափելի են թերություններն առևտրի, հասարակական սննդի, կենցաղսպասարկման բնագավառներում: Լրիվ չեն օգտագործվում մեր հանրապետության բնակչության գնողունակ պահանջարկի բավարարման հնարավորությունները: Բավական է նշել, որ միայն 1958—1967 թվականների ընթացքում պետական ու կոոպերատիվ առևտրի ապրանքային պաշարներն ավելացել են մոտ երկու անգամ, այսինքն՝ այնքան, որքան աճել է ապրանքաշրջանառությունը. այդ պատճառով էլ կզալի քանակությամբ ապրանքներ սպառող չեն գտնում:

Նշված փաստը վկայում է, որ մինչև այժմ ինչպես հարկն է չի ուսումնասիրվում բնակչության պահանջարկը, որի հետևանքով և վաճառվող ապրանքների տեսակային փոփոխությունները հաճախ չեն համընկնում բնակչության պահանջարկի տատանումներին: Չափազանց դանդաղ է աճում առևտրի ցանցը: Եթե 1940—1967 թթ. պետական ու կոոպերատիվ առևտրի ապրանքաշրջանառությունն աճել է մոտ յոթ անգամ, ապա առևտրի ձեռնարկությունների թիվն ավելացել է ընդամենը երկու անգամ, իսկ վերջին հինգ—վեց տարիների ընթացքում բնակչության յուրաքանչյուր 10.000 շնչին ընկնող առևտրական օբյեկտների թիվը մնացել է անփոփոխ (26—27 ձեռնարկություն): Այս բնագավառում շատ դանդաղ է ավելանում 1000 բնակչին ընկնող բանվորական տեղերի թիվը (որն սպասարկման որակի բարձրացման հիմնական նախադրյալներից մեկն է): Այդ բնագավառում սահմանված նորմատիվից հանրապետությունը ետ է մնում 31,4, իսկ ՍՍՀՄ համապատասխան ցուցանիշից՝ 17 տոկոսով:

Առևտուրը բնակչության պահանջարկին համապատասխան կազմակերպելու համար հարկ է ստեղծել նոր տեխնիկայով հագեցած հարմարավետ պահեստային տնտեսություն: Ներկայումս հանրապետությունում գործում են պանապան ապրանքների պահպանման 400 պահեստ, որոնց մոտ կեսի տարողությունը չափազանց փոքր է, և որ կարևոր է, դրանք ապահովված չեն անհրաժեշտ սառնարանային տնտեսությամբ: Թեպետ հանրապետությունը վերը նշված պահեստների խիստ կարիք ունի, սակայն այդ ուղղությամբ տրամադրված կապիտալ ներդրումների պլանը տարիներ շարունակ չի կատարվում: Օրինակ, 1967 թվականին թերակատարվել են ինչպես ընդհանուր ապրանքների, այնպես էլ կարտոֆիլ-բանջարեղենի պահպանման պահեստների և սառնարանային տնտեսության շինարարական պլանները: Ապրանքների պահպանման նման սուղ պայմանների հետևանքով անհավասար են բաշխվում տարբեր ժամանակաշրջանում վաճառքի հանվող ապրանքները, տարվա տարբեր շրջաններում առաջանում են որոշակի ապրանքների սուր պահանջ, հերթեր և այլն: Ուստի, առևտրի բարելավումը պետք է սկսել, առաջին հերթին՝ պահեստային տնտեսության կարգավորումից, որը հնարավորու-

թյուն կտա ապրանքները վաճառքի հանելու գերազանցապես բնակչության սեզոնային պահանջարկի համաձայն: Թերություններ կան նաև հասարակական սննդի բնագավառում, որի պատշաճ կազմակերպումը, հետագա ծավալումն ու բարելավումը հնարավորություն կտան հասարակական արտադրության մեջ ներգրավելու աշխատանքային նոր ռեզերվներ, որն զգալիորեն կբարելավի ընտանիքների, հատկապես բազմանդամ և ցածր եկամուտ ստացող ընտանիքների կենսապայմանները: Սակայն այս բնագավառի զարգացման տեմպերը դեռևս գոհացուցիչ չեն: Այստեղ ևս թերակատարվում են շինարարական պլանները: Օրինակ՝ 1967 թ. տվյալներով հասարակական սննդի օբյեկտների կառուցման պլանը թերակատարվել է մոտ 20 տոկոսով: Անբավարար է նաև յուրաքանչյուր 10.000 բնակչին ընկնող սպասարկման տեղերի քանակը: Մեր հանրապետությունն այս ասպարեզում խիստ ետ է մնում ինչպես ՍՍՀՄ և Միության մի շարք հանրապետություններից, այնպես էլ Մերձբալթյան երկրներից:

Հասարակական սննդի պատշաճ կազմակերպմանն արգելակում են նաև պատրաստվող ճաշերի միօրինակությունը, դրանց անբավարար որակն ու բարձր գները, սպասարկման ցածր կուլտուրան: Համոզված ենք, որ օգտակար կլինի փորձի փոխանակման, ընդօրինակելու նպատակով հասարական սննդի համապատասխան աշխատողներին եղբայրական հանրապետությունները գործուղելը (ՍՍՀՄ խոշոր քաղաքները, Մերձբալթյան երկրներ և այլուր): Որքան շատ տեսնենք ու սովորենք, կիրառենք լավագույն ձևերն ու մեթոդները, այնքան ավելի կշահի գործը, կավելանա հասարակական սննդից օգտվողների թիվը, կպակասեն ճաշատեսակների որակից, սպասարկման կուլտուրայից դժգոհողները, կինը որոշ չափով կհեռանա խոհանոցից: Այս կարևոր հանգամանքը պետք է խիստ անհանգստացնի հասարակական սննդի կազմակերպիչներին:

Մեծ են անելիքները նաև բնակչության կենցաղի բարելավման ուղղությամբ, որը դեռևս մեր հանրապետության ետ մնացող ճյուղերից է: Անբավարար է, հատկապես, բաղնիքների, լվացքատների, քիմիական մաքրման ֆաբրիկաների և ընդունող կետերի, հագուստների վերանորոգման տաղավարների, վարսավիրանոցների, կոմունալ ու կենցաղային այլ ձեռնարկությունների թիվը, դրանց կարողությունները, ցածր է մատուցվող ծառայությունների որակը, բարձր՝ գները: Այսպես՝ հանրապետությունում գործող բոլոր բաղնիքների միաժամանակյա տարողությունը 1967 թ. կազմել է ընդամենը 3786 մարդ-տեղ: Բաղնիքների ծառայությունից օգտվել են 6021 հազար մարդ: Դա նշանակում է, որ տանը լողարան չունեցող յուրաքանչյուր քաղաքային բնակիչ փաստորեն օգտվել է բաղնիքի ծառայություններից տարեկան մոտ 12—14 անգամ: Բաղնիքների ծանրաբեռնվածությունը չափազանց բացասաբար է անդրադառնում սպասարկման կուլտուրայի, սանիտարական հիգիենիկ պայմանների, հետևապես և՝ մարդկանց առողջության վրա: Այդպիսին է վիճակը նաև լվացքատներում: Հանրապետությունում գործող բոլոր լվացքատները գտնվում են քաղաքներում: Բնակչության ճնշող մեծամասնությունը չի օգտվում լվացքատների ծառայությունից հիմնականում ցածրորակ սպասարկման պատճառով:

Կենցաղսպասարկման կազմակերպիչները, այդ ոլորտում աշխատողները այս ասպարեզում նույնպես, թերևս, շատ բան ունեն սովորելու եղբայրական հանրապետություններից և փորձի փոխանակման նպատակով կազմակերպվող գործուղումներն արդյունավետ կլինեն նաև այս բնագավառում:

Ինչպես տեսնում ենք, կենցաղսպասարկման ասպարեզում թերություններ շատ կան. դրանց վերացումը մեծ չափով կնպաստի մեր հանրապետության բնակչության կենսապայմանների բարելավմանը, և հաջողություններն այդ բնագավառում ավելի շոշափելի կդառնան:

ԶԻՆԱԻԴԱ ԱԶԻԶՅԱՆ



## ԷՋԵՐ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ԱՆՑՅԱԼԻՑ

# ՄԱՐՔՍԻԶՄԻ ՏԱՐԱԾՄԱՆ ՀԵՏՔԵՐՈՎ

Լեռնային Ղարաբաղում մարքսիզմի տարածումը, սոցիալ-դեմոկրատական խմբակների ձևավորումը սերտորեն կապված են ՌՍԴԲԿ Կովկասյան միութենական, Բաքվի ու Թիֆլիսի կոմիտեների, ինչպես նաև Ռուսաստանի տարբեր քաղաքներում և արտասահմանում սովորող ղարաբաղցի սոցիալ-դեմոկրատ ուսանողների գործունեության հետ:

Մինչև ռուսական առաջին հեղափոխությունը ՌՍԴԲԿ Բաքվի կոմիտեն կապ էր հաստատում Ղարաբաղի առաջադեմ բանվորների, դեմոկրատական ինտելիգենցիայի, Շուշիի միջնակարգ ուսումնարաններում սովորող հեղափոխական երիտասարդության հետ: Պրոպագանդիստների և ագիտատորների միջոցով Բաքվի կոմիտեն Ղարաբաղի բանվորների և չքավոր գյուղացիների շրջանում տարածում էր սոցիալիստական գաղափարներ, նրանց կազմակերպորեն նախապատրաստում սոցիալ-դեմոկրատիայի շուրջը համախմբվելու համար:

1902 թ. սկզբներին Շուշիում ստեղծվեց սոցիալ-դեմոկրատական առաջին խմբակը[1], որի հիմնական կորիզը քաղաքի ուսումնարաններում սովորող հեղափոխական երիտասարդության մի մասն էր և շուշեցի այն բանվորները, որոնք Բաքվում, արդյունաբերական մյուս վայրերում, մասնակցելով գործադուլային շարժումներին, հեռացվել էին աշխատանքից, արտաքսվել ծննդավայր: Խմբակի անդամներից շատերը պրոպագանդիստական աշխատանք էին ծավալում առաջավոր բանվորների և սովորող երիտասարդության շրջանում, խմբակներ էին ստեղծում, տարածում անլեգալ գրականություն: Խմբակի գաղտնի հավաքույթներն ու ժողովները տեղի էին ունենում մեծ մասամբ քաղաքից դուրս, ընդհատակյա պայմաններում:

Խմբակը նամակագրական կապի մեջ մտավ Վ. Ի. Լենինի և **«Искра»**-ի խմբագրության հետ: Թիֆլիսի նահանգային ժանդարմական վարչության պետը 1902 թ. մայիսի 16-ին, վերադասին ներկայացրած իր զեկուցագրում հաղորդում էր, որ «Շուշի քաղաքի փոստ-հեռագրատան գրասենյակում ստացված երկու ծրարներում հայտաբերվել են արտասահմանում հրատարակվող Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցության հեղափոխական **«Искра»** թերթի 19-րդ համարից երկու օրինակ: Փոստային դրոշմանիշից երևում է, որ Շուշիի բնակիչներ Պյոտր Զախարևիչ Ռյաշչևի և Նիկոլայ Դ. Կունդրյուկովի անուններով ծրարներն ուղարկվել են Լայպցիգից և Դարմշդատից»[2]:

Բացի Շուշիից **«Искра»**-ն տարածվել և ընթերցվել է Ղարաբաղի հայկական գավառամասերի որոշ գյուղերում: Նրա առանձին համարներ, մարքսիստական գրականության հետ միասին, 1902—1903 թթ. ստացվել են Խանքենդում (ներկայիս Ստեփանակերտ) և Դիզակի գավառամասի Ղարաբուլաղ գյուղում[3], հեղափոխական սերմեր տարածել գյուղացիների շրջանում: Շուշիի սոցիալ-դեմոկրատական խմբակը լայն կապեր է ունեցել Կիևի հայկական մարքսիստական ուսանողական խմբակի հետ: Դրա ակտիվ գործիչներից շուշեցի, Կիևի պոլիտեխնիկական ինստիտուտի ուսանող Ալեքսանդր Բեկզադյանցը մեծ դեր է խաղացել Շուշիում սոցիալ-դեմոկրատական խմբակի կազմակերպման, քաղաքի սովորող երիտասարդության շրջանում մայրենի լեզվով մարքսիստական-լենինյան գաղափարներ տարածելու գործում:

---

1 *Տե՛ս* Архив Азербайджанского филиала ИМЛ при ЦК КПСС, ф. 456, д. 93, л. 1: *Տե՛ս նաև* «История Коммунистической партии Азербайджана», ч. I, 1958, стр. 47.

2 *Վրացական ՍՍՀ պետական կենտրոնական պատմական արխիվ (հետագայում ՎՍՍՀ ՊԿՊԱ), ֆ. 7/с, գ. 343, թ. 23:*

3 *Տե՛ս նույն տեղը, թ. 16—17: Տե՛ս նաև* «Очерки истории Коммунистической партии Азербайджана», Баку, 1963, стр. 42.

ՌՍԴԲԿ Կովկասյան միութենական կոմիտեի ստեղծմամբ սոցիալ-դեմոկրատական շարժումը Ղարաբաղում ևս գնալով ուժեղացավ: 1903 թ. գարնանը Շուշիում ստեղծվեցին սոցիալ-դեմոկրատական երկու նոր խմբակներ՝ ռեալական ուսումնարանում և թեմական դպրոցում: 1903—1904 թթ. ռեալական ուսումնարանի խմբակը ղեկավարում էր Պետերբուրգի համալսարանի շրջանավարտ, բնագիտության դասատու, բոլշևիկ Լ. Լ. Ստաբրովսկին:

Ստաբրովսկու խմբակի աչքի ընկնող անդամներից էր Հայկական ՍՍՀ ԳԱ ակադեմիկոս Ա. Գ. Հովհաննիսյանը: Նա այդ շրջանի մասին գրել է. «Մեր աշակերտական տարիներին լարված ուշադրությամբ կարդում էինք Կաուցկու և, մանավանդ, Պլեխանովի հայտնի աշխատությունները: Այդ ժամանակ մեզ զբաղեցրած ստվար գրքերից ոչ մեկը ազդեցության այնքան խոր հետք չի թողել մեզ վրա, որքան Պլեխանովի **Очерки развития монистического взгляда на историю** աշխատությունը: Լենինի գործերից մեզ մատչելի դարձան ավելի ուշ՝ մեր ուսանողության տարիներին: Հիշում եմ, սակայն, որ նրա երկերից մեկը տեսա դեռ դպրոցի նախավերջին դասարանում: Ես ու Կասպարովը (Սլավա Կասպարովը— Գ. Հ.) նստում էինք վերջին նստարանին: Ռուսաց լեզվի դասի ժամանակ Սլավան ծնկի վրա թերթում էր ստվար մի հատոր: Դասատուն՝ Լեոնտևը այդ նշմարեց և նկատողություն արեց նրան: Դա Լենինի **«Развитие капитализма в России»** նշանավոր գիրքն էր, որը լույս էր տեսել «Վ. Իլյին» կեղծանունով: Սլավան ինձ ասաց, որ այդ անվան տակ թաքնված է բոլշևիկների գլխավոր տեսաբան Լենինը» (Ա. Գ. Հովհաննիսյան. *Հուշեր անցյալից*, ՀՍՍՀ ԳԱ «Լրաբեր» հասարակական գիտությունների, № 3, 1966 թ., էջ 69):

Ռեալական ուսումնարանի, քաղաքի մյուս սոցիալ-դեմոկրատական խմբակների անդամներից ոմանք, կապված լինելով արդյունաբերական ձեռնարկությունների, գյուղերի հետ, զրույցներ էին անցկացնում բանվորների և գյուղացիների շրջանում, տարածում մարքսիստական գրականություն, պրոկլամացիաներ, կոչեր, թռուցիկներ:

Ուշագրավ է Շուշիի սոցիալ-դեմոկրատական խմբակների գործունեությունը, հայկական եկեղեցական ունեցվածքը կառավարության տնօրինությանն անցնելու վերաբերյալ՝ 1903 թ. հունիսի 12-ի թալանչիական օրենքի կիրառման ժամանակ: Բռնկվող շարժումները ճնշելու համար ցարական կառավարությունը Գանձակից և այլ վայրերից լրացուցիչ զորք բերեց Շուշի: Լենինյան **«Искра»**-ն այդ կապակցությամբ գրել է, որ Շուշի քաղաքում ժողովրդի դիմադրությունը ճնշելու համար «զորքերի հետ այնտեղ ուղարկվեց հրետանի, իսկ և իսկ ինչպես պատերազմի ժամանակ» (**«Искра»**, № 49, 1903 թ.):

Թնդանոթների օգնությամբ ճնշելով հակացարական շարժումը, իշխանությունները դրանով իսկ ուժեղացրին ժողովրդի ատելությունը կառավարության նկատմամբ, խարխլեցին նրա դիրքերը Ղարաբաղում և աշխատավորների շրջանում դասակարգային ինքնագիտակցություն արթնացրին: Այդ գործում մեծ դեր խաղացին Բաքվից և Թիֆլիսից ստացվող հեղափոխական կոչերն ու թռուցիկները:

Լեռնային Ղարաբաղի հեղափոխական սոցիալ-դեմոկրատիայի զարգացման և ամբողջ հեղափոխական շարժման ծավալման գործում անգնահատելի դեր խաղացին Թիֆլիսում և Բաքվում հրատարակվող բոլշևիկյան թերթերը, մասնավորապես՝ «Պրոլետարիատը», «Պրոլետարիատի կռիվը», Պրոլետարիատի կռվի թերթիկը», **«Кавказский рабочий листок»**-ը, «Բանվորի ձայնը», «Կայծը» և այլն:

Ղարաբաղի աշխատավորական զանգվածների շրջանում գիտական կոմունիզմի գաղափարների հետևողական տարածողները եղել են նաև երկրի տարբեր քաղաքներում, հատկապես Բաքվում աշխատող ղարաբաղցի մի շարք պրոֆեսիոնալ հեղափոխականներ: Այդ ժամանակներում Շուշի է եկել բոլշևիկյան կուսակցության ականավոր գործիչ Բոգդան Կնունյանցը, որը, 1895 թ., ավարտելով տեղի ռեալական ուսումնարանը, սովորում էր Պետերբուրգի տեխնոլոգիական ինստիտուտում:

Իր հեղափոխական առաջին մկրտությունը Կնունյանցն ստացել է Լենինի Պետերբուրգի «Բանվոր դասակարգի ազատագրության պայքարի միության» խմբակում: Դեռևս ուսանողական տարիներին նա ակտիվ մասնակցել է մայրաքաղաքի հեղափոխական շարժումներին: 1897 թ. մարտի 4-ին Կազանյան հրապարակում տեղի ունեցած հեղափոխական ցույցին գործուն մասնակցություն ունենալու համար նա ձերբակալվել և բանտ է նետվել:

Ապրելով և աշխատելով Բաքվում, Կնունյանցը՝ որպես ՌՍԴԲԿ Բաքվի կոմիտեի, հետագայում նաև Կովկասյան միութենական կոմիտեի անդամ և, վերջապես, ՌՍԴԲԿ Կենտրոնական կոմիտեի գործակալ, հաճախակի էր լինում Շուշիում (այնտեղ էին ապրում նրա ծնողները): Առաջին անգամ նրա Շուշի ժամանելու մասին տեղեկացվում է Բաքվի ժանդարմական վարչության պետի, 1901 թ. ամռանը Թիֆլիսում աշխատող իր պաշտոնակցին հասցեագրած մի նամակում, որի մեջ ասված է. «...գաղտնի հսկողության տակ գտնվող, Պետերբուրգից Բաքու ժամանած Բոգդան Միրզաջանի Կնունյանցը սույն թ. հունիսի 22-ին մեկնեց Շուշի քաղաքը,



որտեղ ապրելու է իր հարազատների մոտ»[1]: Իր ծննդավայրում Կնունյանցը զբաղվել է հեղափոխական գործունեությամբ, հանդիսացել է Շուշիի իսկրայական սոցիալ-դեմոկրատական խմբակների հիմնադրողներից մեկը:

ՌՍԴԲԿ Բաքվի կոմիտեի հանձնարարությամբ Բ. Կնունյանցը եղել է Անդրկովկասի մի շարք արդյունաբերական քաղաքներում և գավառական կենտրոններում (այդ թվում՝ Շուշիում և Ելիզավետպոլում), որտեղ ՌՍԴԲԿ II համագումարի որոշումների առթիվ հանդես է եկել զեկուցումներով և զրույցներով: Սուր քննադատելով մենշևիկների ֆրակցիոն քայքայիչ գործունեությունը կուսակցության ներսում, Բ. Կնունյանցն իր ելույթներում հանգամանորեն ցույց է տվել Ռուսաստանի համար միասնական կենտրոնացված հեղափոխական կուսակցության կարևորությունն ու անհրաժեշտությունը, կոչ արել վճռական ճակատամարտի ելնել հակակուսակցական դիրքերը գրաված մենշևիկ-պառակտիչների դեմ:

ՌՍԴԲԿ II համագումարից հետո մենշևիկները նպատակ ունեին պառակտել տեղական կուսակցական կազմակերպությունները, ջլատել աշխատավորների գործողությունների միասնությունը: Շուշիում, նրանք օգտվելով տեղի սոցիալ-դեմոկրատների քաղաքական անհասությունից և գաղափարական անբավարար պատրաստականությունից, էսեռների հետ բլոկ կազմած, կարողացան համաձայնեցնել հեղափոխական սոցիալ-դեմոկրատներին և 1904 թ. գարնանը էսեռների հետ միասին ստեղծել, այսպես կոչված՝ «Սոցիալ-դեմոկրատների և սոցիալիստ-հեղափոխականների (էսեռների) միացյալ խումբ» կազմակերպությունը (տե՛ս **«Очерки истории коммунистической партии Азербайджана», стр.** 62): Խումբը շատ կարճ կյանք ունեցավ: Ամենայն հավանականությամբ, Բ. Կնունյանցի ժամանումը Շուշի, նրա աշխատանքը համագումարի որոշումների պարզաբանման խնդրում կարևոր դեր են խաղացել արագ շտկելու այդ սխալը, և Ղարաբաղում սոցիալ-դեմոկրատական շարժումը նորից ճիշտ ուղու վրա դնելու գործում:

Շուշիում տարբեր ժամանակներում եղել են նաև Փառանձեմ Կնունյանցը (Ռիզել), Լյուդվիգ Կնունյանցը, «Պայքարի միության» անդամ Սիմոն Ավետիսյանը, Հովհաննես Մելիք-Հովսեփյանը, Արմենակ Բազատուրյանցը, Վարդանուշ (Լաուրա) Բազատուրյանցը, Վլադիսլավ Կասպարյանցը (Սլավա Կասպարով), Ալեքսանդր Բեկզադյանցը (Յուրի), Հակոբ Բեջանյանը (Հակոբ Կամարի), Հայկ Գյուլիքեխվյանը, Աշոտ Հովհաննիսյանը, Իսահակ Դովլաթյանը (Իսա Դովլաթով), Սարգիս Կասյանը (Տեր-Կասպարյանց), Սահակ Տեր-Գաբրիելյանը, Սարգիս Համբարձումյանը (Սաքո), Թևադրոս Միրզաբեկյանը, Միր Հասան Սեիդ Քյազիմ օղլի Վեզիրովը, հետագայում Բաքվի կոմունայի կոմիսարներից մեկը, որը գյուղացիների շրջանում եռանդուն գործունեության, ինչպես և Ղարաբաղի բեկերի ու աղալարների արարքները խարազանող անվախ ելույթների համար ստացել էր «բեկերի ու աղաների խարազանիչ» մականունը և շատ ուրիշներ: Հեղափոխական գործիչները բեղմնավոր աշխատանք կատարեցին բանվորների, գյուղացիների, ինտելիգենցիայի շրջանում մարքսիստական գաղափարները պրոպագանդելու, նրանց սոցիալ-դեմոկրատիայի շարքերը ներգրավելու ուղղությամբ:

ՌՍԴԲԿ Բաքվի կոմիտեի օգնությամբ 1904 թ. ամռանից Շուշիում վերստին սկսեցին գործել սոցիալ-դեմոկրատական խմբակները: Ճիշտ է, նրանք կազմակերպորեն իրարից անջատ էին, սակայն քիչ չեն փաստերը, երբ կարևոր ձեռնարկումների ժամանակ նրանք համաձայնեցնում էին իրենց գործողությունները: Այսպես, ռուս-ճապոնական պատերազմի ընթացքում ծավալված հակապատերազմական միասնական պայքարը ձախողեց աշխատավորության հայրենասիրական զգացմունքների հետ խաղալու ցարական կառավարության և նրա կամակատար կուսակցությունների փորձերը:

Արձագանքելով պատերազմի առթիվ ՌՍԴԲԿ Կենտրոնական կոմիտեի դիմումին, օգտագործելով Բաքվից ու Թիֆլիսից ստացված հեղափոխական պրոկլամացիաներն ու թերթիկները, Շուշիի սոցիալ-դեմոկրատները կարողացան, բնակչության շրջանում տարվող ակտիվ գործունեության շնորհիվ, աշխատավորների զգալի մասին բացատրել պատերազմի իմպերիալիստական բնույթը, Ռուսաստանի և Ճապոնիայի զավթողական նպատակները, կոչ արեցին բանվորներին ու գյուղացիներին՝ սերտորեն համախմբվել հեղափոխական սոցիալ-դեմոկրատների շուրջը, իրականացնել պատերազմում ինքնակալության պարտության մասին բոլշևիկյան լոզունգը: Այդ ամենի արդյունքն այն եղավ, որ 1904 թ. աշնանը, զինակոչի օրերին Շուշիում հակապատերազմական խոշոր ցույց կազմակերպվեց, որն անսպասելի անախորժություններ պատճառեց տեղական իշխանություններին: Նման ցույցեր և զինակոչի բոյկոտի դեպքեր են տեղի ունեցել նաև Ղարաբաղի մի շարք գյուղերում (տե՛ս **«История Коммунистической партии Азербайджана, ч. I, стр. 67:** Տե՛ս նաև **В. Ю. Самедов, Распространение марксизма-ленинизма в Азербайджане», Баку, 1962, стр. 574):**

Շուշիի սոցիալ-դեմոկրատական խմբակներում հաճախ ծրագրային և քաղաքական տար-

1 *ՎՍՍՀ ՊԿՊԱ, ֆ. 7/c, գ. 339, թ. 17:*

մակում ասված էր, թե «Շուշիում կազմակերպվում է սոցիալ-դեմոկրատական խումբ: Նախնական աշխատանքները ավարտվելու վրա են: Խումբը նամակագրական կապի մեջ կմտնի խմբագրության հետ «Ղալա» ստորագրությամբ»[1]:

Հաջորդ նամակում, որն ուղարկված էր հուլիսի 1-ին ՌՍԴԲԿ Կովկասյան Միության Շուշիի խմբի կողմից, **«Пролетарий»**-ի խմբագրությանն իրազեկ էր դարձվում խմբի հիմնադրման մասին»[2]: Իսկ որոշ ժամանակ անց **«Пролетарий»**-ի 1905 թ. համարներից մեկում զետեղված խմբագրականի ծանոթագրության մեջ ընթերցողներին հայտնվում է խմբագրությունում նոր ստացված մարտական թերթիկների մասին, որոնք հրատարակել է սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցության Շուշիի խումբը (տե՛ս **«Пролетарий»** № 13, 22 (9), 1905 г.):

Այսպիսով, Բաքվի բոլշևիկյան կազմակերպության և ՌՍԴԲԿ Կովկասյան միութենական կոմիտեի նախաձեռնությամբ և ակտիվ աջակցությամբ, 1905 թ. հունիսին Շուշիում հիմնադրվեց սոցիալ-դեմոկրատական խումբը՝ Լեռնային Ղարաբաղի բոլշևիկյան անդրանիկ բջիջը: Խմբի ստեղծումը կարևոր նշանակություն ունեցավ Ղարաբաղի աշխատավորների հեղափոխական ակտիվության հետագա բարձրացման, նրանց մարքսիզմ-լենինիզմի ոգով դաստիարակելու և բոլշևիկյան կուսակցության շուրջը համախմբելու գործում:

Ղեկավարվելով ՌՍԴԲԿ III համագումարի դիրեկտիվներով, Շուշիի սոցիալ-դեմոկրատական խումբը, իր գործունեության առաջին իսկ օրից, հետևողականորեն պրոպագանդել և կենսագործել է պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքները, գավառի աշխատավորությանը համախմբել բոլշևիկյան կուսակցության շուրջը: Շուշիի խմբում, հանուն հեղափոխության ընդհանուր գործի, ձեռք-ձեռքի աշխատել և պայքարել են տարբեր ազգերի ներկայացուցիչներ՝ հայեր, ադրբեջանցիներ, վրացիներ, ռուսներ, հույներ: Նրանց ջանքերով 1905 թ. կազմակերպվեցին հակապատերազմական և հակացարական մի շարք քաղաքական ելույթներ ու ցույցեր, որոնք մեծ նշանակություն ունեցան աշխատավորների համերաշխության և բարեկամության հետագա ամրապնդման համար:

Ռուսական առաջին հեղափոխության տարիներին նշանակալի է հատկապես Լեռնային Ղարաբաղի բոլշևիկյան անդրանիկ բջջի ծառայությունը՝ դաշնակների հակաբանվորական գործունեությունը բացահայտելու ասպարեզում:

Կոնկրետ փաստերով մերկացնելով դաշնակների մեքենայությունները և դրանք համարելով «խաղ գործադուլի հետ», ՌՍԴԲԿ Կովկասյան միության Շուշու խումբը 1905 թ. հուլիսի 29-ի մարտական թերթիկում ցույց տվեց, թե ինչպիսի լուրջ վնաս հասցրին դաշնակները բանվորներին, երբ համաձայնվեցին ձեռնարկատերերի հետ գավառի բոլոր գործարաններում ու ֆաբրիկաներում միասնական աշխատավարձ մտցնել, հիմք ընդունելով Ներսիսյանի գործարանի աշխատավարձի չափը, գործարան, որը ամենաառաջավորն էր խիստ շահագործման տեսակետից և ամենահետամնացը՝ մյուս բոլոր հարցերում (**«Листовки Кавказского союза РСДРП, 1903—1905 гг., стр. 377)**:

Դրա հետևանքով, ինչպես ասված էր թերթիկում, բանվորները ո՛չ միայն չկարողացան հասնել իրենց պահանջների բավարարմանը, այլ՝ ստիպված եղան համակերպվել աշխատանքի ավելի վատ պայմանների հետ: Բանվորները, որոնք մինչև գործադուլը ստանում էին օրական 30—40 կոպեկ, գործադուլից հետո, դաշնակների ջանքերով, ստացան 15 կոպեկ: «Ահա ինչպես են առ ու ծախ անում Ձեր շահերով, Ձեր կյանքով ու արյունով, ահա թե ինչպես է դաշնակցությունը պաշտպանում բանվորների շահերը (նույն տեղը): Այս խոսքերով դիմելով գործադուլավորներին, Շուշու խումբը պահանջում էր չմոռանալ դաշնակների «ուսանելի դասերը» ու, համախմբվելով աշխատավորների շահերի միակ պաշտպան բոլշևիկ սոցիալ-դեմոկրատների շուրջը, դիմագրկել դաշնակներին:

Լեռնային Ղարաբաղի լենինյան անդրանիկ բջիջը մեծ գործունեություն է ծավալել ցարիզմի և բուրժուական նացիոնալիստների կողմից իրականացվող ազգամիջյան ընդհարումների ոճրագործ քաղաքականության մերկացման ուղղությամբ, որի գլխավոր նպատակն էր՝ 1905—1907 թթ. հեղափոխության հենց սկզբից ջլատել ժողովրդի ուժերը, շեղել նրան հեղափոխական պայքարի ուղուց: Դիմելով հայ և ադրբեջանցի աշխատավորներին, Շուշիի խումբը իր պրոկլամացիաներից մեկում, երկու հարևան ժողովուրդներից պահանջել է ձեռք մեկնել միմյանց, սրտորեն համախմբվել հեղափոխական սոցիալ-դեմոկրատիայի շուրջը և միասնական ճակատով հարվածել ցարական կառավարությանը՝ Բաքվի և Շուշիի արյունահեղությունների ամենամեծ հանցավորին: «Արյունռուշտ ցարական կառավարությանը մահացու հարված հասցնելու համար միմյանց ձեռք մեկնե՛ք, ավելի սերտ համախմբվե՛ք հայ և ադրբեջանցի աշխատավորներ» (**«Листовки Кавказского союза** РСДРП, 1903—1905 гг., стр. 342):

---

[1] Архив ИМЛ при ЦК КПСС, док. *№ 20106: Տե՛ս նաև ՄԼԻ-ի Հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 4033, գ. 113, թ. 1, 2:*

[2] *Նույն տեղը, փաստաթուղթ № 20102:*



Ինքնակալության բռնամիների դեմ մղած անհաշտ պայքարում աճել ու ամրապնդվել է Լեռնային Ղարաբաղի բոլշևիկյան կազմակերպությունը, որի եռանդուն գործունեության շնորհիվ ռուսական առաջին հեղափոխության ժամանակ Ղարաբաղում ավելի մեծ չափով ծավալվեցին հեղափոխական շարժումները, որոնք, սակայն, ռեակցիայի մռայլ տարիներին դաժանորեն ճնշվեցին ցարիզմի կողմից:

Սկսած 1906 թ. սկզբներից ցարական իշխանությունները, իրենց իսկ սեփական ձեռքով կազմակերպած հայ-մուսուլմանական ազգամիջյան ընդհարումներին վերջ տալու պատրվակով, Անդրկովկասի բազմաթիվ վայրերում, ինչպես և Լեռնային Ղարաբաղում կազմակերպեցին պատժիչ արշավախմբեր: Շուշի գավառի ամբողջ տերիտորիայում, մասնավորապես Վարանդայի ու Խաչենի գավառամասերում մոլեգնում էին ռազմադաշտային դատարանները և պատժիչ արշավախմբերը, որոնք գավառապետ Ցլեյլիխի հաշտարար միջնորդ Երմոլաևի, ոստիկանապետ Ցատի, պատժողական զորախմբերի հրամանատարներ՝ գնդապետ Վեվերնի, Բրիտկինի և Հաջինի գլխավորությամբ արյունալի դատ ու դատաստանով փորձում էին ո՛չ միայն ընկճել գյուղացիության հեղափոխական ոգին, այլև նրա գիտակցությունից իսպառ ջնջել հեղափոխության գաղափարը:

Ռեակցիայի տարիներին այդտեղ հաստատված դաժան ռեժիմից մեծ չափով տուժեց Շուշիի բոլշևիկյան կազմակերպությունը. հայտնաբերվեց ու լիկվիդացվեց ընդհատակյա տպարանը, հեղափոխական սոցիալ-դեմոկրատների մի մասը ձերբակալվեց ու բանտ նետվեց, իսկ շատերը մեկնեցին օտար վայրեր և 1907 թ. վերջերին Լեռնային Ղարաբաղի լենինյան անդրանիկ բջիջը դադարեց գոյություն ունենալուց:

Սակայն սոցիալ-դեմոկրատական շարժումը Ղարաբաղում չդադարեց: Ղարաբաղի հայ բընակչության շրջանում ցարի և նրա կովկասյան սատրապների գործադրած աննկարագրելի դաժանությունները անհետևանք չմնացին: Թնդանոթներն ու կախաղանները, հրդեհումներն ու բարբարոսությունները չընկճեցին նրա ազատատենչ ոգին և, այդ ամենի համար վրեժի ցասումը սրտում, վերահաս փոթորկի նոր փուլում, նա նախապատրաստվեց ավելի վճռական մարտերի:

Գ. Ա. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ



# ԲԱԼԱՆԴԻՆ-ՆԱԼԲԱՆԴՅԱՆ ԱՌԵՂԾՎԱԾԸ

Ինչպես հայտնի է, ռուս պատմաբան Ս. Ծիլովը դեռևս 1926 թ. հրապարակեց նորին կայսերական մեծության սեփական գրասենյակի երրորդ բաժանմունքի արխիվում պահպանված այն մատնագրերի մի մասը, որ վերաբերում էր Ն. Գ. Չերնիշևսկու պետերբուրգյան շրջանի կյանքին, նրան շրջապատող մարդկանց և Պետերբուրգի համալսարանում տեղի ունեցած ուսանողական հուզումներին: Այդ մատնագրերից մեկում ասված էր, որ 1862 թ. հունիսի 13-ից մինչև հուլիսի 7-ը մի շարք անձանց հետ Ն. Գ. Չերնիշևսկուն է այցելել և ոմն Բալանդին: Երկար ժամանակ Բալանդինի անձնավորությունն անհայտ էր: Անհրաժեշտ փաստաթղթերի բացակայության պատճառով Չերնիշևսկու ժառանգության հետազոտողները չեն զբաղվել այդ հարցով:

ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի ավագ գիտաշխատող Վ. Գ. Բասկակովը, 1951 թ. փիլիսոփայական գիտությունների դոկտորի աստիճան հայցելու համար պաշտպանության ներկայացրած իր դիսերտացիայում, անդրադառնալով այդ հարցին, հայտնեց, թե Բալանդին ազգանվան տակ թաքնված է հայ ականավոր հեղափոխական-դեմոկրատ Նալբանդյանը, որն իբր «ոստիկանության հսկողությունից թաքնվելու, ձերբակալությունից խուսափելու նպատակով քանիցս փոխել է իր ազգանունը» (В. Г. Баскаков, **Социологические воззрения классиков русской философии XIX века** (В. Г. Белинский—Н. Г. Чернышевский) Докторская диссертация, Москва, 1951 г., стр. 713): Վ. Գ. Բասկակովի այս հաղորդումը, որ արտահայտված էր նաև նրա դիսերտացիայի ավտոռեֆերատում, շուտով դարձավ գիտական հասարակայնության սեփականությունը, մեծ աշխուժություն, բայց և ոչ պակաս շփոթություն առաջացնելով Ն. Գ. Չերնիշևսկու և մանավանդ, Մ. Նալբանդյանի ժառանգության հետազոտողների շրջանում: Վերջիններից շատերն այն ընդունեցին որպես բացարձակ ճշմարտություն: Ոմանք նույնիսկ հարկ չհամարեցին դիմել հեղինակի դիսերտացիային՝ ծանոթանալու այն փաստաթղթերին, որոնք նրա ավտոռեֆերատում կոչվում էին «չտպագրված դոկումենտալ նյութեր»:

Վ. Գ. Բասկակովի տվյալ հաղորդմանը Հայաստանում առաջինն արձագանքեց Ա. Մ. Ինճիկյանը: Իր **Ն. Գ. Չերնիշևսկու և Մ. Նալբանդյանի գաղափարական կապերի հարցի շուրջ** հոդվածում, շրջանցելով Բասկակովի դիսերտացիան ու ավտոռեֆերատը, Ինճիկյանը գրում է. «Արխիվային փաստաթղթերի ուշադիր ուսումնասիրությունը որոշ հիմքեր է տալիս ենթադրելու, որ Նալբանդյանն անձամբ ծանոթ է եղել Չերնիշևսկու հետ և այցելել է նրան արտասահման կատարած երկրորդ[1] ճանապարհորդությունից անմիջապես հետո՝ 1862 թ. հունիսի 13—25-ը[2] ժամանակամիջոցում» («Սովետական գրականություն և արվեստ», 1952 թ., № 6, էջ 131):

Մի կողմ թողնելով այս կապակցությամբ հենակի բերած մյուս փաստարկները, անդրադառնանք միայն քննարկվող հարցի հետ առնչվող «արխիվային փաստաթղթերին»: Որպես այդպիսին Ինճիկյանը վկայակոչում է 3-րդ բաժանմունքի գործակալի 1862 թ. հուլիսի 7-ի վերը նշված և վաղուց հրապարակված № 113 մատնագիրը (տե՛ս «Красный архив», Исторический журнал, 1926 г., т. первый (четырнадцатый), Москва — Ленинград, стр. 121 и дальше), որտեղ տեղեկություններ կան 1862 թ. հունիսի 13-ից մինչև նույն տարվա հուլիսի 7-ը Չերնիշևսկուն այցելած մարդկանց մասին: Նշելով, որ հիշյալ մատնագրում «հիշատակվում է նաև ոմն Բալանդին», որի անուն-հայրանունը «հակառակ սովորության չի նշված», և որ, «60-ական թվականների ռուս ռևոլյուցիոն շարժման մասնագետները վկայում են, որ Բալանդին ազգանունը հիշատակված է միայն այդ փաստաթղթում» (՞), Ինճիկյանն իր առաջ խնդիր է դնում պարզել, թե ո՞վ է այդ ոմն Բալանդինը: Փոխանակ հանգամանորեն հետազոտելու ռուս մեծ հեղափոխական-դեմոկրատի անվան հետ կապված այս հարցը, Ինճիկյանը բավարարվում է սոսկ վկայակոչելով, թե 3-րդ բաժանմունքի փաստաթղթերում Նալբանդյանի ազգանունը քանիցս աղճատվել և ընդունել է Նաբալդին ձևը, և թե «երկու դեպքում էլ (և՛ 3-րդ բաժանմունքի փաստաթղթերում, և՛ մատնագրում—Հ. Խ.) կատարվել է Նալբանդյան ազգանվան վանկերի վերադասավորություն (անագրամա) ու դուրս է ընկել միայն «յան» վերջավորությունը (Նալբանդյան—Նաբալդին—Բալանդին)». դրա հիման վրա եզրակացնում է. «1862 թ. հունիսին Չերնիշևսկու հետ տեսակցություն ունեցած Բալանդին «անհայտ անձնավորությունը» ամենայն հավանականությամբ Նալբանդյանն է» («Սովետական գրականություն և արվեստ», 1952 թ., № 6, էջ 134):

Դժվար չէ պատկերացնել, թե վանկերի կամայական վերադասավորությունը գիտական եզրակացության հիմք դարձնելն ինչպիսի քաոս կարող է առաջացնել գիտական հետազոտության ասպարեզում: Դժբախտաբար հենց այդպիսի քաոս է ստեղծվել ինչպես Բալանդինի անձնավորության, այնպես էլ այդ կապակցությամբ Մ. Նալբանդյանի ու Ն. Գ. Չերնիշևսկու անմիջական ծանոթության հարցում. մի անգամ որպես հնարավոր ենթադրություն գրական մամուլում հրապարակվելուց հետո, Բալանդին—Նալբանդյան առասպելը զարմանալի արագությամբ թափանցել է հանրապետության պարբերական և գիտական մամուլի էջերը, մտել մենագրությունների մեջ, վերածվել հանրահայտ, անառարկելի «փաստի»:

Այսպես, օրինակ, գրականագետ Գ. Ստեփանյանն իր **Մ. Նալբանդյանը Ն. Չերնիշևսկու հավատարիմ զինակից** խորագիրը կրող հոդվածում, անդրադառնալով Մ. Նալբանդյանի աշխարհայացքի ձևավորման վրա ռուս մեծ հեղափոխական-դեմոկրատի գործած ազդեցությանը, նշում է, որ հայ ականավոր հեղափոխական-դեմոկրատի մատերիալիստական հայացքներն «ամբողջական աշխարհայացք դարձան հետհյուսիսափայլյան շրջանում, ամրապնդվելով Չերնիշևսկու և Նալբանդյանի անձնական կապով, ռևոլյուցիոն համատեղ գործունեությամբ» («Սովետական Հայաստան» հանդես, 1953 թ., № 4, էջ 42): Իր այս պնդումն ավելի հավաստի դարձնելու նպատակով, նկատի ունենալով վերը նշված մատնագիրը, Գ. Ստեփանյանն այդ նույն հոդվածում ընդգծում է. «Սովետական մի շարք բանասերների պրպտումները ցույց են տվել, որ Նալբանդյանը իրոք անձնական կապեր է ունեցել Չերնիշևսկու հետ» (նույն տեղը, էջ 45):

Այդ իսկ հանդեսում հրապարակված մի այլ հոդվածի հեղինակ՝ Հ. Մամիկոնյանը, անդրադառնալով Ն. Գ. Չերնիշևսկու և Մ. Նալբանդյանի՝ Բալանդին—Նալբանդյան առասպելի վրա հիմնված անձնական ծանոթությանը և նրանց հեղափոխական գործունեության մեջ դրա խաղացած դերին, ավելի հեռուն գնալով, նշում է. «Վերջերս հայտնաբերված նոր փաստաթղթերը ցույց են տալիս..., որ Նալբանդյանը Չերնիշևսկու հանձնարարությամբ ու գիտությամբ գաղտնի ընդհատակյա կազմակերպություններ է ստեղծել Արևելյան և Արևմտյան Հայաստանում» (նույն տեղը, էջ 41):

Հայ ականավոր գրող Հր. Քոչարը **Մեր ազգային հպարտությունը** խորագիրը կրող իր հոդվածում, հիմք ընդունելով նույն այդ մատնագիրը, նշում է. «Ցարական օխրանկայի տըվյալներով, 1862 թվականի հունիսի 13-ից մինչև հուլիսի 7-ը Չերնիշևսկուն այցելած մարդկանց թվում Նեկրասովի, Սերնո-Սոլովևիչի ու մյուսների հետ եղել է նաև **Բալանդինը:** Այս անունը մեկ ուրիշ տեղ հիշվում է որպես **Նաբալդին,** որը Միքայել Նալբանդյանն է» («Սովետական Հայաստան», 1954 թ., № 279): 1862 թ. Նալբանդյանի՝ արտասահմանից վերադառնալուց հետո Չերնիշևսկուն այցելելու կամ նրա հետ անձնական ծանոթություն ունենալու փաստը (նույն հիման վրա) հավաստում են նաև Ս. Բագյանը[1], Մ. Մկրյանը[2] և ուրիշներ:

[1] *Պետք է լիներ երրորդ: Այն ժամանակ, երբ Ինճիկյանը գրում էր այս հոդվածը, Նալբանդյանի արտասահման կատարած առաջին ճանապարհորդությունը հայտնի չէր, ուստի, նրա երկրորդ ճանապարհորդությունը համարվում էր առաջին, իսկ երրորդը՝ երկրորդ:*

[2] *Սխալ է. այն աղբյուրում, որտեղից Ինճիկյանը քաղել է այս տվյալները, պարզ գրված է. «Հունիսի 13-ից մինչև հուլիսի 7-ը»: Ինճիկյանն այս սխալը թույլ է տվել Բալանդինի այցելության և Նալբանդյանի՝ Պետերբուրգից մեկնելու ժամանակները համապատասխանեցնելու նպատակով:*

[1] Միքայել Նալբանդյան, *Երևան, 1955 թ., էջ 68:*

[2] «Ավանգարդ», *1954 թ., № 141:*

Ուշագրավ է, որ Բալանդին—Նալբանդյան առասպելը թափանցել է նաև միութենական մամուլի էջերը (տե՛ս, Вестник Московского университета. Серия общественных наук. 1953 г., № 11, стр. 106. Вестник академии наук СССР, 1955 г., № 2, стр. 103. Очерки по истории философской и общественно-политической мысли народов СССР, т. II, Москва, 1956 г., стр. 764 и другие):

Չի կարելի ասել, որ այս ամենը տեղի է ունեցել առանց որոշ խոչընդոտների հաղթահարման: Դեռևս 1954 թ. նոյեմբերին հրապարակված իր մի հոդվածում Պ. Սիմոնյանը հայտնել է, որ Մ. Նալբանդյանի անձնական գրադարանը նայելիս իր ուշադրությունն է գրավել այն փաստը, որ Բալանդինը Նալբանդյանի գրադարանում եղած գրքերից մեկի խմբագիրն է և որ, հետևաբար, նրան «չպետք է շփոթել Նալբանդյանի ենթադրյալ կեղծանվան հետ» (ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի «Տեղեկագիր», Հասարակական գիտություններ, 1954 թ., № 11, էջ 87):

Գրականագետ Գ. Ստեփանյանը, որն իր վերոհիշյալ հոդվածում այնպես պաշտպանում էր Բալանդին—Նալբանդյան վերսիան (տե՛ս «Սովետական Հայաստան» հանդես, 1953 թ., № 4), հետագայում, նկատի ունենալով նշված Բալանդինին, ստիպված էր հայտնել, թե «քանի որ գոյություն է ունեցել պատմական կոնկրետ անձնավորություն, անիմաստ է նրա անունը վերագրել Նալբանդյանին» («Պարտիական կյանք», 1954 թ., № 12, էջ 58): Հայկ. ՍՍՀ գիտությունների ակադեմիայի ակադեմիկոս Ա. Հովհաննիսյանը դեռ 1955 թ. նկատել էր, որ մատնագրում նշված Բալանդինի հասցեն չի համընկնում Նալբանդյանի հասցեին և, հետևաբար, բացարկվում է Նալբանդյանի և Բալանդինի ենթադրյալ նույնությունը (տե՛ս Ա. Հովհաննիսյան, **Նալբանդյանը և նրա ժամանակը:** Գիրք առաջին, Երևան, 1955 թ., էջ 451): Դժբախտաբար այդքանով էլ ավարտվել են այս առթիվ եղած առարկությունները, մինչդեռ Բալանդին—Նալբանդյան առասպելն այդուհետ ևս մնացել է կա՛մ որպես ընդունված ճշմարտություն, կա՛մ որպես հավանական ենթադրություն:

Քանի որ, ինչպես պարզվում է մեր ուսումնասիրությունից, Բալանդին—Նալբանդյան առասպելի բոլոր կողմնակիցները հենվում են միայն վերը նշված մատնագրի վրա, ստորև բերում ենք այն՝ մի փոքր ավելի, քան բերված է Վ. Գ. Բասկակովի դիսերտացիայում, ցույց տալու, թե արդյոք այն հիմքեր տալի՞ս է այդպիսի եզրակացության համար:

«Հետախուզական հսկողություն Ն. Գ. Չերնիշևսկու նկատմամբ... № 62 (113)[1] Հունիսի 13-ից մինչև այսօր Չերնիշևսկու մոտ եղել են. նոր անձանցից՝ Կուդրիցկին, ապրում է Պետերբ[ուրգյան][2] կողմում, Կրոնվերսկի պող. № 29, բն. № 3, Բաուերի տանը (1 անգամ՝ 13-ին), Բալանդին, ապրում է Վաս[իլևյան] կղզում, Սրեդնի պող. 7-րդ և 8-րդ գծերի միջև, Սիսովի տանը. բժիշկ Գորոդկովը՝ 2-րդ Կադ[ետական] կորպուսից, ապա Վորոնովը՝ 5 անգամ, Գրիգորի Գավրիլովիչ Պեյզեպը կամ Պիզեպը, որ եկել է արտասահմանից՝ 2 անգամ, Ֆլյամ երկու եղբայրները, որ ապրում են Իզմաիլովյան կամուրջի մոտ (չորս անգամ), Իվ. Իվ. Բերդակովը՝ մեկ անգամ:

Նախկին անձանցից՝ Վորոնով Միխայիլ Ալեքսանդրովիչը՝ 20 անգամ, Սոլովևիչը՝ 6 անգամ, Սովետովը՝ 11 անգամ, ուսան[ող] Ուտինը՝ հունիսի 16, 18, 25, 26 և հուլիսի 6-ին, բժիշկ Բոկովը՝ 10 անգամ, Անտոնովիչը՝ 11 անգամ, Գեզեբերիձեն՝ 7 անգամ, Նեկրասովը՝ 8 անգամ, Լունինը՝ 3 անգամ, Ստրալերը՝ 1 անգամ, Բեղերևսկին (Վերդերևսկին)՝ 2 անգամ, պրոֆ. Պիպինի եղբայրը՝ 4 անգամ, գրիչ Իվ. Պավլովը, գրագիր Ի. Վ. Իվանովը:

Բացի այդ անձանցից 88 անգամ եկել են նաև տարբեր մարդիկ, ինչպես զինվորականներ, այնպես էլ քաղաքացիներ» («Красный архив», Ист. ж-л, 1926 г., т. первый (четырнадцатый), стр. 121—122):

Իր դոկտորական դիսերտացիայում մի փոքր կրճատումով բերելով այս փաստաթուղթը՝ Վ. Գ. Բասկակովն առանց անհրաժեշտ հիմքի եզրակացնում է, որ Բալանդինը նույն ինքը Նալբանդյանն է, որն իբր, չնայած նրա նկատմամբ հաստատված «...գաղտնի ոստիկանության խիստ հսկողության... 1862 թվականին մի քանի անգամ հանդիպում է ունեցել Չերնիշևսկու հետ նրա բնակարանում, հերթական հանձնարարություններ ստանալով հայ ժողովրդին զինված ապստամբության կազմակերպելու և նախապատրաստելու համար» (В. Г. Баскаков, **Социологические воз-**

[1] *Մատնագրի համարն այստեղ նշված է ըստ Ա. Շիլովի համարակալման (տե՛ս* «Красный архив», Исторический журнал, 1926 г., т. первый (четырнадцатый), стр. 121). *Փակագծերում նշված է մատնագրի բուն համարը:*

[2] *Այստեղ և հետագայում ուղղանկյուն փակագծերի մեջ առնվել են մեր լրացումները:*



**зрения классиков русской философии XIX века.** Докторская диссертация. Москва, 1951 г., стр. 713): Որ Վ. Գ. Բասկակովի այս եզրակացությունը, ինչպես և բազմաթիվ հայ նալբանդյանագետների դրանից բխող եզրակացություններն անհիմն են, ակընբախ է ո՛չ միայն Ա. Հովհաննիսյանի մատնանշած Բալանդինի և Նալբանդյանի հասցեների տարբերությունից, այլև հենց տվյալ մատնագրի վերլուծությունից: Մատնագրի ընթերցումից պարզ երևում է, որ դրա հեղինակը 3-րդ բաժանմունքին հայտնել է ո՛չ միայն 1862 թ. հունիսի 13-ից մինչև հուլիսի 7-ը ընկած ժամանակամիջոցում Չերնիշևսկուն այցելողների անուն-ազգանունները, այլև այդ ժամանակամիջոցում նրանց այցելությունների թիվը: Թե մատնագրի հեղինակը որքան մեծ նշանակություն էր տալիս այցելությունների թվին, երևում է նրանից, որ նույնիսկ այն դեպքերում, երբ նա հնարավորություն չի ունեցել նշելու այցելուների ազգանունները, այնուամենայնիվ նշել է նրանց այցելությունների թիվը՝ «88 անգամ»: Հետևապես, նա չէր կարող չնշել նաև Բալանդինի այցելությունների թիվը:

Մատնագրում նշված բոլոր անձնավորություններից ուղղակիորեն գրված չէ միայն չորսի՝ բժիշկ Գորոդկովի, Բալանդինի, գրիչ Իվ. Պավլովի և գրագիր Իվ. Իվանովիչի այցելությունների թիվը: Դժվար չէ հասկանալ, որ սրանք հենց այն անձնավորություններն են, որոնք այդ ժամանակամիջոցում Չերնիշևսկուն այցելել են ամեն օր, ուստի և հարկ չի եղել մի ավելորդ անգամ նշելու նրանց այցելությունների թիվը[1]:

Վերն ասվածից բխում է, որ եթե Բալանդինն իսկապես Նալբանդյանն է, ինչպես նշում են Վ. Գ. Բասկակովը, Ա. Ինճիկյանը և ուրիշներ, ապա նա պետք է 1862 թ. հունիսի 13-ից մինչև հուլիսի 7-ն այցելած լիներ Չերնիշևսկուն. մինչդեռ, ինչպես հայտնի է, Նալբանդյանը Պետերբուրգից մեկնել է Մոսկվա—Նոր-Նախիջևան նույն տարվա հունիսի 24-ին կամ 25-ին և պարզ է, որ մինչև հուլիսի 7-ը Չերնիշևսկուն այցելել չէր կարող:

Բալանդինը և Նալբանդյանը տարբեր անձնավորություններ են. այդ երևում է նաև նրանից, որ թե՛ Նալբանդյանի և թե Չերնիշևսկու գործի քննության ընթացքում նրանց առջև հարց չի դրվել Նալբանդյանի կամ Բալանդինի՝ Չերնիշևսկուն այցելելու մասին: Ինչպես հայտնի է, քննիչ հանձնաժողովը նույնիսկ ուշադրություն դարձրեց Նալբանդյանի ծոցատետրում Պետերբուրգի համալսարանի պրոֆեսոր Պիպինի՝ հասարակ մատիտով հապճեպ գրված հասցեի վրա և այդ կապակցությամբ Նալբանդյանը ենթարկվեց հարցաքննության: Բնականաբար, քննիչ հանձնաժողովը, որի տրամադրության տակ էին Չերնիշևսկու մասին եղած բոլոր մատնագրերը, և որին քաջ հայտնի էին Նալբանդյանի ազգանվան աղավաղումները,— առավել ևս պետք է հետաքրքրվեր Բալանդինի հարցով, եթե իսկապես դրա տակ թաքնված էր Նալբանդյանը կամ որևէ այլ հեղափոխական գործիչ: Սակայն հայտնի է, որ քննիչ հանձնաժողովը չի զբաղվել Բալանդինի հարցով և հասկանալի է թե ինչու. 3-րդ բաժանմունքը մատնագիրն ստանալով անմիջապես պարզել է Բալանդինի անձնավորությունը, մանավանդ, որ մատնագրում հայտնված էր նաև նրա հասցեն և, համոզվելով, որ նա մասնակից չէ հեղափոխական գործին, անուշադրության է մատնել այն:

Այսպիսով Նալբանդյանը և 3-րդ բաժանմունքի մատնագրում նշված Բալանդինը բոլորովին այլ անձնավորություններ են. հետևաբար Նալբանդյանի ու Չերնիշևսկու՝ հիշյալ մատնագրի վրա հենվող անձնական ծանոթությունը և դրանից արվող մյուս բոլոր հետևությունները անհիմն են:

Այժմ հարց է ծագում— իսկ ո՞վ է այդ չարաբաստիկ մատնագրում նշված Բալանդինը, և ինչո՞ւ է հատկապես այդ շրջանում այդքան հաճախ նա այցելել Չերնիշևսկուն:

Ինչպես պարզվեց Լենինգրադում կատարած մեր ուսումնասիրությունից, վաթսունական թվականների սկզբներին Պետերբուրգում ապրում էին մի քանի Բալանդին. դրանցից առանձնապես նշանավոր էր Բալանդին Իլյա Ֆյոդորովիչը. 1859 թ. ավարտելով տեղի բժշկական ակադեմիայի դասընթացը՝ նա ստանձնեց Ս. Պետերբուրգի Ելիզավետինսկու մանկական կլինիկական հիվանդանոցի օրդինատորի պաշտոնը: Իր ժամանակին նա կնախտաբան-մանկաբարձի մեծ համբավ ուներ և տեղի բժշկա-վիրաբուժական ակադե-

[1] *Որ Չերնիշևսկու գրագիրը և գրիչն ամեն օր լինում էին նրա մոտ, պարզ երևում է № 12 (17) և № 57 (107) մատնագրերից, որոնցից առաջինում ասված է. «...կարող է պատահել, որ հաջողվի կապվել գրագրի հետ, որը միշտ նրա (այսինքն՝ Չերնիշևսկու—Հ. Խ.) մոտ է լինում». իսկ երկրորդում կարդում ենք. «գրիչներ Զվոնարևը և Իվան Պավլովը նույնպես ներկայանում էին (Չերնիշևսկուն— Հ. Խ.) ամեն օր, իսկ երբեմն էլ՝ օրական մի քանի անգամ»:*

*Ինչ վերաբերում է բժիշկ Գորոդկովին, ապա նա մեկն է այն փոքրաթիվ մարդկանցից, որոնց համար միշտ բաց էին Չերնիշևսկու տան դռները (տե՛ս* «Красный архив», 1926 г., т. первый (четырнадцатый), стр. 87):

միայում պաշտպանել էր դոկտորի աստիճան: Ինչպես պարզվեց, հենց նա էր Նալբանդյանի անձնական գրադարանում գտնված **О внешних чувствах** գրքի խմբագիրը, որին Պ. Սիմոնյանն զգուշացնում էր չշփոթել «Նալբանդյանի ենթադրյալ կեղծանվան հետ»: Սակայն նրա և Չերնիշևսկու, ինչպես և նրա ու Նալբանդյանի միջև որևէ կապ գտնելու ուղղությամբ մեր գործադրած բոլոր ջանքերն ապարդյուն անցան: Համոզվելով, որ Ի. Ֆ. Բալանդինը ոչ մի կապ չունի հիշյալ մատնագրում նշված Բալանդինի հետ, ստիպված եղանք վերջինին փնտրել Չերնիշևսկու միջավայրում: Սակայն պարզվեց, որ Չերնիշևսկու ծանոթների մեջ Բալանդին ազգանունով գործիչ հայտնի չէ: Այլ ելք չունենալով, մենք շարունակեցինք որոնումները Չերնիշևսկու միջավայրի մարդկանց շրջանում: Եվ գտանք «Современник» հանդեսի հրատարակիչ Ի. Ի. Պանանի և կազմարար Վասիլի Իվանովիչ Բալանդինի միջև 1856 թ. դեկտեմբերի 15-ին կնքված և պատասխանատվությամբ պահպանված պայմանագիրը, որի առաջին կետով Բալանդինը պարտավորվում էր 1856 թ. դեկտեմբերի 1-ից մինչև 1858 թ. հունվարի 1-ը կազմել «Современник» հանդեսի բոլոր ամսատետրակները[1]:

Քանի որ մինչև օրս այդ պայմանագիրը որևէ ուշադրության չի արժանացել և բացահայտված չէ, որ «Современник»-ի ամսատետրակները հետագայում ևս կազմվել են Վ. Ի. Բալանդինի արհեստանոցում, մեզ ենթադրել է տալիս, որ թերևս, հենց նա է մատնագրում նշված Բալանդինը: Որովհետև Լենինգրադի արխիվներում և հրապարակված տեղեկագրքերում Վ. Ի. Բալանդինի հասցեն պարզել չհաջողվեց (որ մեզ հետաքրքրող հարցի տեսակետից սպառիչ նշանակություն կարող էր ունենալ)[2], մենք փորձեցինք պարզել, թե մատնագրում նշված տունը կազմարարական արհեստանոց ունենալու հնարավորություն ընձեռո՞ւմ էր արդյոք: Բարեբախտաբար այս ուղղությամբ մեր ձեռնարկած որոնումները հաջողությամբ պսակվեցին. եռահարկ, քարաշեն տուն էր այն, ընդարձակ սենյակներով, որտեղ հետագայում ևս եղել է արհեստանոց (Ленинградский ГИА, ф. 515, оп. 1, ед. хр. 2064):

Մեր առջև ծառացավ նոր հարց. եթե իսկապես մատնագրում նշված Բալանդինը Վասիլի Իվանովիչ Բալանդինն է, ապա ինչո՞ւ հենց այդ շրջանում է նա (1862 թ. հունիս—հուլիս) այդպես հաճախ այցելել Չերնիշևսկուն:

Այս հարցի վրա որոշ լույս է սփռում հետևյալ հանգամանքը. դեռևս 1862 թ. հունիսի 7-ին ներքին գործերի մինիստր Պ. Ա. Վալուևը ժանդարմների կորպուսի պետ Ա. Լ. Պոտապովին ուղղած նամակում հայտնել էր, թե հեղափոխական շարժման վերելքի դեմ մի շարք միջոցառումների հետ միասին, որոշված է նաև 8 ամսով դադարեցնել «Современник»-ի և «Русское слово»-ի հրատարակությունը (տե՛ս Процесс Н. Г. Чернышевского, Саратов, 1939 г., стр. 36):

Թեև այդ որոշումը դեռ չէր հրապարակվել, սակայն այդ մասին լուրը տարածվել էր քաղաքում: Դա պարզ երևում է այն դիմումից, որ «Отечественные записки» հանդեսի խմբագիր-հրատարակիչ Ա. Ա. Կրաևսկին և մայրաքաղաքի մի քանի հրատարակությունների աշխատակից Վ. Դ. Սկարյատինը 1862 թ. հունիսի 12-ին ուղղել էին ժողովրդական լուսավորության մինիստր Ա. Վ. Գոլովնինին: Հիշյալ դիմումում ասված է. «Քաղաքում տխուր լուրեր են պտտվում «Современник» և «Русское слово» հանդեսների արգելվելու մասին» («Звеня», Сборник материалов и документов по истории литературы, искусства и общественной мысли XIX века, т. VI, М.—Л., 1936, стр. 741): Հիրավի, այդ դիմումը դեռ նոր էր հասել ցարին, երբ մայրաքաղաքի գրաքննական կոմիտեն կարգադրություն ստացավ վերոհիշյալ հանդեսները 8 ամսով դադարեցնելու մասին:

«Современник» հանդեսի դադարեցումը Բալանդինի կազմարարական արհեստանոցը դնելու էր տնտեսական ծանր դրության մեջ: Ուստի, հասկանալի է Բալանդինի անհանգստությունը «Современник»-ի ճակատագրի համար և այդ կապակցությամբ՝ հենց այդ շրջանում նրա ամենօրյա այցելությունները Չերնիշևսկուն, որն այդ ժամանակ անձամբ էր ջանում կասեցնել հանդեսի դադարեցումը. (В. Г. Чернышевский, ПСС, т. XIV, стр. 454):

Վերն ասվածը որոշ հիմք է տալիս եզրակացնելու, որ 1862 թ. հունիսի 13-ից հուլիսի 7-ը Չերնիշևսկուն այցելած Բալանդինը, հենց «Современник»-ի կազմարար Վասիլի Իվանովիչ Բալանդինն էր:

**Հ. Ս. ԽԱՉՅԱՆ**

[1] ЦГАЛИ СССР, ф. 382, оп. 2, ед. хр. 4.

[2] *Պետերբուրգում հասցեների սեղան թեև վաղուց գոյություն ունի, սակայն արխիվը չի պահպանվել. ինչ վերաբերում է ժամանակին հրապարակված բազմաթիվ տեղեկագրքերին, ապա դրանք տեղեկություններ են պարունակում հիմնականում միայն բարձր դասին պատկանող մարդկանց մասին:*

# ԱՆՄՈՌԱՑՆԵՐԸ

## ՀԵՐՈՍԸ ՄԵԶ ՀԵՏ Է



Գրիգորին (Գրիգորյան) Անդրեյ Սեմյոնովիչ, ՍՄԿԿ անդամ 1932 թվականից: Կուստոմս № 3116408: Ռազմաճակատ է մեկնել 1941 թ. հուլիսի 4-ին, կամավոր:

Անձնական քարտը դեռևս պահպանվում է ՍՄԿԿ Լենինգրադի Կույբիշևյան շրջկոմում: Հիմա դա կարևոր փաստաթուղթ է: Դրանով հետաքրքրվում են կոմերիտականներ, նախկին աշխարհազորայիններ, ժուռնալիստներ... 1943 թվականից փորձ է արվում ամբողջացնելու հերոս մարտիկի կերպարը: Դա ոգեշնչում է նրանց, ովքեր ուզում են չմեղանչել պատմության առաջ: Եվ ահա ուզում ես հավատալ.

Ոչինչ չի՛ կորչում: Ոչ ոք չի՛ մոռացվում:

Այո՛, չի մոռացվում: Ամեն դիպված, ամեն մի խոսք, որ ասել է մինչև կառափնարան բարձրանալը, այսօր վերհիշվում, լրացնում է հերոսի դիմանկարը:

«Ես ազգությամբ հայ եմ, բայց Լենինգրադը և Հայրենիքը ինձ համար միևնույնն են»:

Պատերազմի վետերան Ն. Լիզունովը դա հիշում է: Այն ժամանակ՝ նա որպես առաջին քարտուղար, աշխատում էր ՍՄԿԿ Լենինգրադի Կույբիշևյան շրջկոմում:

Հիմա այդ խոսքերը դարձել են փաստաթուղթ. և պատմությունը, որ քմահաճ է հատկապես հերոսների ճակատագրի նկատմամբ, ջնջել այլևս չի կարող. դրանք գրվել են թղթի և քարերի վրա: Ն. Լիզունովը դարձյալ հիշում է.

«Երբ ինձ վիճակվի զոհվել, ապա կմեռնեմ որպես լենինգրադցի և իմ անունը չեմ խայտառակի»:

Եվ նա՝ Անդրեյ Սեմյոնովիչ Գրիգորինը դատապարտվեց մահվան՝ կախաղանի միջոցով: Հիշում են շատերը:

«...Վաղ առավոտ էր: Ավտոմատավորների հսկողության տակ շղթայակապ քաղեկին տարան Գատչինայի կենտրոնական հրապարակը: Հիտլերականների սպառնալիքի տակ այդտեղ էր հավաքվել քաղաքի բնակիչների հոծ բազմություն: Հրապարակի մի անկյունում, էսէսականների ուժեղ հսկողության տակ, նույնպես շղթայակապ ձեռքերով, կանգնած էին պատառոտված հագուստներով, տանջահար դեմքերով մարդիկ: Անդրեյը ճանաչեց իր զինվորներին: Նրանք յոթն էին»:

Անդրեյ...

Ովքեր նրա հետ կռվել են ուս-ուսի, խորին հարգանքով են վերհիշում այդ անունը:

267-րդ գնդացրային-հրետանային առանձին գումարտակի նախկին հրամանատար Ն. Դեմյանովը, կոմիսար Ֆ. Կազանցևը, պահեստի սպաներ Ն. Պրոխորովը, Վ. Կուտրևը, Վ. Գորսկին, Ս. Ստեփանյանը, նախկին կապավոր Ի. Մուրոմցևը և սանիտարական հրահանգիչ Մ. Մասլեննիկովան, որոնք գիտեն Ա. Ս. Գրիգորինին, ականատես են եղել մարտերում ցուցաբերած նրա սխրագործություններին, դեռևս 1963 թ. դիմել են ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությանը՝ խնդրել Ա. Ս. Գրիգորինին հետմահու Սովետական Միության հերոսի կոչում շնորհելու մասին:

Անդրեյ Սեմյոնովիչ Գրիգորինը ծնվել է Գանձակում, 1906-ին: Տասնմեկը չլրացած, ավազակները սպանում են հորը: Վրա հասավ երկրորդ հարվածը՝ վախճանվեց մայրը: Անօգնական, անմխիթար բազմանդամ ընտանիքը գոյատևեց ահեղ ժամանակներում: Հազարավոր ընչազուրկներ մեկնում էին քաղաքներ՝ ապրելու տենչով հուսավառված: Նրանց հետ Բաքու գնաց նաև Անդրեյը: Այստեղ կյանքի պատկերը բոլորովին այլ էր: Նավթաշտարակներ, նավթաշխարհ: Մեխանիկական մի արհեստանոցում Անդրեյ Գրիգորինն ստացավ պրոլետարական առաջին մկրտությունը: Սկսեց ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանք: Որպես ակտիվիստի՝ կոմունիստական երիտասարդական կազմակերպությունը 1924 թ. նրան գործուղեց Լենինգրադ: Անդրեյն ընդունվեց կոմունիստական համալսարան:

Իսկ 1926-ին Հայկ Սեմյոնովիչը **«Экран»** ամսագրում կարդում է. ԼԵՆԻՆԳՐԱԴԻ ԿՈՄԵՐԻՏԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹՅՈՒՆԸ...: Հոդվածն ստորագրել էր եղբայրը: Այնտեղ պատմվում էր, թե ինչպես մի խումբ կոմերիտականներ, նրանց հետ և Գրիգորինը, ոտքով կտրում անցնում են հինգ հազար վերստ տարածություն և ամենախուլ գյուղերում ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանք տանում: Այնուհետև, որպես գունավոր և հազվագյուտ մետաղների հայտաբերման արշավախմբի պետի տեղակալ, աշխատում էր Լենինգրադի «Սոյուզնիկելօլովոպրոեկտ» գիտահետազոտական ինստիտուտում: Արշավախմբի հետ թեթև ուսապարկով և կարճակոթ մուրճով նա շաբաթներով լինում էր երկրի արևելյան մարզերում, լեռներում ու քարափներին: Անդրեյը հայտաբերեց մի շարք հարուստ հանքավայրեր:

...Սկսվեց Մեծ հայրենականը: Գերմանաֆաշիստական գլխավոր հրամանատարությունը հսկայական ուժեր կենտրոնացրեց Լենինգրադի շուրջը:

Անդրեյ Սեմյոնովիչ Գրիգորինը պատերազմի հենց առաջին օրը ներկայացավ զինվորական կոմիսարիատ և խնդրեց կամավոր մեկնել գործող բանակ: Այն ժամանակ նա արդեն պահեստի քաղղեկ էր, իսկ երբ զինվորագրվեց, քաղղեկ նշանակվեց Լենինգրադի Կույբիշևյան շրջանի հիմնարկ-ձեռնարկությունների աշխատողներից կազմված աշխարհազորային գումարտակի առաջին վաշտում:

Մարտից առաջ Անդրեյ Սեմյոնովիչ Գրիգորինը գրեց եղբորը.

«Հասել է վճռական պահը: Ես, Հայկ, հիմա շնչում եմ միայն այնպիսի զգացմամբ, թե Լենինգրադի և լենինգրադցու պատիվը վստահված է հենց միայն ինձ: Վաղը պիտի գրոհի նետվենք. ես չեմ էլ մտածում, թե ինչ կլինի ինձ հետ, բայց մի բան մեզ՝ երկուսիս համար էլ պարզ է, այս մարտերում վճռվում է ոչ միայն Լենինգրադի բախտը»:

Հիմա էլ վաշտի քաղղեկին հիշում են. առնական, սև աչք-ունքով այդ երիտասարդը միանգամից իրեն դրսևորեց համարձակությամբ, հնարամտությամբ և վճռականությամբ: ՍՄԿԿ Լենինգրադի Կույբիշևյան շրջկոմի նախկին քարտուղար Ն. Լիզունովը գրում է.

«Անդրեյը մեզ մոտ եկավ թիկունքն անցնելու համար լրիվ նախապատրաստված: Կարճ զրույցից հետո նա խնդրեց Կույբիշևյան կուսկազմակերպությանը հաղորդել, որ ինքը և իր ընկերները Լենինգրադի համար մղվող մարտերում սրբորեն են պահում լենինգրադցիների պատիվը»:

Եվ դա մեկ անգամ ևս դրսևորվեց Պուլկովյան բարձունքներում մղված մարտերում: Օր ու գիշեր թշնամուն գետնին գամած էին պահում աշխարհազորայինները: Թեև թվով նվազ էին և տեխնիկապես ոչ լիովին զինված, այնուամենայնիվ, նրանց մարտական ոգին բարձր էր, գաղափարապես՝ միաձույլ: Այդտեղ, անշուշտ, ոչ քիչ վաստակ ուներ քաղղեկ Գրիգորինը:

«Ամեն տեսակ պատերազմում,— ասում է Վ. Ի. Լենինը,— հաղթանակը, վերջին հաշվով, պայմանավորվում է այն մասսաների ոգու վիճակով, որոնք ռազմի դաշտում թափում են իրենց արյունը»:

Եվ, վերջապես, այդ ոգին էր նրանց ստիպում անցնել խրամատից-խրամատ՝ ցեխի ու անձրևի միջով, հրացանին գամված շաբաթներ շարունակ կռթնել դիրքերում՝ անքուն և քաղցած: Հայրենիքը վտանգի մեջ էր, դա հասկանում էր նա, ով դեռ կենդանի էր ու կռվում էր: Շրջապատման ընթացքում հենց միայն սովից մահացան 632 հազար մարդ: Մահն էլ իմաստ ու նշանակություն էր ստանում այդ ծանր ժամանակներում: Եվ ոչ ոք իր կյանքի համար չէր ափսոսում, միայն թե կենդանի, կանգուն մնա հարազատ Լենինգրադը:



Անդրեյ Սեմյոնովիչ Գրիգորինը նույնպես չէր ափսոսում: Նրա կյանքը պատկանում էր Լենինգրադին: Այդպես է, հերոսների կյանքի ուղին միշտ էլ պայմանավորված է այն ժողովրդի գոյության վիճակով, որի գրկում առնանում է ինքը: Լենինգրադի զավակն իր վաշտն ամրացնում է նոր դիրքերում՝ Գատչինայի շրջակայքում: Երբ կրակը փոքր-ինչ դադարում է, և ամենքն ուզում են հանգստանալ, անհանգիստ է մնում միայն քաղղեկը, որ սողում է խրամատների միջով, մոտենում զինվորներին.

— Փամփուշտները հերիքո՞ւմ են,— դիմում է նրանց,— հո չե՞ք վախենում...

Իսկ այդ արդեն նկատվում է նրանց աչքերից: Լինում են պահեր, և ոչ քիչ, որ Անդրեյ Գրիգորինը համառոտ, բայց համոզիչ զրույց է ունենում յուրաքանչյուրի հետ, քաջալերում: Իսկ վերջում բոլորը կամացուկ շնորհակալություն են հայտնում նրան:

Կատաղի մարտերը նորից են բռնկվում: Այդ օրերի մասին ահա թե ինչ է գրում «Բանվորական Կիրովաբադ» թերթը.

«...Արևը դեռ նոր էր բարձրացել և դեռ չէր ցրվել մշուշը, երբ երկնքում երևացին ինքնաթիռները: Դիշանգղները պտույտ գործելով՝ սկսեցին մահվան բեռները թափել խրամատների վրա: Ինքնաթիռների հեռանալուց հետո վաշտի տեղանքում սկսեցին մեկը մյուսի ետևից պայթել արկերն ու ականները: Քիչ հետո առջևում երևացին գորշ տարազով մարդիկ, որոնք ավտոմատներից կրակելով, վայրենի աղաղակներով մոտենում էին մերոնց: Թշնամին էր: Գերմանացիներին աշխարհազորայինները դիմավորեցին ավտոմատների և գնդացիրների հուժկու կրակով: Չկարողանալով պատռել կրակե պատնեշը, թշնամին մեծ զոհեր տալով՝ դիմեց փախուստի»:

Եվ այսպես՝ մի քանի անգամ թշնամուն ետ է շպրտում այն վաշտը, որի քաղղեկն էր Անդրեյ Սեմյոնովիչ Գրիգորինը:

Ռազմաճակատում դրությունը վատանում է: Թիկունքից թշնամուն խփելու նպատակով ստեղծվում է հատուկ ջոկատ, ուր ընդգրկվում են խիզախ, նվիրված մարդիկ: Ջոկատը միաժամանակ պետք է հայտնաբերեր թշնամու կրակակետերը, ստեղծեր խուճապի պահեր: Ամենահամարձակների ջոկատի հրամանատար է նշանակվում Անդրեյ Սեմյոնովիչ Գրիգորինը:

4-րդ վաշտի նախկին հրամանատար Ն. Պրոխորովը պատմում է.

«Եվ մենք չսխալվեցինք՝ Անդրեյին տալով այդ պատասխանատու առաջադրանքը: Ինչպես շուտով պարզվեց, նրա ջոկատը ո՛չ միայն սրբորեն իրագործեց, այլև պայթեցրեց մի քանի զինամթերքի պահեստ, դիմահար մարտի բռնըվեց հիտլերականների հետ, շարքից հանեց թշնամու բեռնատար ավտոմեքենաներ ու տեխնիկա...»:

Ռեյդերը կրկնվում են: Եվ ամեն անգամ ջոկատը վերադառնում է հարուստ զինամթերքով, ավտոմատներով ու նռնակներով, կարևոր փաստաթղթերով:

Անձնական զրույցի ժամանակ 267-րդ վաշտի նախկին կոմիսար Ֆ. Ի. Կազանցևը պատմեց հետևյալը.

«Օգոստոսյան մի մռայլ գիշեր ինձ մոտ՝ շտապ եկավ Անդրեյ Սեմյոնովիչը: Ես նրան ասացի, որ հիտլերականները սովետական մարտիկի համազգեստով մտել են գյուղ և սպառնում են գումարտակի աջ թևին: Նա անմիջապես հասկացավ ինձ և խոստացավ կտրուկ միջոցների դիմել: Ճիշտն ասած, ես չգիտեի, թե նա ինչ միջոցներով կամ ինչպես պետք է իր մտադրությունն իրականացնի, բայց մի բան ինձ համար պարզ էր. ամենավճռական պահին նրա հնարամտությունները միշտ էլ կարևոր դեր են կատարել: Եվ ահա լուսադեմին, օրը դեռ լրիվ չբացված, նա դարձյալ ներկայանում է ինձ ու զեկուցում. «Առաջադրանքը կատարված է: Գերի է վերցված թշնամու 150 զինվոր ու սպա»: Դա ուղղակի անհավատալի էր: 35 հոգուց բաղկացած ջոկը կարճ ճանապարհով նա տանում է գյուղ և հանկարծակիի բերում թշնամուն: Ահա թե ինչու էինք հավատում նրան»:

Հավատում...

Սովետական մարտիկի նկատմամբ ունեցած հենց այդ հավատն է եղել մեր կուսակցության ու կառավարության ամենաճշմարիտ հենարանը: Վ. Ի. Լենինը բնորոշում է.

«Երբեք չեն հաղթի այն ժողովրդին, որի մեջ բանվորներն ու գյուղացիներն իրենց մեծամասնությամբ դիմացել, զգացել և տեսել են, որ իրենք պաշտպանում են իրենց սովետական իշխանությունը՝ աշխատավորների իշխանությունը...»:

Անդրեյ Սեմյոնովիչ Գրիգորինի ջոկատը գումարտակի աչքն էր. նա տեսնում, հետախուզում և անմիջապես տեղեկացնում էր, թե ինչ է կատարվում թշնամու զորաբաժիններում:

Հենվելով Անդրեյ Գրիգորինի հաղորդած տվյալների վրա, 267-րդ գումարտակը հաճախ կործանիչ հարվածներ էր հասցնում թշնամուն: Բայց դեռ հաղթանակի ցնծությունը շատ հեռու էր: Դեռևս պահանջվում էին շատ երկար ու ձիգ տարիներ: Հրաման ստացվեց զորամասերը Գատչինայից ետ քաշել և ամրանալ նոր դիրքերում: 4-րդ զորամասի նահանջի ճանապարհը կրակով պաշտպանելու առաջադրանքը տրվեց Գրիգորինի ջոկատին:

Այդ արդեն մահու և կենաց կռիվ էր: Երկու օր շարունակ կատաղի մարտեր էին մղվում

Գատչինայի հրապարակում, փողոցներում։ Հոկտեմբերի 25-ի անվան պողոտայի և Սովետական փողոցի անկյունի քառաշեն տնից, որտեղ դիրքավորվել էր Գրիգորինի ջոկատը, դուրս էին թափվում կրակի խրձեր։ Այժմ թշնամին նրանց կողմն է ուղարկում տանկեր, մեծաքանակ զորք։ Մարտը դառնում է անհավասար։ Երբ առաջադրանքն արդեն կատարված էր, Գրիգորինը հրահանգում է շարքերը նոսրացած, փոքրաթիվ ջոկատին, կռվելով քաշվել դեպի անտառը։ Գրեթե բոլորը վիրավորված էին, հոգնատանջ, իսկ վերջին օրը՝ լրիվ քաղցած։ Հիտլերականները կրնկակոխ հետևում են նրանց։ Այստեղ, մի գետնախորշի շրջակայքում, տեղի է ունենում վերջնական ընդհարումը։ Անդրեյ Սեմյոնովիչը արկի պայթյունից խլանում և վիրավորվում է կրծքից։ Իսկ կրակելու այլևս ոչ մի փամփուշտ չի մնում։ Եվ ֆաշիստները շրջապատում են նրանց։

Սա լեգենդ չէ, բայց որքա՜ն նման է լեգենդի։ Դահճի բոլոր դաժանությունները լինում են նույնը՝ ծեծ, տանջահարություն, կախաղան։ Գատչինայի հրապարակում, ամբոխի առաջ 1941 թ. սեպտեմբերի մի մռայլ օր մահվան օղակը հագցնում են Անդրեյ Սեմյոնովիչ Գրիգորինի պարանոցին։

Հետագայում՝ դուրս պրծնելով գերմանացիների ձեռքից, այդ դաժան պահի մասին ահա թե ինչ էր պատմում գումարտակի սանիտարուհին՝ Կլավդիա Ֆյոդորովնան.

«Անդրեյը հպարտորեն դարձրեց դեմքը կախաղանից. հաջորդ սյունի մոտ կանգնած էին կոմերիտական Վասիլի Ալեքսանդրովիչ Սմելովը, Վալենտին Իվանովիչ Պետրուշչևը և էլի մի քանի հոգի։ Այլևս մխիթարիչ խոսք չէր մնում նրանց ասելու։ Նա իր խոսքն ուղղում է ժողովրդին.

— Թշնամին երբեք չի տեսնի Լենինգրադը...»։

Կլավդիա Ֆյոդորովնան հուզվում է։ Նա չի կարողանում ամբողջացնել հերոս մարտիկի ասած վերջին խոսքերը։

Եվ մի՞թե կարևոր է դա. կարևորը սովետական խիզախ մարդու հոգու անընկճելիության և անսահման նվիրվածության օրինակն է, որ արդեն պատմություն է դառնում, անցնում շրթից շուրթ։

1941 թ. հուլիսի 24-ի «**Правда**»-ն գրել է.

«Պետք է պարզորեն պատկերացնել ու հավատալ, որ հաղթանակը կախված է հենց մեզանից՝ մեր անձնազոհությունից...»։

Անդրեյ Սեմյոնովիչ Գրիգորինը գնաց կուսակցության ցույց տված ուղիով. ոչ մի պահ չսասանեց, չդողաց կյանքի համար։ Իսկ դա գնահատեց ժողովուրդը՝ հերոս զավակի անունը դարձնելով խիզախության ու հավատարմության դրոշ։ Գնահատեց կառավարությունը՝ նրան մի քանի անգամ արժանացնելով բարձր պարգևի։ Լենինգրադում հերոսի անունով այսօր կոչվում է մի փողոց, պիոներական ջոկատներ։ Այսօր նրա հերոսական կենսագրությունն ամբողջացվում և գրանցվում է հայ քաջ մարտիկների հերոսամատյանում։

Շ. Ս. ԵՐԻՑՅԱՆ





## ՊԱՐԳԵՎԱՐԺԱՆ ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆ*

*ՍՍՀՄ-ում և արտասահմանյան երկրներում վերջին տարիներս լայն աշխատանք է ծավալվել բժշկական աշխարհագրության բնագավառում, որն ունի գիտակիրառական խոշոր նշանակություն. այն ցույց է տալիս տվյալ երկրի, բնակավայրի սոցիալ-տնտեսական և բնական պայմանների ազդեցությունը բնակչության առողջության վրա։*




*ՍՍՀՄ-ում այդպիսի հետազոտությունները, բացի վերոհիշյալից, նպաստում են նաև երկրի վարչա-տնտեսական կոնկրետ շրջանների առողջապահական գործի առավել արդյունավետ կազմակերպմանը։*

*«Հայաստան» հրատարակչությունը ռուսաց լեզվով լույս է ընծայել բժշկա-աշխարհագրական մի հետաքրքրական հետազոտություն՝ Վեդու շրջանի Արմաշ գյուղի բժշկական տեղամասի վարիչ, բժշկական գիտությունների թեկնածու Ա. Պ. Հայրիյանի Հայաստանի գյուղական առողջապահության ատլասը, որը ցույց է տալիս գյուղական առողջապահության հիմնադրումը և դրա հետագա զարգացումը Սովետական Հայաստանում։*

*Նման ատլաս Միության մեջ հրատարակվում է առաջին անգամ։*

*Մինչև հրատարակվելը, ձեռագիր վիճակում, այն բազմիցս քննարկվել է ինչպես Հայաստանի, այնպես էլ Միության այլ քաղաքների ինստիտուտներում ու խորհրդակցություններում (Մոսկվա, Լենինգրադ, Ռիգա, Ալմա-Աթա, Իրկուտսկ, Կազան) և արժանացել բարձր գնահատականի։ Դոցենտ Ե. Ի. Իգնատևը Իրկուտսկից գրում է. «Իր բովանդակությամբ և արտահայտման ձևով Ա. Պ. Հայրիյանի աշխատությունն ինքնատիպ է և նմանը չունի հայրենական գրականության մեջ»։*

Ատլասի *մասին դրական կարծիք են հայտնել Ն. Ա. Սեմաշկոյի անվան սոցիալական հիգիենայի և առողջապահության կազմակերպման և Գամալեայի անվան էպիդեմիոլոգիայի ինստիտուտները, ՍՍՀՄ առողջապահության մինիստրության գլխավոր մասնագետները և խորհուրդ են տվել նման աշխատանք կատարել նաև մյուս հանրապետություններում։ Բարձր գնահատելով* Հայաստանի գյուղական առողջապահության ատլասը, *ՍՍՀՄ աշխարհագրական ընկերությունն այն ներկայացրեց 1968 թ. Դե-*

* А. П. АЙРИЯН — **Атлас сельского здравоохранения Армении, Е., Айастан,** 1967, 158 стр.

լիում կայացած միջազգային աշխարհագրական 21-րդ կոնգրեսին։

Հայրիյանի աշխատությունը պարունակում է 75 քարտեզ, որոնք ցույց են տալիս գյուղական առողջապահության բոլոր բնագավառների զարգացման ուղին։ Հենվելով արխիվային, փաստական տվյալների վրա՝ հեղինակը հարուստ նյութ է տալիս գյուղական բնակչության բժշկական օգնության կազմակերպման մասին։ Այդ արժեքավոր տվյալները գրքում ներկայացված են հետևյալ ձևով. Ատլասն սկսվում է նկարագրական մասով, որտեղ հեղինակը համառոտակի ծանոթացնում է նախասովետական Հայաստանի գյուղական առողջապահության խիստ վատթար վիճակին, փաստական նյութերի ֆոտոպատճեններով ցույց տալիս 20-ական թվականների Հայաստանը, որին սպառնում էր ֆիզիկական բնաջնջման ահավոր վտանգը։ Բժշկական օգնությունը և առողջապահությունը բաժնում մանրամասն տվյալներ են բերված առողջապահության ասպարեզում կատարված առաջին քայլերի, դրա հետագա զարգացման վերաբերյալ։ Առաջին հիվանդանոցը՝ 5 մահճակալով, բացվել է Ղամարլու (այժմ՝ Արտաշատ քաղաք) գյուղում, 1885 թ.։ 1904 թ. Երևանի նահանգը բաժանվել է գյուղական բժշկական 14 տեղամասի, որոնցից յուրաքանչյուրն ընդգրկել է միջին հաշվով 93 գյուղ՝ 57760 բնակչով։ 1910 թ. ընդամենը 84 մահճակալ ունեցող այդ հիվանդանոցները զուրկ էին տնտեսական ու տեխնիկական նվազագույն հնարավորություններից, որի պատճառով, չնայած հիվանդանոցային օգնության կարիքը խիստ մեծ էր, այդ մահճակալները հաճախ ազատ էին լինում։ Այսպես՝ Ղամարլուի տեղամասում, որն ուներ 25 մահճակալանոց հիվանդանոց, 1919 թ. արձանագրված 14389 հիվանդից հիվանդանոցային օգնություն են ստացել 193 հոգի։ Շատ վատ էր կազմակերպված դեղորայքային օգնությունը. չկային մոր ու մանկան պաշտպանության, սանիտարահակաէպիդեմիոլոգիական հիմնարկներ, գործում էր միայն էջմիածնի դեզինֆեկցիոն ջոկատը։ Բնակչության կուլտուր-կենցաղային և տնտեսական վատթար պայմաններն ու սանիտարա-հակաէպիդեմիկ միջոցառումների բացակայությունը պատճառ էին դառնում տարափոխիկ շատ հիվանդությունների (որովայնային և բծավոր, հետադարձ տիֆերը, խոլերան, բնական ծաղիկը), մեծ չափով տարածված էին՝ մալարիան, տրախոման, քոսը, սիֆիլիսը, տուբերկուլյոզը։ Հիվանդություններն ու սովը բնաջնջում էին երկիրը։ 1920 թ. Ղամարլուի տեղամասում արձանագրված են 8380 մահացություն և միայն 820 ծնունդ, Համամլուի տեղամասում 1919 թ., համապատասխանաբար՝ 1263 և 556, Ելենովկայում՝ 337 ու 288 և այլն։

Այնուհետև հեղինակը պատմում է վերածնված Հայաստանի ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառների զարգացման մասին, փաստական հարուստ տվյալներով ցույց տալիս, թե ինչպես ցարական Ռուսաստանի նախկին գաղութը պատմական շատ կարճ ժամանակամիջոցում դարձել է զարգացած արդյունաբերության, մեքենայացված գյուղատնտեսության, առաջավոր գիտության ու մշակույթի երկիր, սովերեն սոցիալիստական պետություն։

Այս բաժնում առանձին տեղ է հատկացված հանրապետության գյուղատնտեսության զարգացմանը վերաբերող պատմական փաստերին, արտացոլված են նաև ժողովրդական առողջապահության զարգացման պատմական շրջանները։ Գրախոսվող աշխատությունը հարուստ փաստական նյութ է պարունակում գյուղական բնակչության ամբուլատոր-պոլիկլինիկական, մահճակալային, դեղորայքային, սանիտարահակաէպիդեմիկ օգնության, մոր ու մանկան պաշտպանության կազմակերպման և շատ այլ հարցերի մասին, ցույց են տրված այդ բնագավառի՝ 1920—1965 թթ. հաջողությունները. 1920 թ. գյուղական 10000 բնակչին հասնում էին 4,7 մահճակալ, 1940 թ.՝ 7,6, 1950 թ.՝ 18, իսկ 1965 թ.՝ 53,6։ Գյուղական բժշկական տեղամասերի թիվը 1920 թ. 14-ից 1965 թ. հասել է 141-ի, մահճակալների թիվը գյուղական հիվանդանոցներում համապատասխանաբար 310-ից՝ 3060-ի։ Եթե 1920 թ. Հայաստանի գյուղական վայրերում աշխատում էին միայն 30 բժիշկ, 1965 թ. նրանց թիվը հասավ 1060-ի։ 1920 թ. Հայաստանի գյուղական վայրերում կային 15 հիվանդանոց, 5 բժշկական և 13 բուժակային կետ։ 1965 թ. հիվանդանոցների թիվը հասավ 214-ի, իսկ ամբուլատոր-պոլիկլինիկական հիմնարկներինը՝ 240-ի։ Սովետական իշխանության տարիներին կազմակերպվել են նաև նոր տիպի բժշկական հիմնարկներ՝ տրոպիկական, սանիտարա-հակաէպիդեմիոլոգիական կայաններ, դիսպանսերային կետեր և այլն, որոնք զգալի գործ են կատարել գյուղական բնակչության աշխատանքային, կենցաղային պայմանների բարելավման, հիվանդությունների կանխման ուղղությամբ։ Ատլաս-ում տվյալներ են բերված նաև հանրապետության բնակչության դեմոգրաֆիկ ցուցանիշների մասին, որից տեղեկանում ենք՝ նվազել է մանկական և ընդհանուր մահացությունը, կյանքի միջին տևողությունը 35—40-ից հասել է 70—72 տարվա։ Այստեղ տվյալներ կան նաև հանրապետության գյուղական բնակչության հիվանդացության և մահվան հիմնական պատճառների մասին։

Հենվելով փաստական անհերքելի տվյալների վրա՝ հեղինակը բացահայտում է բնակչության սոցիալ-տնտեսական վիճակում տեղի ունեցած դրական փոփոխությունների բարերար ազդեցությունը ժողովրդի առողջության վրա։ Այս բաժնում, վերլուծելով գյուղական բնակչությանը ցույց տրվող բժշկական օգնության մի շարք կարևոր հարցեր, հեղինակը դատողություններ է անում նաև այդ օգնության կազմակերպչական ձևերի ու մեթոդների հետագա կատարելագործման մասին, որն ունի գործնական մեծ նշանակություն։

Ատլաս-ի երկրորդ մասում զետեղված քարտեզները, ցույց տալով հանրապետության և նրա 33 գյուղական շրջանների առողջապահության առանձնահատկությունները՝ միաժամանակ բացահայտում են բնակչության բժշկական օգնության բնագավառում եղած թերությունները։ Քարտեզների հակադրման մեթոդով (1920 և 1965 թթ.) հեղինակը ո՛չ միայն վերլուծել է Հայաստանի գյուղական առողջապահության արդի վիճակը, այլև որոշակի եզրակացությունների հանգել դրա հետագա զարգացման հեռանկարների մասին։

Նման աշխատանք սովորաբար կատարում են հեղինակային կոլեկտիվները։ Միայնակ ձեռնարկելով նման հանրօգուտ գործի՝ հեղինակին օգնել են առողջապահության կազմակերպչի իր հարուստ փորձն ու գիտելիքները, ինչպես և՝ անշահախնդիր նվիրվածությունը սիրած աշխատանքին։ Հուսով ենք, որ բժշկական գիտությունների թեկնածու Ա. Պ. Հայրիյանի աշխատությունը ջերմորեն կընդունվի հանրապետության բժշկական հասարակայնության կողմից։

Նշելով աշխատության մի շարք կարևոր ու արժեքավոր կողմեր, ցանկանում ենք անել նաև մի քանի դիտողություններ։ Մեր կարծիքով, ճիշտ կլիներ աշխատությունն սկսել բուժպրոֆիլակտիկ գործի դրվածքի նկարագրությամբ, ապա անցնել սան-լուսավորական միջոցառումներին։ Աշխատության մեջ բերված արխիվային նյութերի ֆոտոպատճենները պետք է ունենային լրացման ժամկետ և ստորագրություն։ Գրքում տեղ-տեղ ճիշտ չեն ձևակերպված, վերլուծված նկարագրական մասի ցուցանիշները (էջ 42). այսպես՝ ծնելության ցուցանիշի անկումը վերջին տարիներին պայմանավորված չէ միայն պատերազմով, ինչպես գրում է հեղինակը. այն արդյունք է նաև ծնելության ներընտանեկան կարգավորման, ամուսնության միջին տարիքի մեծացման, չամուսնացած կանանց տեսակարար կշռի ավելացման, հասարակական կյանքին նրանց առավել մասնակցության։ Վիճելի է նաև հեղինակի այն եզրակացությունը, թե ապագայում կբարձրանա ծնելության մակարդակը։ Աշխատության մեջ տողատակում երբեմն նշված չեն բերված տվյալների աղբյուրները։

Քանի որ գրախոսվող աշխատությունը նվիրված է Հայաստանի առողջապահությանը, կարծում ենք, լավ կլիներ այն նախ հրատարակել հայերեն։ Բայց, քանի որ այն արդեն հրատարակվել է ռուսերեն, դրա հայերեն թարգմանությունն առավել անհրաժեշտ է։ Ավելի լավ կլիներ, եթե բուժ-պրոֆիլակտիկ հիմնարկների ցանցը ներկայացնող քարտեզները լրացված լինեին հանրապետության ֆիզիկո-աշխարհագրական քարտեզների ֆոնի վրա։

Աշխատության մեջ կան նաև մասնակի վրիպումներ. այսպես՝ 22-րդ էջում գրված է, որ 1920 թ. մինչև սովետականացումը կային բուժակային 14 կետ, իսկ 55-րդ էջի քարտոսխեմայում՝ 13 է և այլն։

Նշված թերությունները, անշուշտ, չեն ստվերում Ա. Պ. Հայրիյանի աշխատության արժանիքները. աշխատություն, որն անքուն գիշերների, անխոնջ ուսումնասիրությունների արգասիք է. «Հայաստան» հրատարակչության գիտամասսայական գրականության բաժինն այն հրատարակել է մեծ խնամքով, տեխնիկական բարձր մակարդակով։ Գիտակիրառական այս ձեռնարկը, որպես առաջինը ՍՍՀՄ-ում, արժանացել է ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսի Ոսկե մեդալին։

Ատլաս-ն անհրաժեշտ է ո՛չ միայն Հայաստանի բուժաշխատողների համար, այլև այն կարող են արդյունավետ օգտագործել տեղական պլանային օրգանները, իսկ աշխատության նյութերը հիմք կհանդիսանան Հայկական ՍՍՀ բժշկա-աշխարհագրական ատլասի համար։

ՇՈՂԱԿԱԹ ՊԱՊՈՅԱՆ
Երևանի բժշկական ինստիտուտի
սոցիալական հիգիենայի և առողջապահության կազմակերպման ամբիոնի դոցենտ

ՀԱՐԳԵԼԻ ԸՆԹԵՐՑՈՂ

**Բ Ա Ց Վ Ա Ծ Է**

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ

# «Լ Ե Ն Ի Ն Յ Ա Ն   Ո Ւ Ղ Ի Ո Վ»

ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

*1969 Թ. ՀՈՒԼԻՍ-ԴԵԿՏԵՄԲԵՐ ԱՄԻՍՆԵՐԻ*

*ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ*

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ԱՐԺԵՔԸ**

Վեց ամիսը— 1 ռ. 50 կ.

Երեք ամիսը— 75 կ.

*ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆՆ ԸՆԴՈՒՆՎՈՒՄ Է՝*

*կապի գրասենյակներում, բաժանմունքներում, «Սոյուզպեչատ»-ի քաղաքային բաժիններում, գործարաններում, ֆաբրիկաներում, հիմնարկ-ձեռնարկություններում, ուսումնական հաստատություններում, սովխոզներում, կոլտնտեսություններում՝ մամուլի հասարակական լիազորների միջոցով։*

*«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»*



ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԵՂԻԱԶԱՐՅԱՆ Ա. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Ս. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.։

Адрес редакции. — Ереван-33 Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.։ Հեռախոսներ՝ պատ. քարտուղար՝ 57—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 57—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 57—19—80, գրական աշխատող՝ 57—60—64։

*ՎՖ 03221 Պատվեր 719 Թղթի չափսը 70×108 1/16։ Տիրաժ 11.200 Գինը 25 կոպ.։*

*Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության՝ 16/VI 1969 թ.։*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ավ. Իսահակյանի փող. № 28։*



# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ՄԱՐՔՍ Կ. և ԷՆԳԵԼՍ Ֆ.— *Երկեր։ Երկրորդ հրատ., հատ.* **46**, *մասն I, Մ., Քաղհրատ, 1968, 559 էջ։*

*Հատորը պարունակում է հեղինակների 1857—1859 թթ. տնտեսագիտական աշխատությունների մի մասը։*

Այստեղ ապրել և աշխատել է Լենինը *(Ալբոմ)։ Մ., Քաղհրատ, 1968, 95 էջ։ Ալբոմն է այն վայրերի, ուր ապրել ու գործել է Լենինը։*

ՏԱՌԻԲԻՆ Ռ. Ա.— Լենինը Ռուսաստանի հեղափոխական սոցիալ-դեմոկրատների նախորդ գաղափարախոսների և գաղափարախոսությունների մասին։ *Ուլյանովսկ, 1968, 134 էջ։*

Քաղաքատնտեսության քրեստոմատիա, *Մ., Քաղհրատ, 1969, 240 էջ։ Կազմել են Մ. Մ. Ազարովան և Ն. Վ. Բաուտինան՝ մարքսիզմ-լենինիզմի ունկնդիրների համար։*

Կուսակցության և կառավարության որոշումները տնտեսական հարցերի վերաբերյալ։ *Հատ. 6, 1966—1968 թթ., Մ., Քաղհրատ, 1968, 816 էջ։ Սովետական պետության ստեղծման 50-ամյակի կապակցությամբ ստեղծված ժողովածուում զետեղված են կուսակցության և կառավարության այդ շրջանի որոշումները ՍՍՀՄ տնտեսական զարգացման վերաբերյալ։*

ՍՍՀՄ արտաքին քաղաքականության փաստաթղթեր։ *Հատ. 14, (1931 թ. հունվարի 1-ից դեկտեմբերի 31-ը)։ Մ., Քաղհրատ, 1968, 872 էջ։*

Կոմերիտական սերունդ։ *Մ.,* «Детская литература» *հրատ., 1968, 463 էջ։*

*Գրքում զետեղված են հեղափոխական իրադարձություններին մասնակցած հին կոմերիտականների և հետագա առաջընթացի մասնակիցների հուշերն ու պատումները։ Տպագրված են նաև որոշումներ, թռուցիկներ, կոչեր և այլ նյութեր։*

ԱՖԱՆԱՍԵՎ Վ. Գ.— *Գիտական կոմունիզմ։ Հանրամատչելի ակնարկ։ Մ., Քաղհրատ, 1968, 400 էջ։*

*Աշխատության մեջ հեղինակը շարադրել է գիտական կոմունիզմի հիմունքների, դրանց ծագման ու զարգացման ընթացքը և այլ հարցեր։*

ԲՈՒԺԵՆԿՈ Ա. Մ.— Սև գիրք իմպերիալիզմի ճայտնագործությունների մասին։ *Մ. Զինհրատ, 1968, 232 էջ։*

*Ներկա մենագրության մեջ տարբեր փաստական նյութերի, նկարների հիման վրա հեղինակը մերկացնում է իմպերիալիզմի հակասոցիալիստական և, հատկապես, հակասովետական քաղաքականությունը։*

ԲՈՒԻՒԼԱՅԿԻ Ֆ. Մ.— Մաոիզմը սպառնալիք է սոցիալիզմին՝ Չինաստանում։ *Մ., Քաղհրատ, 1968, 192 էջ։*

*Փաստերի և իրադարձությունների հիման վրա հեղինակը մերկացնում է Մաո Ցզեդունի խմբի հակասոցիալիստական քաղաքականությունը։*

ԱԼԱՎԵՐԴՅԱՆ Ս. Ա.— Բանվոր դասակարգի դերը Հայաստանում կոլտնտեսային կարգի հաղթանակի գործում։ *(1927—1935)։ Եր., ԳԱ հրատ., 1969, 208 էջ։*

*Արխիվային վավերագրերի և գրականության միջոցով հեղինակը բացահայտել է բանվոր դասակարգի ղեկավար դերը Հայաստանում կոլտնտեսությունների կազմակերպման ու ամրապնդման գործում։*

ԿԱՐՃԻԿՅԱՆ Հ. Խ.— Հայկական ՍՍՀ գյուղատնտեսության զարգացման տեմպերը և կառուցվածքային փոփոխությունները *(ռուսերեն)։ Եր., «Հայաստան» հրատ., 1969, 245 էջ։*

*Գրքում ներկայացված է Հայաստանի գյուղատնտեսության զարգացման, նրա մասնագիտացման և տեղաբաշխման արդի վիճակը։*

ՋԱՀՈՒԿՅԱՆ Գ. Բ.— Հայոց լեզվի զարգացումը և կառուցվածքը *(համառոտ ուրվագիծ)։ Եր., «Միտք» հրատ., 1969, 289 էջ։*

*Գիրքը համառոտ ուրվագիծն է հայոց լեզվի զարգացման պատմության և ժամանակակից արևելահայ գրական հայերենի կառուցվածքի նկարագրությունը։*

ԳԻՆԸ 25 Կ. 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՀՐԱՇՔ ՋԵՐՄԱՉԱՓԸ

*Լենինգրադի էլեկտրատեխնիկական ինստիտուտի պրոֆեսոր, տեխնիկական գիտությունների դոկտոր Բ. Պ. Կոզիրյովի ստեղծած ջերմաչափով կարելի է չափել մեծ հեռավորության վրա գտնվող ուզած առարկայի ջերմությունը, ինչպես և վայրկենապես՝ մարդու մարմնի որևէ մասի ջերմությունը, որն անհրաժեշտ է հիվանդության անսխալ ախտորոշման համար։*

*Նույն ինստիտուտի գիտնականներն ստեղծել են նաև ակտինոչափական սարքեր, ջրի և ցամաքի մակերեսի բնական ռադիացիայի աստիճանը որոշելու համար։ Այդ ջերմաչափերն օգտագործվում են նաև նավաշինության մեջ. դրանց օգնությամբ որոշվում է նավի տախտակները ներկելու լավագույն վարիանտը։ Շոգ ամիսներում նավի վրա է ընկնում արևի կիզիչ ճառագայթների անընդհատ հոսքը։ Ինչպե՞ս վանել այն։ Սպիտակ գույնը վատ է կլանում ջերմային էներգիան և բացասաբար է անդրադառնում նավաստիների տեսողության վրա։ Այս հանգամանքն անհանգստացնում է մեր գիտնականներին, և նրանք աշխատում են գերզգայուն ջերմաչափի օգնությամբ լուծել այդ կարևոր խնդիրը։*

## ԱՐԾԱԹՅԱ ԹՌՉՈՒՆՆԵՐԸ

*Մոսկովյան օդանավակայանից 46 երկրներ են թռչում սովետական տարբերանշաններով արծաթյա թռչունները։ Նրանք կտրում-անցնում են 2500 օդուղիներ, կամրջելով 3500 քաղաքներ ու բնակելի կետեր։*

*Հանրահայտ* ИЛ—*18,* ТУ—*104 և* АН—*10-ին ավելացավ նոր՝* ТУ—*154 ինքնաթիռը։ Նրա առաջին տարբերակն ունի երկկոնտուր երեք տուրբոռեակտիվ շարժիչներ, որոնք տեղադրված են ֆյուզելյաժի պոչամասում. դրանց շնորհիվ պակասում են ուղևորների սալոնների աղմուկն ու ցնցումը։ Ինքնաթիռի սալոնները սահմանված են 160 ուղևորի համար։ Նախատեսվում է հետագայում ուղևորների թիվը հասցնել 220-ի։*

*Ինքնաթիռի համար սարսափելի չեն օդերևութաբանական ամենաբարդ պայմաններն անգամ։ Այն կարող է թռչել 11 հազար մետր բարձրությամբ, ժամում 850—920 կիլոմետր արագությամբ։*

## Ի՞ՆՉ ԱՆԵԼ ԱՂԲԸ

*Աշխարհի սոցիոլոգներին ավելի ու ավելի է հուզում խմելու ջրի պակասելու խնդիրը։ Բայց մի քանի գիտնականներ գտնում են, որ ծարավը ռեալ աղետ դառնալուց շատ առաջ մարդկությունը կբախվի մի ոչ պակաս լուրջ վտանգի— աղբի, թափոնների մեջ խեղդվելու վտանգին։ Անհրաժեշտ է գտնել այդ թափոնների օգտագործման էժան ու արդյունավետ միջոցներ։ Ճապոնական գյուտարարներից մեկն առաջարկել է այնպիսի մի սարքի կոնստրուկցիա, որը 1/10-ով փոքրացնում է աղբի և թափոնների նախնական ծավալը։ Աղբը մամլելուց ստացված «աղյուսը» պետք է զետեղել ցեմենտե կեղևի մեջ. այն կարելի է օգտագործել հեղեղատները, փոսորակները, ճահիճները լցնելու համար, կամ ուղղակի գցել օվկիանոսը։ Մամլելու համար օգտագործվող բարձր ջերմաստիճանը և թթվածնի բացակայությունը ոչնչացնում են բացիլները։ Նախատեսված է մոտիկ ապագայում օրական 300 տոննա թափոնի մամլունակությամբ սարքեր կառուցել Ճապոնիայի երեք խոշոր քաղաքներում։*

## ԱՌՈՂՋԱՐԱՆ ՀԱՆՔՈՒՄ

*Լեհական Վելիչկա աղահանքը միակն է աշխարհում, որ արդեն 1000 տարի անընդմեջ շահագործվում է։ 1958 թ. այստեղ սկսվեցին փորձարկումները, պարզելու համար ստորերկրյա մթնոլորտի ազդեցությունը մարդու օրգանիզմի վրա։ Ուսումնասիրությունները ցույց տվին, որ բրոնխային ասթմայի, հիպերտոնիկ, սրտային և այլ ալերգիկ հիվանդությունների դեպքում բարերար ազդեցություն են ունենում Վելիչկայի ստորերկրյա այրերն ու դրանց միկրոկլիման։*

*Վելիչկայում կառուցվեց աշխարհում առաջին ստորերկրյա ալերգոլոգիական առողջարանը։ Այդ նպատակով օգտագործվեցին 211 մ. խորության վրա գտնվող 250 քմ ընդհանուր տարածությամբ երկու հին հորատանցք, որտեղ ստեղծված են բոլոր անհրաժեշտ պայմանները մարդկանց բուժման համար։*